ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1964 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ
ՏԱՐԻ

## Բովանդակություն

# Содержание






# ԸՆԴԴԵՄ ՊԱՌԱԿՏԻՉՆԵՐԻ, ՀԱՆՈՒՆ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ

Բոլոր դեպքերում և բոլոր երկրներում կոմունիզմը կոփվում և աճում է. նրա արմատներն այնքան խորն են, որ հալածանքները չեն թուլացնում, չեն ուժասպառում, այլ ուժեղացնում են նրան: Դեռևս 1920 թվականին այսպես բարձր էր գնահատում Վ. Ի. Լենինը համաշխարհային կոմունիզմի վիճակը: Նա ասում էր, թե հոյակապորեն աճող կոմունիզմին այժմ պակասում է միայն մի բան՝ կոմունիստները պետք է մինչև վերջ լրջմտորեն գիտակցեն, որ անհրաժեշտ է առավելագույն ճ կ ու ն ու թ յ ու ն ունենալ իրենց տակտիկայում:

Լենինյան այս ցուցումն իր կենսունակությունը պահպանում է նաև այսօր, երբ ամբողջ մարդկության ճակատագրի բախտորոշ գլխավոր գործոնը դարձել է համաշխարհային սոցիալիստական հզոր լագերը: Բայց Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները ժամանակակից արմատական հարցերում հանդես եկան ոչ միայն իրենց մտքի ու տակտիկայի անհելի քարացածությամբ, դոգմատիկականությամբ, աղանդավորականությամբ, այլև մարքսիզմ-լենինիզմի ոգու կատարյալ անիմացությամբ, ռևոլյուցիոն ֆրազների ժոնգլյորությամբ, համաշխարհային կոմունիստական շարժման բնագավառում իրենց վարած հակալենինյան, բացարձակ պառակտիչ գործունեությամբ:

Մեծ Լենինը Երկրորդ ինտերնացիոնալի պարագլուխների գաղափարական-քաղաքական սնանկացման հիմնական պատճառը համարում էր այն, որ նրանք անտեսեցին ժամանակի հարուցած հսկայական և սուր բեկումը, «...որն անխուսափելի դարձավ օբյեկտիվ պայմանների շնորհիվ, և շարունակեցին կրկնել այն հասարակ, սերտած, առաջին հայացքից անվիճելի ճշմարտությունները, թե երեքը մեծ է երկուսից: Բայց քաղաքականությունն ավելի նման է հանրահաշվին, քան թվաբանությանը և է՛լ ավելի բարձրագույն մաթեմատիկային, քան տարրականին: Իրականության մեջ սոցիալիստական շարժման բոլոր հին ձևերը լցվեցին նոր բովանդակությամբ, այդ պատճառով էլ թվանշանների առաջ երևան եկավ նոր նշան՝ «մինուս», իսկ մեր իմաստակները համառությամբ շարունակեցին (և շարունակում են) հավատացնել իրենց և ուրիշներին, թե «մինուս երեքը» մեծ է մինուս երկուսից»:

Միշտ էլ այսպես է պատահում հասարակական զարգացման սուր բեկումների պահերին այն գործիչների հետ, որոնք զուրկ են պատմության ըմբռնման գիտական բանալիից՝ մարքսիստական դիալեկտիկայից: Պատմությունը ճիշտ այդպիսի ողնաշարը ջարդող խաղ խաղաց նաև Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների հետ: Մարդիկ, որոնք տարիներով մարքսիստական դիալեկտիկան դիտում էին որպես իրենց դեպի սոփեստություն տանող մի կամուրջ, սկսեցին հետզհետե սուզվել «ձախ» դոկտրինյո-

րության, նեոտրոցկիզմի ճահիճը և անօրինակ անբարտավանությամբ ու մեծապետական շովինիզմի մոլուցքով լի, սկսեցին քամահրել ՍՍՌՄ պատմական վիթխարի դերը, մանրբուրժուական նեղոցով ցուցադրեցին համաշխարհային կոմունիստական շարժումը վարելու իրենց հավակնությունը:

Համառորեն անտեսելով Լենինի այն իմաստուն խորհուրդը, որ «...նոր բովանդակությունն իրեն ճանապարհ է հարթում բոլոր ու ամեն տեսակ ձևերի միջով, որ մեր, որպես կոմունիստների, պարտականությունն է՝ տիրապետել բոլոր ձևերին, սովորել առավելագույն արագությամբ մի ձևը լրացնել մյուսով, մեկը փոխարինել մյուսով, հարմարեցնել մեր տակտիկան ամեն մի այնպիսի փոփոխության, որն առաջանում է ո՛չ մեր դասակարգի կողմից կամ ոչ մեր ջանքերով», մեր օրերում, ՉԿՊ ղեկավարները, որոնց հանգիստ չէր տալիս ստեղծագործական մարքսիզմի մոնոպոլ տեսաբաններ դառնալու մարմաջը, գործնականում հակամարքսիստներ դուրս եկան՝ գլորվելով սոցիալիստական հզոր ընտանիքը քայքայողների խարխուլ դիրքերը:

Հետևողականորեն կատարելով իր ինտերնացիոնալիստական պարտքը, մեր պարտիան, ողջ աշխարհի ազատատենչ մարդկության ազատագրական ձգտումների թարգմանը լինելով, շարունակում է իր պատմական, անգնահատելի ու փառավոր գործունեությունը, հավատարիմ մնալով լենինյան այն մեծ ավանդին, թե համաշխարհային կոմունիզմի զարգացման թափն ու ծավալը ուղիղ համեմատական է ՍՍՌՄ տնտեսական բարգավաճմանը:

Հիրավի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու ամրապնդումը, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման խորացումն ու զարգացումը, ազգային-ազատագրական շարժումների աննախընթաց վերելքը և գաղութային սիստեմի փլուզումը՝ այս ամենը մարդկությունը պարտական է այն անջնջելի և անկասելի ներգործությանը, որ պատմության առաջընթացի բոլոր ոլորտների վրա ունենում է մեր մեծ հայրենիքի ծաղկումը:

Չինական ղեկավարները որդեգրելով համաշխարհային կոմունիստական շարժման պառակտիչ տակտիկան, կոմունիստական շարժման արմատական բոլոր հարցերում խորապես տարաձայնվեցին ՍՄԿՊ-ի ու եղբայրական մյուս պարտիաների հետ և, ի հակակշիռ համաշխարհային կոմունիստական շարժման լենինյան գծի, առաջ քաշեցին իրենց հատուկ կուրսը, որն իր էությամբ հակալենինյան է, հակասովետական: Չունկնդրելով պառակտիչ գործունեությունից հրաժարվելու վերաբերյալ ՍՄԿՊ-ի ու եղբայրական պարտիաների հորդորներին, նրանք նացիոնալիստական մեծամտությունից կուրացած, բռնեցին չին ժողովրդին ՍՍՌՄ-ի ժողովուրդների և ՍՄԿՊ-ի հետ թշնամացնելու նենգավոր ուղին: Այս ամենից հետո զարմանալի ոչինչ չկա, երբ այսօր չինական պրոպագանդան «գնալով ավելի է մոտենում ռեակցիոն իմպերիալիստական շրջանների հակասովետական, հակակոմունիստական օրգաններին»:

Ձգտելով ամեն կերպ հաստատուն պահել Չինաստանում ծաղկած Մաո Ցզե-դունի կատարյալ աստվածացումը, չին ղեկավարները մի քանի տարի է, ինչ առանձին մաղձոտությամբ և խոր դժկամությամբ բարբաջում են Ստալինի պաշտամունքի այն մերկացման մասին, որը կատարեց մեր պարտիայի XX համագումարը, հանձին Ն. Ս. Խրուշչովի: Ահա թե ինչու նրանք անզուսպ կրքով և ատելությամբ են լցված ՍՄԿՊ XX և XXII համագումարների, մեր պարտիայի նոր ծրագրի, ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր սկզբունքային հարցերի ու որոշումների դեմ: Վերջին տարիների իրենց բիրտ



նենգամտություններով, «չինականացված» սոցիալիզմի քարոզներով ու վարած ավանտյուրիստական կուրսով, չինական ղեկավարները փաստորեն կտրեցին իրենց կապերը բուն սոցիալիստական շարժման հետ: «Գնալով ավելի պարզ է դառնում, որ ուլտրառևոլյուցիոն ֆրազներով ու լոզունգներով քողարկվելով՝ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը այժմ կատաղի կերպով գրոհում է համաշխարհային սոցիալիզմի նվաճումների վրա, գլխավոր կրակը կենտրոնացնելով ո՛չ թե իմպերիալիստների, այլ գերազանցապես ՍՄԿՊ-ի դեմ, մարքս-լենինյան մյուս պարտիաների դեմ»:

Իհարկե, մեզ չի կարող զարմացնել չինական ղեկավարների այն մաները, երբ հերոսի պարեգոտը հագած, անվերջ աղմկում են միասնության, արդի ռևիզիոնիզմի դեմ պայքարելու և նոր հիմքերով շարժումն առաջ տանելու մասին: Այդ ուղին մեզ վաղուց ծանոթ է. մարքսիզմի ձևավորման արշալույսից մինչև լենինիզմի համաշխարհային հաղթանակների մեր էպոխան, հետևողական-սոցիալիստական ընթացքին ներհակ բոլոր հոսանքների ներկայացուցիչները միշտ էլ զարդարվել են մարքսիզմի փետուրներով, շաղակրատել ռևոլյուցիայի ու սոցիալիզմի անունից, բայց կյանքում թաղել են այդ ամենը:

Քանի՜, քանի անգամ Լենինը զգուշացնում էր ռևոլյուցիոներներին, մանավանդ նրանց պարագլուխներին, որ հարկավոր է շրջահայաց լինել մեծ խոսքերի նկատմամբ, որովհետև դրանք մեծ գործերի վերածելը ահագին դժվար է: Բայց այդ մասին չին ֆրազամոլները լսել անգամ չեն ուզում: Դրա համար էլ բացահայտորեն անտեսելով սոցիալիստական սիստեմի վճռական ազդեցությունը համաշխարհային զարգացման ընթացքի վրա, ռևիզիայի ենթարկելով պրոլետարիատի պատմական դերի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, չին ղեկավարները պնդում են, թե «... արդի աշխարհի հակասությունների կենտրոնը «համաշխարհային ռևոլյուցիայի մրրիկների գլխավոր գոտին է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ընդարձակ շրջանները»»:

Որ ազգային-ազատագրական շարժումները հսկայական դեր են խաղում ժամանակակից հասարակական կյանքում, դա ամենից լավ հիմնավորել են մարքսիստ-լենինյանները և այդ թեզն իր սպառիչ լուսաբանությունն է գտել ՍՄԿՊ-ի XX և XXII համագումարների որոշումներում, մեր պարտիայի ծրագրում: Մարդկության ներկա զարգացման առաջատար զսպանակը սոցիալիստական սիստեմն է: Քաղաքականապես կույրերը չեն տեսնում, և դոգմատիզմի տիղմում մխրճվածները չեն հասկանում, որ «... հասարակական զարգացման կիզակետն այն պայքարն է, որը համաշխարհային սոցիալիստական սիստեմը մղում է իմպերիալիզմի դեմ»: Ճգնելով հերքել լենինյան այս ըմբռնումը, չին ղեկավարները իրականում հանդես են գալիս համաշխարհային ռևոլյուցիոն շարժման դասալիքների դերում, որոնց կարծեք թե ուղղելով իր կշտամբանքը, Լենինը գրել է. «Այո՛, իրական զարգացման պրոցեսը մ ի շ տ խճճված է ընթանում, վերջաբանի կոռներն իսկական նախաբանից առաջ դուրս ցցելով: Բայց արդյոք այդ նշանակո՞ւմ է, թե գիտակից պարտիայի առաջնորդին թույլատրելի է խ ճ ճ ե լ պայքարի խնդիրները, թույլատրելի՞ է նախաբանը շփոթել վերջաբանի հետ: Կարո՞ղ է արդյոք խճճված տարերային պրոցեսի դիալեկտիկան արդարացնել շփոթությունը գիտակից սոցիալ-դեմոկրատների տրամաբանության մեջ»:

Որքան մեծ է մտքի ու լոզունգների շփոթը չին ղեկավարների մոտ, այնքան վտանգավոր և փուչ են նրանց մտավոր մարզանքները: Ո՞վ չի հասկա-

նում, որ Պեկինից տարածվող ստահոդ պրոպագանդան ամբողջովին աղճատում է մեր պարտիայի կողմից տարվող խաղաղ տնտեսական մրցության ռեալ քաղաքականությունը, մի աղճատում, որն արվում է բացահայտ դեմագոգիական նկատառումներով: Այս ամենի հետևանքն այն եղավ, որ չին ղեկավարները այժմ ոչ միայն չեն համագործակցում սոցիալիստական երկրների հետ, այլև բացարձակ պայքար են մղում նրանց դեմ:

Չին ղեկավարների մտքի խեղճությունը, նրանց տակտիկայի ավնեւ ավանտյուրիստական բնույթն առավել ցայտունությամբ դրսևորվում է պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի կենսական հարցերն արծարծելիս: Բոլորովին գլուխ չհանելով արդի միջազգային բարդ իրադրությունից, նրանք իրենց հատուկ աղմկարարությամբ սկսեցին գրոհել ՍՄԿՊ XX համագումարի ու եղբայրական մյուս պարտիաների Մոսկվայի խորհրդակցությունների սկզբունքային հետևությունների վրա, լկտիորեն աշխարհի առաջավոր կոմունիստներին մեղադրելով իմպերիալիզմին կապիտուլյացվելու մեջ: Խաղաղության համար մղվող պայքարը արհեստականորեն հակադրելով միջազգային ռևոլյուցիոն շարժմանը, չին պարագլուխները որպես տիպիկ մետաֆիզիկներ, իրականում ծավալում պայքար են մղում խաղաղ գոյակցության լենինյան կուրսի դեմ և նրան հակադրում պատերազմի օգնությամբ ռևոլյուցիան «առաջ բոթելու» տակտիկան: Ցավալի ու հատկանշական է, որ չինական կոմունիստական պարտիայի ղեկավարները համառորեն պնդում են այն արտառոց և վնասակար թեզը, թե սոցիալիզմի ու կապիտալիզմի հակասությունները մեր օրերում կարող են լուծվել միայն պատերազմի ճանապարհով: Եվ այս տատմոլությունը հիմնավորում են Մաո-Ցզե-դունի այն դրույթով, թե աշխարհը կարելի է վերակառուցել միայն հրացանի օգնությամբ, և նոր պատերազմը կարելի է ոչնչացնել միայն պատերազմի միջոցով:

Ահա թե գաղափարական ինչ ակունքից են ջուր խմում հոխորտացող չին տեսաբանները, երբ միջուկային ռումբը հորջորջում են «թղթե վագր», որն իբր թե պատերազմի և խաղաղության հարցադրման մեջ ոչինչ չի փոխել: Ուստի և պատահական չէ, երբ Մաո-Ցզե-դունը դեմ չէ մատի մի շարժումով նոր պատերազմի երախը գցել մարդկության մեկ երրորդին:

Որպիսի՜ կարճամտություն, հասարակական միանգամայն նոր իրադրության և ուժերի նոր փոխհարաբերությունների ինչպիսի՜ քամահրում, որպիսի՜ անպատասխանատվություն ամբողջ մարդկության ճակատագրի հանդեպ: Բավական է միայն վերցնել այս հարցը, որպեսզի մենք հիմք ունենանք ասելու, թե չին ղեկավարները լիովին խզել են կապերը մարքսիզմի հետ և իրենց ավանտյուրիզմով խաղում են մարդկության բախտի հետ:

Մարքսիստ-լենինյանները աշխարհի բոլոր մասերում էլ այն խոր համոզմանն են, որ պատերազմը չի կարող ծառայել սոցիալիզմի հաղթանակին, այն մեծ ողբերգություն կլինի մարդկության համար:

Հետևողականորեն մեկդի վանելով չին արկածախնդիրների ստոր զրպարտանքները, ՍՄԿՊ-ն շարունակում է խաղաղ գոյակցության իր կուրսը խարսխել լենինյան այն սկզբունքին, որ թեև իմպերիալիզմի գիշատիչ էությունը չի փոխվել այժմ, բայց մեծապես փոխվել է հասարակական հակամարտ ուժերի փոխհարաբերությունը հօգուտ սոցիալիզմի և միջազգային խաղաղասեր ուժերի, որով և հնարավորություն է ստեղծվել կանխելու պատերազմը:

Հիմնավորապես մերկացնելով չին ղեկավարների հակալենինյան էությու-



նը և ավանտյուրիստական գործելակերպը, ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումում տված իր երևելի զեկուցման մեջ, Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը ընդգծեց. «Մենք համոզված ենք, որ աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը, ընդհանուր դեմոկրատական վերելքը, սոցիալիզմի աճող հզորությունը, բոլոր խաղաղասեր ուժերի վճռական գործողությունները կարող են և պետք է հարկադրեն, որ իմպերիալիստները, հակառակ իրենց ցանկությունների, հաշվի նստեն զինաթափման գործում ժողովուրդների պահանջների հետ: Մենք ֆատալիստներ չենք, մենք հավատում ենք ժողովրդական մասսաների հսկայական հնարավորություններին»: Ոչ միայն ՍՍՌՄ-ի և սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդները, այլև ամբողջ առաջադեմ մարդկությունը այսօր խոր հավատով դավանում է լենինյան այս սկզբունքը ի հեճուկս չին ավանտյուրիստների, որոնք տրոցկիզմի արսենալից փոխառած մեթոդներով հակադրվում են ՍՍՌՄ-ի խաղաղասիրական գործողություններին:

Մարքսիստ-լենինյանների համար գոյություն չունի և չի կարող լինել՝ կամ պայքար խաղաղության համար, կամ ռևոլյուցիոն պայքար: Դրանք միահյուսված են և վերջին հաշվով ուղղված՝ իմպերիալիզմի դեմ: «Խաղաղությունը՝ սոցիալիզմի հավատարիմ դաշնակիցն է»: Դիմադրելով լենինյան այս դրույթին, չին ղեկավարները իրականում նպաստում են իմպերիալիզմի ռազմամոլ հրձիգներին և այդպիսով իրենց դնում հակասոցիալիստական լագերում:

Չին ղեկավարները ոչ միայն չեն հավատում ժողովրդական մասսաների վճռական ուժին, այլև հերքելով խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարների օրգանական միասնությունը, փաստորեն հրաժարվում են սոցիալիստական ռևոլյուցիայի մասին լենինյան ուսմունքից, անտեսելով այդ ռևոլյուցիայի առաջացման և նրա հաղթանակի ներքին ու արտաքին կոնկրետ պայմանները: Այստեղից մինչև մարքսիզմ-լենինիզմի կողմից վաղուց դատապարտված բլանկիզմի ու տրոցկիզմի գաղափարական ջոկատը՝ մի քայլ է:

Միանգամայն ճիշտ է ընդգծում ընկ. Սուսլովը, որ վեճն այն մասին չէ, թե «ռևոլյուցիա անել կամ չանել», այլ այն, թե «որպիսի՞ ուղիներով վարել այդ ռևոլյուցիան»: «Երբ կոմունիստական պարտիաները բոլոր հույսերը դնեն միայն և բացառապես զինված պայքարի վրա, հաշվի չառնելով, թե արդյոք ժողովրդական զանգվածները միշտ են պատրաստ պաշտպանելու այդ պայքարը, ապա դա անխուսափելիորեն կհանգեցնի լոկ դառն պարտությունների»:

Լենինը խելացնոր կամ պրովոկատոր էր համարում նրանց, ովքեր կարծում էին, թե օտար երկրներում պատվերով կարելի է ռևոլյուցիա հարուցել: Ռևոլյուցիան կարող է ծագել միայն ռևոլյուցիոն սիտուացիայի դեպքում, երբ «վերին» խավերն այլևս չեն կարողանում կառավարել, իսկ «ստորին» խավերը այլևս չեն կամենում հին ձևով ապրել: Մարքսիստ-լենինյանները գտնում են, որ այժմ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը հնարավոր է և՛ խաղաղ, և՛ ոչ խաղաղ ճանապարհով, նայած սոցիալ-քաղաքական ուժերի փոխհարաբերությանը. բայց դա կլինի միայն երկու դեպքում էլ սոցիալիստական ռևոլյուցիա, պրոլետարիատի դիկտատուրա՝ իր տարբեր ձևերով:

Ազգային-ազատագրական շարժման հարցերում չին արկածախնդիրները հանդես են գալիս ոչ միայն իրենց «ուրույն» ըմբռնումով, այլև պրակտիկ հաշվենկատությամբ: Այս դեպքում ևս անտեսելով Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի տարբեր երկրների զարգացման յուրահատկություն-

ները, նրանք փորձում են կոմունիստական պարտիաներին ու պրոգրեսիվ ուժերին պարտադրել իրենց շաբլոն սխեմաները և պայքարի քարացած ձևերը: Նրանց համար բոլորովին գոյություն չունի Լենինի այն զգուշացումը, թե մեր պայքարում չի կարելի ոչինչ հասկանալ, եթե չուսումնասիրվի յուրաքանչյուր մարտի կոնկրետ վիճակը:

Այստեղ ուշագրավն այն է, որ չին ղեկավարները փորձում են իրենց չփոքր և հակալենինյան դրույթներով կոմունիստական և դեմոկրատական ուժերին նետել ավանտյուրաների գիրկը: Բայց դա նրանց չի հաջողվի: ՍՄԿՊ-ն, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները գտնում են, որ իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումն ու ազատագրված երկրների զարգացման հեռանկարները մարդկության առաջընթացի արմատական պրոբլեմներից մեկն են հանդիսանում: Ամեն կերպ պայքարելով նեոգաղութարարության դեմ, մարքսիստ-լենինյանները շարունակում են աջակցել բոլոր ազգերի ազատագրմանը, ձեռք մեկնելով ոչ կապիտալիստական ուղիով ընթացող ժողովուրդներին:

Մինչդեռ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները դիմադրելով կոմունիստական մյուս պարտիաների պայքարին, որն ուղղված է ժողովուրդների ազգային ու սոցիալական վերջնական ազատագրման նպատակին, ամեն կերպ ձգտում են իրենց հսկողության տակ առնել ազատության ձգտող երկրներին, որպես իրենց հեգեմոնիստական պլանների իրականացման գործիք: Ազգային-ազատագրական պայքարի հարցերում չին ղեկավարներն անլուր զրպարտանքներով հարձակվելով ՍՄԿՊ-ի վարած ինտերնացիոնալիստական քաղաքականության վրա, դեմագոգիայով հրապուրված, պնդում են, թե սպիտակամորթներին վստահել չի կարելի, որ իբր թե Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների շահերը չեն համընկնում ուրիշ ժողովուրդների շահերին և որպես այդ ամենի պսակը, նրանք եզրակացնում են՝ «Արևելքից փչող քամին կհաղթահարի արևմտյան քամուն»:

Այսպիսով, խաղալով ճնշված ժողովուրդների ազգայնական զգացմունքների հետ, չին ղեկավարները մեծ ինքնագոհությամբ, սակայն նենգ միտումներով, ռասսայական ռեակցիոն հայացքներ են փայփայում:

Ճնշված և հետամնաց ժողովուրդներին համաշխարհային սոցիալիստական սիստեմի վիրխարի աջակցությունը ի չիք է դարձնում չին ղեկավարների ջանքերը՝ սոցիալիզմից անջատելու ազգային-ազատագրական պայքարը: Դաշնակցելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետ, իմպերիալիզմի դեմ մաքառող ժողովուրդները լիակատար հնարավորություններ կնվաճեն ազգային ու սոցիալական վերջնական ազատագրման համար: ՍՍՌՄ-ը հոյակապ օրինակներ է տվել ճնշված ժողովուրդներին օգնելու ասպարեզում, մի օգնություն, որն անվերջ խափանում է չին արկածախնդիրների հեգեմոնիստական ցնորամիտ պլանները: Հետայսու ևս ՍՄԿՊ-ն ամեն կերպ կօգնի այն ժողովուրդներին, որոնք բռնել են ազգային-ազատագրական անկախության ուղին:

Սակայն սրանով չի սպառվում հարցը:

Չին ղեկավարները մի քանի տարի է, ինչ հարձակումներ են գործում ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ներքին կյանքի ամենաէական նվաճումների վրա: Այս դեպքում էլ նրանց հրաձգության թիրախն է հանդիսանում ՍՄԿՊ-ի ծրագիրը: Իհարկե, դա պատահական չէ, որովհետև համաշխարհային պատմության այդ հոյակապ փաստաթուղթը անօրինակ խորությամբ և անկապտելի փաստերով հաստատում է կոմունիստական շինարարության համաշխարհային նվաճումների օրինաչափությունն ու վեհությունը և այդպիսով իսկ հիմնական գծերով նշում ամբողջ մարդկության զալիք երթուղին դեպի կոմունիզմ:

Մեր պարտիայի ծրագրի քննադատությամբ չին ղեկավարները տքնում են մանրբուրժուական սոցիալիզմի դիրքերից ոմբակոծելու պրոլետարական սոցիալիզմի պրակտիկան ու թեորիան, որն իր էությամբ ինտերնացիոնալիստական է և ամբողջովին ուղղված է թաքուն ու հայտնի շովինիստների ռասսայական զառանցանքների, հեգեմոնիստական շոշափուկների դեմ: Ուստի և հասկանալի է, երբ նրանք զրպարտանքի սյուներին հենված գոչում են, թե իբր մեր պարտիայի ծրագիրը «ուղղված է այն ժողովուրդների ռևոլյուցիայի դեմ, որոնք դեռևս գտնվում են իմպերիալիզմի ու կապիտալիզմի տիրապետության ներքո», որպես թե այն «ուղղված է արդեն սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդների կողմից ռևոլյուցիան մինչև վերջ հասցնելու դեմ»:

Նման աղաղակող հերյուրանքներ տարածող չինական մամուլը հակված է ոչ ավել, ոչ պակաս, ՍՄԿՊ-ին մեղադրելու կապիտալիզմի վերականգնման մեջ: Եվ ինչ եք կարծում, ի՞նչ հիման վրա: Թեկուզ այն բանի պատճառով, որ պարտիայի ծրագրում կարմիր թելով անցնում է ժողովրդի բարեկեցության բարձրացման ձգտումը և հաստատակամությունը: Չին խելապատակների կարծիքով, անձնական շահագրգռության սկզբունքի կիրառումով, ՍՄԿՊ-ն մարդկանց մղում է անձնական շահի, ընչաքաղցության, բուրժուական անհատապաշտության և նույնիսկ այլասերման ճահիճը: Ահա ձեզ «չինական սոցիալիզմի» որքան շինծու, նույնքան և ողորմելի բովանդակությունը, որը սովետական քաղաքացիների թե՛ ծիծաղը և թե զայրույթը կարող է շարժել:

Իսկ քանի՞ գրոշ արժե չին ղեկավարների տեսական այն չփոքը, թե ՍՄԿՊ ծրագրի՝ համաժողովրդական պետության և ամբողջ ժողովրդի պարտիայի վերաբերյալ թեզերը «հանդիսանում են պետության մասին մարքսիստական-լենինյան ուսմունքի համարյա թե բուրժուական տեսություններով փոխարինումը, բանվոր դասակարգի զինաթափումը»: Աչք փակելով այն արմատական փոփոխությունների վրա, որոնք առաջացել են մեր երկրում սոցիալիզմի վերջնական կառուցմամբ, չին տեսաբանները ցիտատաշորթումներով ճգնում են ապացուցել, թե իբր, ըստ Մարքսի, կոմունիզմի բարձրագույն փուլում պետք է գոյություն ունենա պրոլետարիատի դիկտատուրան: Սակայն ով ծանոթ է մարքսիզմին, չի կասկածում, որ պրոլետարիատի դիկտատուրան մնում է այնքան, որքան դեռ մնում են շահագործող դասակարգերը: Դրանց վերացումով դիկտատուրան դադարում է բռնության ուժ լինելուց, վերածվելով կազմակերպական, դաստիարակչական ուժի: Հետևաբար, պրոլետարիատի դիկտատուրայի վերածումը համաժողովրդական պետության և պրոլետարական պարտիայի վերածումը ամբողջ ժողովրդի պարտիայի, բնապատմական անխուսափելի զարգացման օբյեկտիվ արգասիքն է: Առհասարակ Լենինը պրոլետարական դիկտատուրայի բնորոշ կողմը ամենևին էլ բռնությունը չէր համարում:

Չինական տեսաբանները չեն խորշում ոչ միայն կեղծարարությունից, այլև նողկալի ստից: Այլ կերպ նրանք չէին գրի, թե իբր ՍՄԿՊ ծրագրից դուրս է նետված մարքսիզմ-լենինիզմի ողն ու ծուծը՝ պրոլետարիատի դիկտատուրայի մասին ուսմունքը: Մինչդեռ այնտեղ սևով գրված է սպիտակի վրա. «ՍՍՌՄ-ի

փորձը ցույց տվեց, որ ժողովուրդները կարող են հասնել սոցիալիզմին մի-
այն սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի
դիկտատուրայի իրագործմամբ»: Պակաս ճմապատվաստ վայ-
րախոսություն չէ չին թեորետիկների այն գոհարը, թե իբր հռչակելով ՍՄԿՊ-ն
ամբողջ ժողովրդի պարտիան, ծրագիրը կազմակերպորեն և բարոյապես զի-
նաթափում է պրոլետարիատին և նույնիսկ նպաստում կապիտալիզմի վերա-
կանգնմանը: Այստեղ է ասված, ստիր, բայց չափն իմացիր: Դժբախտաբար
չին ղեկավարները վաղուց են կորցրել չափի զգացումը և իրենց գործունեու-
թյան մեջ աչքի են զարնում նաև անպատկառությամբ: պլենումի
Այժմ, երբ հրապարակված են ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի
նյութերը, մարդկությանն ակներև է դառնում, թե որպիսի վտանգավոր ուղի-
ներով են ընթանում չին ղեկավարները և ինչ նպատակներով են ճայճայում
սովետա-չինական բարեկամությունը: Պլենումին տրված ընկ. Սուսլովի բո-
վանդակալի զեկուցումը հագեցված է բազմաթիվ անժխտելի փաստերով, որոնք
մերկացնում են չին պառակտիչների այն դատապարտելի գործունեությունը,
որով նրանք փորձում են խափանել մեր և չին ժողովրդի բարեկամությունը:
Երախտամոռին հատուկ գոռոզամտությամբ վերաբերվելով սովետական
կառավարության և ՍՄԿՊ-ի երկարամյա բարեկամական խոշոր ձեռնարկում-
ներին, ոտնահարելով մեր ժողովրդի անշահախնդիր նյութական, բարոյական,
ճաղաճական անգնահատելի օգնությունը Չինաստանին, այժմ չին պրոպա-
գանդիստները ճափ ճռահճ կտրած ճառոզում են ժողովրդին, թե ոչ մի օգ-
նություն չի եղել: Դեռ ավելին, տարիներ շարունակ հրահրելով սահմանային
ընդհարումներ, չին ղեկավարները երկրի ներսում և դրսում կազմակերպում
են սանձարձակ հակասովետական պրոպագանդա և հանդգնում լեզու թրջել
այն մասին, որ իբր թե «ՍՍՌՄ-ն իմպերիալիստների հետ միացյալ պայքար
է մղում խաղաղության ու սոցիալիզմի դեմ»:
«Մեծ ցատկումներից» գլխակորույս, ՉԿՊ-ի ղեկավարները տարիներով
սովետական մասնագետներին դրին այնպիսի ծանր պայմաններում, որ նրանց
Չինաստանում մնալը դարձավ անհնարին: Ահա թե ինչու սովետա-չինական
հարաբերությունների վատթարացման ամբողջ պատասխանատվությունն ընկ-
նում է ՉԿՊ-ի ազգայնական հովերով տոգորված ղեկավարների վրա:
Այս առնչությամբ Լենինը ճանիցս ընդգծել է. «... բոլշևիզմն աճել, կազ-
մավորվել ու կոփվել է երկարամյա պայքար մղելով մանրբուրժուա-
կան ռևոլյուցիոնության դեմ, որը նմանվում է անարխիզմին, կամ
որոշ բան նրանից փոխ է առնում, որն ամեն մի էական բանում նահանջում է
տոկուն պրոլետարական դասակարգային պայքարի պայմաններից ու պահանջ-
ներից»:
Այո՛, ՍՄԿՊ-ի պայքարի փորձը խոսում է այն մասին, որ չին ղեկավար-
ները ըստ էության մանրբուրժուական գաղափարախոսներ են և իրենց գոր-
ծելակերպով՝ նեոտրոցկիստներ. մանրբուրժուական թեճում, ուլտրա ռևոլյու-
ցիոն ճրազաբանություն, խոսճով համաշխարհային ռևոլյուցիայի ջատագով-
ներ, իսկ իրականում լենինիզմի հակառակորդ, պրակտիկայում ճրակցիոներ-
ներ, պարտիայի դեմ պայ-
քարելիս ամեն տեսակի ճաղաճական թափթփուկներ օգտագործող: Ահա թե
կոմունիստական շարժման միասնության հակառակորդ, պարտիայի դեմ պայ-
որոնք են չինական ղեկավարների վարճագծի ամենաբնորոշ կողմերը: Պա-
տերազմի և խաղաղության, ռևոլյուցիայի ու տնտեսական մրցության, խաղաղ



գոյակցության և իշխանության նվաճման, ինչպես նաև բազմաթիվ այլ ար-
մատական հարցերում ՉԿՊ-ի ներկա ղեկավարները հանդես են գալիս տրոց-
կիզմի կրկներգով: Չինակերպ սոցիալիզմը, որն այնպես խնամճով սնուցում
են չին թեորետիկները, ըստ էության, մանրբուրժուական ջերմոցում սածիլված
նեոտրոցկիզմի շիվերն են: Ահա թե ինչու չին ղեկավարները արժանացել են
տրոցկիստական ինտերնացիոնալի աջակցությանը: Այժմ արդեն նրանց չի
հաջողվի թաքցնել այդ ճշմարտությունը:
Իրողությունն այն է, որ ՉԿՊ-ի ղեկավարներին պակասում է լենինյան
կոփվածքը, մանրբուրժուական տարերքին դիմագրավելու ուժը, պրոլետարա-
կան սոցիալիզմը մանրբուրժուական սոցիալիզմի օվկիանոսում չխեղդելու
կարողությունը: Դրա հետևանքով էլ նրանց ներքին և արտաքին ճաղաճակա-
նությունն ամբողջովին տոգորված է մանրբուրժուական գաղափարախոսու-
թյամբ, ազգայնական մեծապետական նկրտումներով, որոնք ուժգին դրսե-
վորվում են արտաքին ճաղաճականության մեջ: Դնալով նացիոնալիզմը դառ-
նում է չինական ղեկավարների գործելակերպի առանցքը: Նրանց մի շարք
ճայլերը վկայում են այն մասին, որ «ձախ» ճրազները խեղդվում են միանգա-
մայն աջ բնույթի ճայլերի դոփյունի տակ: Մաո-Ցզե-դունի կուլտը, որը
վաղուց տարածված է Չինաստանում, բառիս բուն իմաստով, մեծապես խան-
գարում է մարդկանց ըմբռնելու արդի իրադարձությունները: Այստեղ է, որ
Չինաստանի կոմպարտիան պետք է հանդես բերեր, իրոք, «մեծ ցատկում»:
Չինական ղեկավարները խտրություն չդնելով պայքարի մեթոդների մեջ,
վտանգավոր փորձ են անում ճրակցիոն գործունեությամբ ճայճայելու համաշ-
խարհային կոմունիստական շարժումը: Ապարդյուն ջանքեր: Նրանք ամենուր
եղբայրական կոմպարտիաների կողմից արժանանում են հակահարվածի:
Արտահայտելով բոլոր մարքսիստ-լենինյանների համոզումը, ընկ. Սուս-
լովն իրավացիորեն ընդգծում է, որ ոչ ոքի և երբեք չի հաջողվի ջլատել Սո-
վետական Միության և Չինաստանի մեծ ժողովուրդների բարեկամության հիմ-
քերը, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության ներկա դիրքերը չեն
արտացոլում չին ժողովրդի իսկական ազգային շահերը:
Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի վերջին պլենումը՝ ռեսպուբ-
լիկայի ակտիվի մասնակցությամբ, ինչպես և ճաղաճային ու շրջանային կո-
միտեների՝ ակտիվի մասնակցությամբ կայացած պլենումները, մեր բոլոր
պարտիական կազմակերպությունները միահամուռ հավանություն տվին
ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշմանը և դատապարտելով ՉԿՊ-ի
ղեկավարների հակալենինյան վարճագիծը, պատրաստակամություն հայտնե-
ցին նոր թափով առաջ մղելու կոմունիզմի կառուցումը, այդպիսով իսկ զորա-
վիգ լինելու միջազգային կոմունիստական շարժման լիակատար միասնությանը:

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

# ՀԱՎԱՏԱՐԻՄ ԼԵՆԻՆՅԱՆԸ

1964 թվականի ապրիլի 17-ին լրանում է Սովետական Միության կոմունիստական պարտիայի, սովետական պետության և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ, Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ, ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ՆԻԿԻՏԱ ՍԵՐԳԵԵՎԻՉ ԽՐՈՒՇՉՈՎԻ ծննդյան 70-ամյակը:

Ընկեր Խրուշչովի կյանքն ու գործունեությունը բանվոր դասակարգի գործին, կոմունիզմի գործին անձնվեր ծառայության հոյակապ օրինակ է:

Հանքագործ բանվորի կավակ, հովիվ, ապա Դոնբասի հանքագործ բանվոր, կարմիր բանակային, քաղաքացիական կռիվների ակտիվ մասնակից, այնուհետև Արդյունաբերական ակադեմիայի ուսանող, պարտիայի Մոսկվայի մի շարք շրջկոմների քարտուղար, Մոսկվայի քաղաքային և մարզային կոմիտեների քարտուղար, Ուկրաինայի կոմունիստական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՄԿՊ Կենտկոմի և Մոսկվայի մարզային կոմիտեի քարտուղար, ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ. հասարակ բանվորից մինչև սովետական հզոր պետության ղեկավարի, սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարից մինչև ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղարի բարձր պոստերը, շարքային կարմիր բանակայինից մինչև սովետական բանակի գեներալի աստիճանը — ահա կյանքի այն փառապանծ ուղին, որ անցել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը:

Սպիտակգվարդիականների և օտարերկրյա ինտերվենտների դեմ պատերազմի դաժան տարիներին, 1918 թվականին, մտնելով կոմունիստական պարտիայի շարքերը, Ն. Ս. Խրուշչովն արդեն մոտ կես դար է, ինչ իր բոլոր ուժերն ու եռանդը նվիրել է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման վեհ գործին:

Մեծ են Ն. Ս. Խրուշչովի ծառայությունները կոմունիստական պարտիայի, սովետական պետության ու ժողովրդի, միջազգային պրոլետարիատի և ամբողջ առաջադեմ մարդկության հանդեպ: Բարձր գնահատելով այդ ծառայությունները, սովետական կառավարությունը նրան պարգևատրել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի, Սուվորովի, Կուտուզովի, Հայրենական պատերազմի շքանշաններով ու մի շարք մեդալներով: Ն. Ս. Խրուշչովը սոցիալիստական աշխատանքի եռակի հերոս է, «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» լենինյան միջազգային մրցանակի լաուրեատ:

Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի տարիներին Ն. Ս.





Խրուշչովը գտնվում էր գործող բանակում: 1941—1945 թվականներին որպես Կիևի ռազմական հատուկ օկրուգի, Հարավ-արևելյան, Ստալինգրադյան, Հարավային և Առաջին ուկրաինական ռազմաճակատների ռազմական խորհուրդների անդամ, նա խոշոր դեր է խաղացել գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական բանակի հաղթանակի գործում: Նրա ակտիվ մասնակցությամբ իրագործվեցին Ստալինգրադի հերոսական պաշտպանությունը, Ստալինգրադի, Կուրսկի տակ և այլ ռազմաճակատներում գերմանաֆաշիստական զորքերի ջախջախումը:

Հայրենական մեծ պատերազմից հետո ընկեր Ն. Ս. Խրուշչովն իր ամբողջ եռանդը, կարողությունները, մեծ կենսափորձը ներդրեց տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման կարևոր գործում: 1949—1953 թվականներին Ն. Ս. Խրուշչովը նորից գլխավորում է Մոսկվայի մարզային պարտիական կազմակերպությունը, միաժամանակ աշխատելով որպես պարտիայի Կենտրոնական կոմիտեի քարտուղար: 1952 թվականին, պարտիայի XIX համագումարից հետո Կենտկոմի պլենումն ընկեր Ն. Ս. Խրուշչովին ընտրեց Կենտկոմի նախագահության կազմում և Կենտկոմի քարտուղար, թողնելով նրան միաժամանակ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղարի պոստում:

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումը նպատակահարմար գտավ հիմնել Կենտկոմի առաջին քարտուղարի պոստ և այդ պոստում ընտրեց պարտիայի ու սովետական ժողովրդի կողմից ճանաչված ու սիրված գործիչ, հավատարիմ լենինյան Ն. Ս. Խրուշչովին:

Սովետական Միության կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի նախագահությունն ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ անցած տասը տարում մշակեցին ու լայն ճակատով իրականացրին սոցիալ-տնտեսական այնպիսի միջոցառումներ, որոնք սովետական ժողովրդի և ամբողջ մարդկության ճակատագրի համար պատմական նշանակություն ունեցան:

Քաղաքական ու գործնական մեծ նշանակություն ունեցավ Ստալինի անձի պաշտամունքի բացահայտումը և նրա վնասակար հետևանքների հաղթահարումը, որը պարտիան անօրինակ խիզախությամբ իրագործեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի նախաձեռնությամբ: Մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ անհատի պաշտամունքի դատապարտումը, պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնումն ու հետագա զարգացումը լայն ասպարեզ բացին պարտիայի ու ժողովրդի ստեղծագործական ուժերի զարգացման համար, նպաստեցին մասսաների հետ պարտիայի կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը, նրա մարտունակության բարձրացմանը: Վերակառուցվեց պարտիական, պետական ու հասարակական կազմակերպությունների աշխատանքը նոր ժամանակաշրջանի պահանջներին համապատասխան: Ավելի բարձրացավ կոմունիստական պարտիայի ղեկավար դերը երկրի տնտեսական ու քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում:

Ժողովրդական տնտեսության, հատկապես գյուղատնտեսության հետագա զարգացման բնագավառում շրջադարձային կետ հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումը, որը լսեց և քննարկեց Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը գյուղատնտեսության վիճակի և նրա հետագա վերելքի խնդիրների մասին: Այդ պատմական պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը լենինյան ուղղամտությամբ բացահայտեց գյուղատնտեսության ղեկավարման ասպա-

րեպում գոյություն ունեցող խոշոր սխալներն ու թերությունները, առաջադրեց մոտակա տարիներում գյուղատնտեսության արտադրանքի շեշտակի վերելքի լայն ծրագիր: Որպես այդ ծրագրի կենսագործման կարևոր պայման Ն. Ս. Խրուշչովը. Կենտկոմի պլենումը վճռականորեն ընդգծեցին բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդման, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարությունը փորձված կազմակերպիչներով ուժեղացման, գյուղատնտեսության արտադրության աճի նկատմամբ գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման լենինյան ցուցումների անշեղ իրագործման անհրաժեշտությունը:

Կոմունիստական շինարարության և համաշխարհային ռևոլյուցիոն շարժման արդի ժամանակաշրջանի խնդիրներին համապատասխան մարքսիստական-լենինյան տեսության ստեղծագործական կարգացման փայլուն օրինակ տվեց պարտիայի XX համագումարը:

ՍՄԿՊ Կենտկոմի գործունեության մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, համագումարի որոշումներում առաջ քաշված դրույթները, տեսական հետևությունները նոր էտապ նշանավորեցին ՍՄԿՊ-ի գործունեության մեջ, միջազգային կոմունիստական շարժման բոլոր ոլորտներում, հարստացրին մարքսիզմ-լենինիզմի գանձարանը:

ՍՄԿՊ XX համագումարի լենինյան գծին միահամուռ հավանություն տվին ամբողջ պարտիան, սովետական ողջ ժողովուրդը, բոլոր եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները:

Ելնելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներից, աշխատավորների կենսական շահերին համապատասխան, պարտիան երկրի տնտեսական, քաղաքական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում շարունակեց իրականացնել խոշոր վերափոխություններ, որոնք օժանդակեցին սովետական հասարակական և պետական կարգի ավելի ամրապնդմանը, Ստալինի անձի պաշտամունքի վնասակար հետևանքների իսպառ վերացմանը, սովետական դեմոկրատիայի զարգացմանը, արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի հուժկու վերելքին, աշխատավորների բարեկեցության բարձրացման գործին:

ՍՄԿՊ XX համագումարի որոշումները բարերար ազդեցություն ունեցան նաև եղբայրական կոմպարտիաների և սոցիալիստական համաշխարհային սիստեմի հետագա զարգացման վրա՝ լենինյան տրադիցիաների ոգով:

ՍՄԿՊ XX համագումարից հետո մեր երկրի ձեռք բերված համաշխարհային պատմական հաղթանակների մեջ, հաղթանակներ, որոնք հանգեցրին դեպի կոմունիզմ ընթացող սովետական հասարակության զարգացմանը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրացմանը և միջազգային բանվորական ու ազգային-ազատագրական շարժումների նոր, աննախընթաց վերելքին, անգնահատելի դեր է պատկանում Ն. Ս. Խրուշչովին:

Որպես ստեղծագործական մարքսիզմի ականավոր ներկայացուցիչ, Ն. Ս. Խրուշչովը կարողանում է հիանալի կերպով կիրառել տեսական ու պրակտիկ գործունեության օրգանական միասնության մասին լենինյան սկզբունքը: Նրան խորթ են շաբլոնը, քարացածությունն ու կոնսերվատիզմը: Նա ուշի-ուշով հետևում է կյանքի զարկերակին, ուսումնասիրում պարտիայի ու մասսաների կոլեկտիվ փորձը, այն բոլոր պրոցեսները, որոնք տեղի են ունենում էկոնոմիկայում ու հասարակական կյանքում և դրանց հիման վրա կատարում տեսական



ընդհանրացումներ, հետևություններ, նշում սոցիալ-տնտեսական բարեփոխությունների հիմնավորված միջոցառումներ:

Դարագլուխ կազմող տեսական այն բազմաթիվ նոր դրույթները, որոնք իրենց զարգացումն են ստացել պարտիայի XX և հետագա համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում, Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում, արտասանած ճառերում, ելույթներում, զրույցներում ու նամակներում, արդյունք են կոմունիստական շինարարության ստեղծարար պրակտիկայի խոր ուսումնասիրության ու ընդհանրացմանը:

Հիրավի, Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում, ելույթներում, նրա աշխատություններում արտացոլված են պարտիայի կոլեկտիվ միտքը, նրա լենինյան իմաստությունը, սովետական ժողովրդի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության արմատական շահերն ու վսեմ ձգտումները:

Ռևոլյուցիոն տեսության զարգացման հարցն առանձնակի նշանակություն ստացավ արդի ժամանակաշրջանում, երբ սկսված է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման դարաշրջանը, երբ հասարակական հարաբերությունները շեշտակի ու ռևոլյուցիոն բեկման են ենթարկվում, երբ մարդկության պատմության մեջ արմատական տեղաշարժեր են կատարվում:

«Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման դարաշրջանի առանձնահատկությունը հենց այն է,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— որ մեր առջև ավելի ու ավելի մեծ չափով են ծառանում այնպիսի տեսական հարցեր, որոնց պատասխանը պետք է գտնել ոչ միայն գրքերում, այլ ամենից առաջ կոմունիստական շինարարության բուն ստեղծարար պրակտիկայում: Մենք դավաճանած կլինեինք մեր ուսմունքի ոգուն, եթե այն չհարստացնեինք տեսական նոր դրույթներով ու հետևություններով, եթե մենք համարձակություն չունենայինք ճշգրտելու այն ֆորմուլաներն ու դրույթները, որոնք դադարել են համապատասխանել պատմական նոր փորձին» (Ն. Ս. Խրուշչով, Կոմունիզմը ժողովուրդների խաղաղությունն ու երջանկությունն է, հ. 2, էջ 174—175):

Անցած տասնամյակում կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական կոմիտեն ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ ստեղծագործաբար լուծեցին կոմունիզմի կառուցման և միջազգային կոմունիստական ու ազգային ազատագրական շարժման բազմաթիվ արմատական հարցեր:

Մեր պարտիայի, ընկեր Ն. Ս. Խրուշչովի տեսական մեծ աշխատանքը առավել լիակատարությամբ մարմնավորվեց ՍՄԿՊ նոր ծրագրում, որն արժանի կերպով հռչակվեց որպես մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը, նոր էտապ Մարքսի, Էնգելսի, Լենինի ռևոլյուցիոն տեսության զարգացման ասպարեզում:

Մարքսիզմ-լենինիզմի ոգուն համապատասխան դրվեցին ու լուծվեցին արդի պայմաններում պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափությունների, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման և նոր մարդու դաստիարակության, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանության, սոցիալիստական երկրների՝ կոմունիզմին առավել կամ պակաս միաժամանակյա անցման, մեր ժամանակներում համաշխարհային պատերազմի կանխման հնարավորության, սոցիալական տարբեր սիստեմների երկրների խաղաղ գոյակցության, արդի դարաշրջանի բնույթի մասին և այլ կարևոր պրոբլեմներ:

Պարտիան, նրա Կենտկոմը՝ ընկեր Խրուշչովի գլխավորությամբ տեսական-

որեն մշակեցին և, հենվելով համաժողովրդական հավանության վրա, իրականացրին արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, ՄՏԿ-ների վերակազմումը, ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործումը, դպրոցի մոտեցումը կյանքին, ժողովրդական կրթության սիստեմի կարգացումը, էկոնոմիկայի պարտիական ու պետական ղեկավարման կատարելագործումը և այլն: Ընդլայնվեցին միութենական ռեսպուբլիկաների և տեղական սովետների իրավունքները, վերակառուցվեց արհմիությունների և մյուս հասարակական կազմակերպությունների աշխատանքը, էլ ավելի կարգացավ սոցիալիստական դեմոկրատիան:

Պարտիայի XX համագումարի լենինյան կուրսի իրականացման, անհատի պաշտամունքի հետևանքների լիակատար վերացման համար կարևոր նշանակություն ունեցավ Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի և մյուսների հակապարտիական խմբի գաղափարական և կազմակերպչական ջախջախումը:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի խնդիրների իրագործման ասպարեզում կարևոր ուղենիշ հանդիսացավ ժողովրդական տնտեսության կարգացման յոթնամյա պլանը, որը քննարկեց և հաստատեց պարտիայի XXI արտահերթ համագումարը: Յոթնամյա պլանի խնդիրների մասին զեկուցեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը: Յոթնամյա պլանի կատարումը խոշոր քայլ կհանդիսանա ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդրի՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

Երկրի պաշտպանության և ժողովրդի աճող պահանջմունքների բավարարման շահերից ելնելով, կոմունիստական պարտիան շարունակ հոգ է տանում սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության համակողմանի կարգացման մասին, սիստեմատիկաբար դնելով ու լուծելով այդ բնագավառի հասունացած հարցերը:

Մեծ են ընկեր Ն. Ս. Խրուշչովի ծառայությունները կոլտնտեսային ու սովխոզային շինարարության արմատական հարցերի մշակման, գյուղատնտեսության բնագավառում աշխատանքների կազմակերպման, գյուղատնտեսական արտադրության դժվարին խնդիրների լուծման գործում:

Պարտիայի Կենտրոնական կոմիտեն՝ Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ իրագործեց մի շարք միջոցառումներ, որոնք բարձրացրին գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը, ամրապնդեցին կոլտնտեսություններն ու սովխոզները ղեկավար կադրերով ու մասնագետներով, ապահովեցին գյուղատնտեսության արտադրության հետագա վերելքը:

Ինչպես բացահայտվեց 1953 թվականին, երկրի գյուղատնտեսությունը բարձիթողի վիճակում էր: Հացի, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը չէր բավարարում բնակչության աճող պահանջմունքները: Անհրաժեշտ էր ձեռք առնել վճռական միջոցներ այդ վիճակից գյուղատնտեսությունը դուրս բերելու համար: 1954 թվականի հունվարին Ն. Ս. Խրուշչովը Կենտկոմի նախագահություն մտցրեց պատմական առաջարկ՝ հերկել Ղազախստանի, Սիբիրի, Ուրալի, Պովոլժյեի և երկրի այլ շրջանների խամ ու խոպան հողերը: Դա մի համարձակ պլան էր, որի կենսագործումը կապված էր մեծ դժվարությունների հաղթահարման հետ:

Խոպանի յուրացման գաղափարը ջերմորեն պաշտպանեցին ամբողջ պարտիան, սովետական ժողովուրդը: Հազարավոր կամավորներ ոգեշնչված պարտիայի կոչով՝ մեկնեցին խոպան հողերը: Համեմատաբար կարճ ժամկետում





հերկվեցին 42 միլիոն հեկտար նոր հողեր: Հիմնվեցին հարյուրավոր նոր սովխոզներ, որոնք դարձան հացահատիկի և գյուղատնտեսական այլ մթերքների խոշոր ֆաբրիկաներ: Խոպանի յուրացման շնորհիվ սովետական պետությունը կարողացավ զգալիորեն ավելացնել հացահատիկի արտադրությունը:

Հացահատիկային տնտեսության վերելքի հետ միասին պարտիան ժողովրդի ջանքերն ուղղեց հանրային անասնապահության կարգացմանը:

Պարտիայի Կենտկոմի 1955 թ. հունվարյան պլենումում Ն. Ս. Խրուշչովը առաջադրեց եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, լոբազգի և այլ բարձր բերքատու կուլտուրաների արմատավորման միջոցով կերի արտադրության ավելացման խնդիրը որպես անասնապահության կարգացման հիմնական պայման: Եգիպտացորենի և մյուս բերքատու կուլտուրաների արմատավորման ուղղությամբ Ն. Ս. Խրուշչովի ջանքերը փայլուն արդյունք տվին:

Պատշաճ պարզություն մտցվեց կոլտնտեսային կարգի կարգացման հեռանկարի հարցում, որն իր արտացոլումը գտավ ՍՄԿՊ ծրագրում, որտեղ ասված է. «Կոլտնտեսային կարգի տնտեսական ծաղկումը պայմաններ է ստեղծում, որ կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար մոտենա, իսկ հետագայում նաև ձուլվի համաժողովրդական սեփականությանը՝ դառնալով միասնական կոմունիստական սեփականություն»: Սոցիալիստական տնտեսության երկու ձևերի կատարելագործման, գյուղում հասարակական հարաբերությունների վերափոխության պրոբլեմները, որոնք ունեն տեսական ու գործնական խոշոր նշանակություն, հետագա կարգացում գտան Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում, պարտիայի XXII համագումարի որոշումներում և ՍՄԿՊ ծրագրում:

Վերջին տասնամյակում պարտիան խոշոր ջանքեր է գործադրում բարելավելու տնտեսության և, հատկապես, գյուղատնտեսական արտադրության պլանավորումը. այստեղ ևս մենք ականատես ենք Ն. Ս. Խրուշչովի գործադրած արգասաբեր գործունեությանը:

Արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրության կարգացման ճիշտ պլանավորման համար կարևոր նշանակություն ունի սոցիալիզմի ժամանակ մասսաների գնողունակության և արտադրության աճի հարաբերակցության հարցի մարքսիստական-լենինյան ըմբռնումը, որ կարգացրեց Ն. Ս. Խրուշչովը: Նա մերժեց այն սխալ, մարքսիստական-լենինյան ուսմունքին հակասող թեզը, որը շրջանառության մեջ էր Ստալինի անձի պաշտամունքի ժամանակ, թե իբր սոցիալիզմի օրոք բնակչության վճարունակ պահանջարկը միշտ պետք է առաջ անցնի արտադրությունից: Սոցիալիստական տնտեսությունը, նշում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, պլանային տնտեսություն է: Մենք կարող ենք և պարտավոր ենք համակողմանիորեն հաշվի առնել բնակչության պահանջարկը՝ թողարկվող արտադրանքի ծավալն ու բնույթը պլանավորելիս:

Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում, ելույթներում, պարտիայի XXII համագումարի որոշումներում, ՍՄԿՊ ծրագրում կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ սոցիալիստական արտադրության հիմնական նպատակը ժողովրդի նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների լրիվ բավարարումն է: **«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»**—ահա այն խնդիրը, որը կազմում է կոմունիստական պարտիայի գործունեության նպատակը:

Կոմունիստական պարտիան, ՍՄԿՊ Կենտկոմը՝ Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ սովետական ժողովրդի ջանքերն ուղղել են ՍՄԿՊ XXII համագումարի

պատմական որոշումների, պարտիայի ծրագրում շարադրված կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրների իրականացման նպատակին:

Պարտիան անշեղորեն ղեկավարվելով լենինյան այն ցուցումով, որ ռևոլյուցիայի հաղթանակից հետո կոմունիզմի համար մղվող պայքարում գլխավորը տնտեսական շինարարությունն է, էկոնոմիկան, ժամանակակից տեխնիկայի ու գիտության նվաճումների բազայի վրա հետևողականորեն կարգացնում է արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը:

Կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի կառուցման, սովետական հասարակական հարաբերությունների կարգացման վերաբերյալ պարտիայի XXII համագումարի որոշումներում և ՍՄԿՊ ծրագրում առաջադրված խնդիրների կենսագործման համար կարևոր միջոցառում հանդիսացան արտադրական սկզբունքով պարտիական օրգանների վերակառուցումը և պարտիական պետական վերահսկողության կազմակերպումը, որոնք իրականացվեց Ն. Ս. Խրուշչովի նախաձեռնությամբ: ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում Ն. Ս. Խրուշչովն իր հանգամանալից զեկուցման մեջ հիմնավորեց տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարության վերակառուցման անհրաժեշտությունը, որը պարտիական կազմակերպություններին հնարավորություն տվեց իրենց ուշադրությունը կենտրոնացնելու տնտեսական գլխավոր խնդիրների վրա, դրանց լուծմանը ենթարկելով կազմակերպական, գաղափարական, կուլտուր-դաստիարակչական ամբողջ աշխատանքը: Նույն նպատակին են ծառայում պարտիական վերահսկողության օրգանները՝ պարտիայի և կառավարության դիրեկտիվների կատարման ստուգումը կազմակերպելով:

Կոմունիստական պարտիայի, նրա Կենտկոմի գծի հաղթանակի լավագույն վկայականը սովետական էկոնոմիկայի մեծ նվաճումներն են: Հաջողությամբ կենսագործվում է ժողովրդական տնտեսության կարգացման յոթնամյա պլանը: Վերջին տասնամյակում Սովետական Միության արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 2,7 անգամ, համարյա 2 անգամ աճեց աշխատանքի արտադրողականությունը: Այս ժամանակաշրջանում կառուցվեցին ու գործարկվեցին 8.500 նոր խոշոր ձեռնարկություններ, վիթխարի էլեկտրակայաններ: Տնտեսության կարգացման գործում խոշոր դեր կատարեցին տեխնիկական պրոգրեսի արագացման ուղղությամբ պարտիայի իրականացրած միջոցառումները: Վերջին տասը տարում ստեղծվեցին ավելի քան 22 հազար մեքենաների նոր տեսակներ, մեխանիզմներ, ապարատներ, կանակյան սարքավորումներ:

Խոշոր չափով ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ մթերվեց 1,8 անգամ ավելի հաց, 2,6 անգամ ավելի միս, 2,7 անգամ ավելի կաթ, 3,3 անգամ ավելի ձու, 1,8 անգամ ավելի շաքարի ճակնդեղ, 1,3 անգամ ավելի բամբակ: Բարելավվեցին բնակչության կուլտուր-կենցաղային պայմանները, բարձրացավ ժողովրդի կենսամակարդակը: Իրագործվեց բնակարանային վիթխարի շինարարություն, որը հնարավորություն տվեց նոր բնակարաններ փոխադրել և բարելավել 108 միլիոն մարդու կենսապայմանները:

Մեծագույն հաջողությունների հասան սովետական գիտությունն ու տեխնիկան: Սովետական գիտնականները, ինժեներները, տեխնիկները, բանվորները տիեզերքի տարածությունների հետազոտությունների, հրթիռաշինության, ռադիոէլեկտրոնիկայի, քիմիայի կարգացման, ատոմային էներգիան խաղաղ



նպատակներով օգտագործելու և գիտության ու տեխնիկայի մյուս բնագավառներում հիանալի հաղթանակներ տարան: Հրթիռային արդյունաբերության ստեղծման, գիտության ու տեխնիկայի կարգացման ղեկավարության իրականացման ասպարեզում խոշոր դեր է խաղացել Ն. Ս. Խրուշչովը: Հաշվի առնելով այդ բնագավառում նրա աչքի ընկնող ծառայությունները, ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահությունը 1961 թվականին ընկեր Ն. Ս. Խրուշչովին պարգևատրեց Լենինի շքանշանով և երրորդ «Մուրճ և մանգաղ» ոսկե մեդալով:

Սովետական էկոնոմիկայի հետագա կարգացման, դեպի կոմունիզմ մեր երկրի առաջխաղացման ճանապարհին կարևորագույն էտապ են հանդիսանում պարտիայի Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան և 1964 թ. փետրվարյան պլենումները: Դեկտեմբերյան պլենումում տված իր զեկուցման մեջ և փետրվարյան պլենումում արտասանած ծրագրային ճառում ընկեր Ն. Ս. Խրուշչովը առաջ քաշեց քիմիական արդյունաբերության արագ կարգացման և դրա հիման վրա գյուղատնտեսության ինտենսիվացման խնդիրը, որպես երկրի ամբողջ էկոնոմիկայի հետագա վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանի:

Գյուղատնտեսության ինտենսիվացումն ընկեր Ն. Ս. Խրուշչովն անվանեց մեր շինարարության արմատական հարցը: Նա ցույց տվեց քիմիացման, մեքենայացման, ոռոգման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման հիման վրա գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացման հիմնական ուղին:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը երկրի էկոնոմիկայի կարգացման նկատմամբ ցուցաբերած հոգատարության հետ միասին, իր գործունեության մեջ մեծ տեղ է հատկացնում գաղափարական աշխատանքին, նոր մարդու դաստիարակության, կուլտուրայի, ժողովրդական կրթության կարգացման հարցերին, որոնք կոմունիստական հասարակության կառուցման ծրագրի բաղկացուցիչ մասն են կազմում: «Պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքը,— նշեց Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXII համագումարում,— բարձրացնում է մասսաների գիտակցությունը, աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, հանդիսանում է կոմունիզմի կառուցման կարևորագույն, մշտապես գործող ազդակ»:

Կոմունիստական դաստիարակության պրոցեսում Ն. Ս. Խրուշչովը հետևելով Վ. Ի. Լենինին, ամենաէական դերը հատկացնում է աշխատանքային դաստիարակությանը, որովհետև կոմունիզմն ու աշխատանքը անբաժանելի են, մարդկանց աշխատանքային ջանքերով է կառուցվում կոմունիստական հասարակարգը:

Աշխատանքային դաստիարակության, մարդկանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկների հաղթահարման, կյանքի հետ գաղափարական աշխատանքի սերտ կապի, գաղափարական ու կազմակերպական աշխատանքի միասնության, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ակտիվ պրոպագանդման, բուրժուական թշնամական իդեոլոգիայի դեմ անհաշտ պայքարի, ինտերնացիոնալ դաստիարակության, աշխատավորության գիտական-մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման և արդի ժամանակաշրջանի գաղափարական աշխատանքի այլ հարցերի մշակումը ընկեր Ն. Ս. Խրուշչովի կողմից հանդիսանում են խոշոր ներդրում մարքսիզմ-լենինիզմի գանձարանում, գործողության ուղեցույց պարտիական կազմակերպությունների համար:

Բարձր գնահատելով գրականության ու արվեստի դերը կոմունիզմի կառուցման, նոր մարդու դաստիարակության գործում, ընկեր Ն. Ս. Խրուշչովը մեծ հոգատարություն է ցուցաբերում գրականության ու արվեստի զարգացման նկատմամբ: Նրա պարբերական հանդիպումները գրականության, արվեստի, կուլտուրայի աշխատողների հետ, գրականության ու արվեստի կենսաթրթիռ հարցերի հետ կապված կոմունիստական պարտիայի լենինյան գծի պարզաբանումները մեծապես օգնում են կոմունիստական կուլտուրայի ծաղկմանը:

Ն. Ս. Խրուշչովը մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ոգեշունչ պրոպագանդիստի, կրակոտ տրիբունի օրինակ է տալիս: Նրա ելույթները, զրույցները հսկայական ազդեցություն են թողնում սովետական մարդկանց մտքի ու սրտի վրա, մղում աշխատանքային մեծ սխրագործությունների: Նա հպարտությամբ է նշում, որ ինքը մարքսիստական-լենինյան գաղափարների պրոպագանդիստ է: «Այո, ես եղել եմ, կամ և միշտ կլինեմ պրոպագանդիստ: Քանի դեռ իմ կրծքում բաբախում է սիրտը, ես կպրոպագանդեմ մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, կոմունիզմի կառուցման գաղափարները», հայտարարեց Ն. Ս. Խրուշչովը արհմիությունների համաշխարհային հինգերորդ կոնգրեսում:

Մեծ են Ն. Ս. Խրուշչովի ծառայությունները միջազգային կոմունիստական շարժման, սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցության զարգացման ու ամրապնդման հանդեպ: Որպես բոցաշունչ ինտերնացիոնալիստ, Ն. Ս. Խրուշչովը ցուցաբերում է սոցիալիստական երկրների ու նրանց ժողովուրդների շահերի խոր իմացությունը, ուժեղացնելով ՍՍՌՄ քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերը նրանց հետ:

Ականավոր դեր է պատկանում Ն. Ս. Խրուշչովին միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի մշակման գործում, որն իր արտահայտությունը գտավ կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թվականի դեկլարացիայում և 1960 թվականի հայտարարությունում: Հետևողականորեն կիրառելով այդ գլխավոր գիծը, Ն. Ս. Խրուշչովը անհաշտ պայքար է մղում ինչպես ռևիզիոնիստների, այնպես էլ դոգմատիկների, «ձախ» աղանդավորների դեմ, հանուն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության, հանուն միջազգային կոմունիստական շարժման միասնության:

Խոր գիտակցելով արդի միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ասպարեզում ՍՄԿՊ-ի խաղացած վիթխարի դերի պատմական նշանակությունը, մեր պարտիայի Կենտկոմը, հավատարիմ լենինյան Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ ՉԿՊ-ի ղեկավարների հետ վարած բանակցություններում հարցերը ճիշտ լուծելու նպատակով հանդես բերին առավելագույն համբերատարություն և պատշաճ տակտ:

Սակայն ՉԿՊ-ի ղեկավարները, հավատարիմ իրենց պառակտիչ վարքագծին, ստրատեգիայի ու տակտիկայի բոլոր հիմնական հարցերում հեռանալով միջազգային կոմունիստական շարժման լենինյան գծից, իրենց ուրույն կուրսը հռչակեցին, որի մեջ միաձուլվում են մանրբուրժուական ավանտյուրիզմն ու մեծապետական շովինիզմը: Նրանք մի շարք հարցերում ըստ էության գլորվում են տրոցկիստական դիրքերը և մարքսիստական-լենինյան պարտիաների դեմ մղվող պայքարում զինվում են տրոցկիստական մեթոդներով, տարբեր երկրներում կազմակերպում են իրենց կողմնակիցների ֆրակցիոն խմբիկներ:

Ելնելով միջազգային կոմունիստական շարժման արմատական շահերից, ՍՄԿՊ Կենտկոմի սույն թվականի փետրվարյան պլենումը անհրաժեշտ համարեց



հրապարակով մերկացնել ՉԿՊ-ի ղեկավարության հակալենինյան դիրքերը և լիովին ու միահամուռ հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության, ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի քաղաքական և պրակտիկ գործունեությանը, որի նպատակն է ՍՍՌՄ-ում կառուցել կոմունիստական հասարակարգ, ապահովել խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի գործի հաղթանակը, ամրապնդել մարքս-լենինյան պարտիաների համախմբվածությունը: ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը հանձնարարեց Կենտկոմի նախագահությանն այսուհետև ևս հաստատակամորեն պաշտպանել համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գիծը, հասնել արդիականության բոլոր ռևոլյուցիոն ուժերի միասնության ամրապնդմանը:

Այժմ, երբ ՉԿՊ-ի ղեկավարներն ամեն կերպ ջանում են եղբայրական կոմունիստական պարտիաներին պարտադրել իրենց, այսպես կոչված, հատուկ կուրսը, միակ ճշմարիտ քաղաքականությունն այն է, որը մշակեց ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը: Ահա թե ինչու ներկա պայմաններում մեր պարտիան իր պարտքն է համարում վճռականորեն պաշտպանել մարքս-լենինյան սկզբունքների մաքրությունը, միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գիծը, մի գիծ, որի վարման փայլուն օրինակներ է տվել ՍՄԿՊ-ի լենինյան Կենտկոմն՝ ականավոր լենինյան Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ:

Տոգորված լինելով համաշխարհային կոմունիստական շարժման միասնության մտահոգությամբ, Սովետական Միության կոմունիստական պարտիան, հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, այսուհետև ևս պատրաստ է որոնել ծագած դժվարությունները հաղթահարելու ուղիներ: Մեր պարտիան, ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորած նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ ամեն ինչ արել են և այսուհետև էլ կանեն, որպեսզի ամրապնդեն միջազգային կոմունիստական շարժման միասնությունը: Մեր պարտիան իր արժանավայել ավանդը կներդնի մեր ընդհանուր ռևոլյուցիոն մարքս-լենինյան գործի հաղթանակի համար մղվող մեծ պայքարում:

Հսկայական ջանքեր է գործադրում Ն. Ս. Խրուշչովը համախմբելու համար սոցիալիզմի երկրները և բոլոր խաղաղասեր ուժերը նոր ագրեսիայի ու պատերազմի նախապատրաստման դեմ: Խաղաղության համար, ժողովուրդների կյանքից պատերազմներն արմատախիլ անելու համար Ն. Ս. Խրուշչովի տիտանական գործունեությունը համաշխարհային ճանաչում է գտել: «Խաղաղության մեծ մարտիկ», «Խաղաղության և բարեկամության պատվիրակ»—այսպես են անվանում Ն. Ս. Խրուշչովին աշխարհի խաղաղասեր մարդիկ:

Ժողովրդական լայն մասսաները մեծ խանդավառությամբ և ջերմությամբ են ընդունում Ն. Ս. Խրուշչովին իրենց երկրներում, ի դեմս նրա տեսնելով խաղաղության հզոր պատվարի՝ սոցիալիստական մեծ երկրի պատվիրակի:

Ն. Ս. Խրուշչովը հետևողականորեն կիրառում և զարգացնում է սոցիալական տարբեր սիստեմ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը: «Խաղաղ գոյակցությունը Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր կուրսն է», անդադրում շեշտում է նա:

Իր բազմաթիվ ելույթներում, զրույցներում, պետական ու պարտիական փաստաթղթերում Ն. Ս. Խրուշչովը հիմնավորում ու պարզաբանում է «խաղաղ գոյակցության» նշանակությունը և այդ սկզբունքի կիրառման կոնկրետ միջոցները ներկա էտապում: Խաղաղ գոյակցությունն օբյեկտիվ անհրաժեշտություն է, նշում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը: Դրանում շահագրգռված են բնակչության

ամենալայն խավերը, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը. այն համապատասխանում է թե սոցիալիզմի երկրների, թե բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման և թե ազգային-ազատագրական շարժումների շահերին: Տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը նպաստում է համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի կարգացմանը, լավագույն պայմաններ է ստեղծում ազգային-ազատագրական շարժումների ծավալման համար:

Բայց խաղաղ գոյակցությունը, ուսուցանում է Ն. Ս. Խրուշչովը, չի կարող պահպանվել առանց իմպերիալիստների ագրեսիվ նկրտումների դեմ բոլոր ժողովուրդների անձնվեր պայքարի:

Խաղաղության ուժերի մոբիլիզացման, իմպերիալիզմի դեմ պայքարի հաջողության գործում խոշորագույն նշանակություն ունի ներկա ժամանակաշրջանում պատերազմները ժողովուրդների կյանքից վերացնելու հնարավորության մասին մարքսիստական-լենինյան դրույթը, որն իր արտահայտությունն է գտել մեր պարտիայի XX, XXI, XXII համագումարների որոշումներում, պարտիայի ծրագրում, միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերում, ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում ու ելույթներում: Խաղաղության ամրապնդման, միջազգային պրոբլեմների խաղաղ լուծման ռեալ հնարավորություններ են ստեղծված պատմական զարգացման ներկա էտապի առանձնահատկություններով, միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխումով՝ հօգուտ սոցիալիզմի մի կողմից, մյուս կողմից, ռազմական տեխնիկայի ասպարեզում կատարված որակական փոփոխություններով, ջերմա-միջուկային ավերիչ զենքի ահռելի աճով:

Պատերազմները հասարակական կյանքից բացառելու նպատակով Ն. Ս. Խրուշչովի գործադրած հսկայական եռանդը, նրա հետևողական պայքարը հիանալի արդյունք է տալիս: Վերջին տարիների ընթացքում քանի՜-քա՜նի անգամ իմպերիալիստների ավանտյուրիստական գործողությունների հետևանքով աշխարհը կանգնած է եղել համաշխարհային պատերազմի եզրին, բայց այն կանխվել է շնորհիվ սովետական պետության, սոցիալիստական երկրների, խաղաղության բոլոր ուժերի վճռական քայլերի, շնորհիվ խաղաղության այն իմաստուն քաղաքականության, որը հաստատակամորեն վարում է սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը:

Խաղաղության ամրապնդման համար նպաստավոր քայլեր հանդիսացան մթնոլորտում, տիեզերքում և ջրի տակ միջուկային փորձարկումներն արգելելու մասին վերջերս Մոսկվայում կնքած պայմանագիրը, միջուկային զենք ունեցող օբյեկտները շուրջերկրյա ուղեծիր դուրս չբերելու պայմանավորվածությունը:

Խաղաղության պահպանման կարևոր ակտ է Ն. Ս. Խրուշչովի 1963 թ. դեկտեմբերի 31-ի ուղերձը աշխարհի բոլոր երկրների պետությունների և կառավարությունների ղեկավարներին այն մասին, որ պետությունները հրաժարվեն տերիտորիալ վեճերի և սահմանային հարցերի լուծման համար ուժ գործադրելուց:

Խաղաղության, ժողովուրդների անվտանգության ամրապնդման այն կուրսը, որ հաստատակամորեն և արդյունավետ կերպով վարում է Ն. Ս. Խրուշչովը, բխում է աշխարհի ժողովուրդների շահերից, կոմունիզմի շահերից:

Ն. Ս. Խրուշչովը լենինյան տիպի գործիչ է: Նա հազարավոր թելերով կապված է ժողովրդի հետ, մշտապես գտնվում է աշխատավորական մասսաների



շրջանում, ծանոթանում նրանց պահանջներին, նախաձեռնություններին, ապրում նրանց շահերով ու ձգտումներով: Ընկեր Ն. Ս. Խրուշչովը եղել է Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաներում, մարզերում ու երկրամասերում՝ Երևանից մինչև Խաղաղ օվկիանոս, այցելել է տասնյակ ու հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, հանդիպել, սրտալից զրույցներ ունեցել հազարավոր մարդկանց հետ: Նա խաղաղության միսիայով շրջել է աշխարհի շատ երկրներ, ընդունել է արտասահմանյան բազմաթիվ քաղաքական ու հասարակական գործիչների, պատվիրակությունների: Որպեսզի պատկերացնենք նրա լարված աշխատանքային օրը, բավական է նշենք, որ միայն 1961 թվականին Ն. Ս. Խրուշչովը արտասահմանյան 105 պատվիրակություններ է ընդունել և հանդիպումներ ունեցել տարբեր գործիչների հետ: Այդ հանդիպումները մեծապես օգնել են փոխըմբռնմանը, միջազգային մեր կապերի ամրապնդմանը:

Մասսաների հետ մշտական ու լայն կապ, ամեն մի նոր, առաջադիմական նախաձեռնության պաշտպանություն—ահա Ն. Ս. Խրուշչովի աշխատանքի ոճը: Նա անձամբ ճանաչում է աշխատանքի հարյուրավոր առաջավորների, բարձր գնահատում նրանց գործունեությունը: Առաջավոր մարդիկ,— հաճախ կրկնում է Ն. Ս. Խրուշչովը,— մեր հասարակության ծաղիկներն են, որոնց պետք է աջակցել, որպեսզի ոչ մի մոլախոտ նրանց չթառամեցնի: Մեր կյանքի առաջավորներին նա անվանեց՝ փարոսներ: Նա պահանջում է աշխատավորների նկատմամբ ցուցաբերել հոգատարություն, ընկերական ջերմ վերաբերմունք: «Ոչ թե հրամայել մարդկանց,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— այլ ընկերաբար վերաբերվել նրանց, կարողանալ ուշադրությամբ լսել նրանց, սովորել նրանցից, սովորեցնել նրանց»: Ահա մասսաների և ղեկավարների փոխհարաբերությունների լենինյան մոտեցումը, որն ուսուցանում է Ն. Ս. Խրուշչովը:

Ընկեր Խրուշչովը 1961 թ. մայիսին եղավ Հայաստանում: Նա մասնակցեց Հայաստանում սովետական կարգերի հաստատման և կոմունիստական պարտիայի գոյավորման 40-ամյակին նվիրված հոբելյանական հանդիսավոր նիստին: Իր ողջույնի ճառում նա բարձր գնահատեց հայ ժողովրդի գործունեությունը կոմունիզմի կառուցման ասպարեզում:

Ընկեր Խրուշչովի այցելությունը Հայաստան մեծ ուրախություն պատճառեց Հայաստանի աշխատավորներին և առանձնահատուկ շուք տվեց նրանց ազգային տոնին: Ընկեր Խրուշչովի Հայաստան այցելելը օգնեց լուծելու ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման հետ կապված մի շարք կարևոր հարցեր:

Ն. Ս. Խրուշչովը յոթանասուն տարեկան է: Բայց նա լի է եռանդով, մեծ աշխատունակությամբ, պայծառ կենսախնդությամբ:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովին, նրա ծննդյան 70-ամյակի օրը, ցանկանում ենք քաջառողջություն, երկար ու երկար տարիների կյանք՝ ի փառս մեր մեծ հայրենիքի, կոմունիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ամբողջ աշխարհում:



Ս. Ա. ՎՈԼՖԿՈՎԻՉ

Ակադեմիկոս

# ՔԻՄԻԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

*Արդի գյուղատնտեսության մեջ գիտությունը, հիրավի, անմիջական արտադրողական ուժ է դառնում։ Կենսաբանական, քիմիական, ֆիզիկական ու տեխնիկական գիտությունները տիրաբար ներխուժում են բուսաբուծության ու անասնաբուծության այլևայլ ճյուղերը, բացահայտելով դրանց ինտենսիվացման նորանոր ուղիներ, նպաստելով սննդամթերքների, հագուստեղենի և ժողովրդական սպառման այլ առարկաների առատության ստեղծմանը։ Այդ գիտությունները բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը և հեշտացնում այն, բարելավում են գյուղատնտեսական արտադրանքի որակը, իջեցնում ինքնարժեքը։ Գիտության հաջողությունների շնորհիվ հողագործությունը և անասնաբուծությունը գնալով ավելի քիչ են կախում ունենում բնական պայմաններից և վերածվում են իսկական գյուղատնտեսական ինդուստրիայի։*

*Գյուղատնտեսության վերելքի հատկապես հզոր լծակն է քիմիացումը։ Ականավոր սովետական գիտնական Դմիտրի Նիկոլաևիչ Պրյանիշնիկովի դեռևս 1924 թվականին առաջարկած այդ տերմինի տակ ընդունված է հասկանալ քիմիական միջոցների ու մեթոդների լայն ու պլանաչափ կիրառում բուսաբուծության և անասնաբուծության մեջ։ Գյուղատնտեսության համակողմանի ռացիոնալ քիմիացման անհրաժեշտությունը ջերմ պաշտպանություն է գտել Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագրի մեջ։*

*Քիմիացման տնտեսական արդյունավետությունը չափազանց մեծ է։ Պրյանիշնիկովի դիպուկ արտահայտությամբ հանքային պարարտանյութերի օգտագործումն ստեղծում է հաց արտադրողների «նոր աշխարհամասեր»։ Հանքային պարարտանյութերի համաշխարհային արտադրությունն աճում է արագ ու անընդհատ։ Եթե 1913 թվականին ամբողջ աշխարհում արտադրվել է (վերածած պայմանական սննդարար նյութերի՝ ազոտի, ֆոսֆորի, պենտօքսիդի և կալիումի օքսիդի) 4,2 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, ապա 1940 թվականին արտադրվել է 10,1 միլիոն, իսկ 1961 թվականին՝ 29,6 միլիոն տոննա։*

*Հանքային պարարտանյութերի պահանջը գնալով աճելու է։ ՄԱԿ-ին առընթեր պարենամթերքի և գյուղատնտեսության կազմակերպության օրենտիր հաշվարկումների համաձայն գյուղատնտեսության այդ պահանջը ամբողջ աշխարհում 1980 թվականին կկազմի մոտ 70 միլիոն տոննա, իսկ 2000 թվականին՝ 100 միլիոն տոննա, այսինքն՝ մոտավորապես երեք անգամ կգերազանցի ներկայիս արտադրությունը։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո հանքային պարարտանյութերի արտադրությունը ՍՍՌՄ-ում ավելացել է ավելի քան 250 անգամ, իսկ վերջին 25 տարում, 1938 թվականի համեմատությամբ՝ 5 անգամ։ Նախատեսվում է 1970 թվականին ՍՍՌՄ-ում արտադրել (ապրանքային արտահայտությամբ)*



*100 միլիոն տոննա պարարտանյութ, այսինքն՝ մոտ 6 անգամ ավելի, քան 1962 թվականին։*

*Հսկայական արդյունք է տալիս բույսերի պաշտպանության քիմիական միջոցների կիրառումը գյուղատնտեսության մեջ։ Բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի քիմիական միջոցների՝ ինսեկտոֆունգիցիդների արտադրությունը ՍՍՌՄ-ում 1965 թվականին, 1961 թվականի համեմատությամբ կավելանա երկու անգամ, մոլախոտերի ոչնչացման միջոցների՝ հերբիցիդների արտադրությունը՝ 8 անգամ և մեքենայական բերքահավաքից առաջ բույսերի տերևազրկման պրեպարատների՝ դեֆոլիանտների արտադրությունը մոտ 5,5 անգամ։*

*Բացի արդեն գոյություն ունեցող քիմիական միջոցների նկատմամբ գյուղատնտեսության պահանջը բավարարելուց, արդի գիտությունը և քիմիական արդյունաբերությունն իրենց ջանքերն ուղղում են այդ միջոցների ասորտիմենտի զգալի ընդլայնմանը։ Ներկայումս ՍՍՌՄ-ում արտադրվում են հանքային պարարտանյութերի ավելի քան 20 հիմնական տեսակներ (չհաշված տուկային խառնուրդները) և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների շուրջ 60 տեսակներ. այս ասորտիմենտը մշտապես աճում է։ Ընդսմին պարարտանյութերի մեջ ավելի է բարձրանում սննդարար նյութերի պարունակությունը, որը տալիս է տրանսպորտային միջոցների, պահեստների, տարաների և պարարտանյութերի զգալի խնայողություն. մշակվում են մի քանի սննդարար տարրեր պարունակող նոր կոմպլեքսային պարարտանյութեր. զարգանում է միկրոպարարտանյութերի արտադրությունը։*

*Քիմիական գիտության և քիմիական արդյունաբերության առջև միշտ նորանոր խնդիրներ են դնում ոչ միայն գյուղատնտեսության տեխնիկայի ու էկոնոմիկայի առաջադիմությունը, այլև կենսաբանական, ֆիզիկական, հենց նույն քիմիական և ուրիշ այլ գիտությունների հաջողությունները, որոնք հայտնագործում են գյուղատնտեսական արտադրության վերելքի որակապես նոր ուղիներ ու միջոցներ։ Բոլոր բնական գիտությունների փոխադարձ ներթափանցումը ստեղծում է բնության վերաբերյալ գիտությունների մի համատարած ու անբաժան ճակատ, որոնց մեջ հարաճուն նշանակություն են ձեռք բերում քիմիայի հետ սերտորեն առնչված «հիբրիդ» գիտությունները՝ բիոքիմիան, ագրոքիմիան, միկրոօրգանիզմների բիոքիմիան, մոլեկուլյար բիոլոգիան, տոքսիկոլոգիան, քիմիոթերապիան, բիոգեոքիմիան և այլն։*

*Գյուղատնտեսության քիմիացման բնագավառում գիտահետազոտական աշխատանքներից մեծ մասի բնորոշ առանձնահատկությունը դրանց կոմպլեքսայնությունն է։ Ծագող խնդիրները արագ և բարձրորակ լուծելու համար անհրաժեշտ է համախմբել գիտության զանազան ճյուղերի, արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների ջանքերը։ Հաճախ մի մեծ պրոբլեմի լուծմանը մասնակցում են 10—15 և ավելի մասնագետներ։*

*Քիմիան գյուղատնտեսությանը տալիս է ո՛չ միայն կարևոր արդյունաբերական արտադրանք, այլև հետազոտության քիմիական մեթոդներ, որոնք օգնում են խորապես ուսումնասիրելու օրգանիզմների զարգացման էությունն ու օրինաչափությունները և նպատակասլաց ներգործելու դրանց վրա։*

*Առանձին ականավոր քիմիկոսներ անցյալում ևս իրենց ստեղծագործական ուժերը նվիրում էին ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ քիմիական արդյունաբերության այն ճյուղերի վերելքին, որոնք սպասարկում էին գյուղատնտեսությանը։ Բավական է հիշատակել ռուսական գիտության հիանալի գործիչներ Դ. Ի. Մենդելեևին, Ա. Ն. Էնգելգարդտին, գերմանացի գիտնական Յու. Լիբիխին, ֆրանսիացի ագրոքիմիկոս Ժ. Բ. Բուսենգոյին և մյուսներին։*

*XX դարում այդ խնդիրների լուծմանը ներգրավվեցին գիտնականների և պրակտիկ աշխատողների կոլեկտիվներ։ Սովետական Միությունում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից կարճ ժամանակ անց կազմակերպվեցին պարարտանյութերի, բույսերի պաշտպանության քիմիական միջոցների, ինսեկտոֆունգիցիդների գիտահետազոտական ինստիտուտներ։ Մեծ աշխատանք են կա-*

տարում ազոտային արդյունաբերության ինստիտուտը, Հալուրգիայի ինստիտուտը, Ուկրաինայի և Ադրբեջանի ագրոքիմիայի ինստիտուտները, անասունների բիոքիմիայի և ֆիզիոլոգիայի համամիութենական ինստիտուտը և շատ այլ ինստիտուտներ, ինչպես նաև մասնագիտական լաբորատորիաներ և բարձրագույն դպրոցների ամբիոններ։ Նրանց համախմբած գիտական ուժերը արտադրության աշխատողների հետ սերտ համագործակցելով առաջ են քաշել և լուծել ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող բազմաթիվ խնդիրներ և հարթել են գյուղատնտեսության քիմիացման նոր ուղիներ։

Խոշորագույն նշանակություն ունեցան Դ. Ն. Պրյանիշնիկովի տեսական հետազոտությունները, որոնք բացահայտեցին բույսերի ազոտային սնման մեխանիզմը։ Վ. Ի. Վեռնադսկին և նրա աշակերտները մշակեցին հողի բույսերի ու կենդանիների սննդի մեջ միկրոէլեմենտների դերի պրոբլեմը։ Ռուս գիտնական Ն. Գ. Խոլոդնին և հոլանդացի գիտնական Ֆ. Վենտը իրարից անկախ, 1924 թվականին հայտնագործեցին բույսերի աճման խթանիչները՝ աուքսինը և հետերոաուքսինը։ Ակադեմիկոս Ա. Ե. Արբուզովը դրեց ֆոսֆորային-օրգանական միացությունների՝ ինսեկտոֆունգիցիդների այդ կարևորագույն խմբի քիմիայի հիմքը։

ՍՍՌՄ-ում քիմիկոսների և երկրաբանների աշխատանքի շնորհիվ հայտնագործվել և պարարտանյութերի արտադրության համար օգտագործվում են ֆոսֆատների, կալիումի, բորի և ագրոնոմիական այլ հանքերի հսկայական ռեսուրսներ։ Երեսնական թվականներին Կոլայի թերակղզում, Խիբիններում հայտնագործվեցին համաշխարհային նշանակություն ունեցող ապատիտի հանքավայրերը։ Քիչ ավելի ուշ հարավ-արևելյան Ղազախստանում, Կարա-Տաու լեռներում հայտնաբերվեցին ֆոսֆորիտների հսկայական պաշարներ։ Հենց այդ ժամանակ էլ հետախուզվեցին կալիական աղերի՝ աշխարհում ամենախոշոր հանքերը Հյուսիսային Ուրալում՝ Սոլիկամսկի շրջանում, իսկ հետագայում՝ Հարավային Ուրալում, Բելոռուսիայում և ՍՍՌՄ այլ շրջաններում։

Դեռևս առաջին հնգամյակում (1927—1932 թթ.) ստեղծված սինթետիկ ամիակի և ազոտային պարարտանյութերի սովետական արդյունաբերությունը արագորեն ընդլայնվեց և անընդհատ զարգանում է։ Կարճ ժամանակ անց ՍՍՌՄ-ում առաջացավ նաև բույսերի պաշտպանության այնպիսի քիմիական միջոցների արտադրություն, որոնք սկզբում ստացվում էին հանքային ու բուսական հումքից։ Իսկ հետո նաև սինթետիկ ճանապարհով։

Սովետական քիմիական գիտությունը և արդյունաբերությունը մշակել են հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների բազմաթիվ նոր տեսակներ, ինչպես նաև դրանց արտադրության ինքնատիպ մեթոդներ։ Որպես օրինակ կարելի է հիշատակել ազոտային պարարտանյութի դեր ունեցող ամիակի սելիտրայի արտադրությունը, որն առաջին անգամ առաջարկել էր Պրյանիշնիկովը և այժմ լայնորեն կիրառվում է շատ երկրներում։ Մեր երկրում վաղուց են սկսել ֆոսֆորիտային ալյուրն օգտագործել ֆոսֆորային պարարտանյութեր արտադրելու համար, որպես հումք առաջին անգամ է կիրառվել ապատիտը։ Ազոտաթթվի միջոցով բնական ֆոսֆատները վերամշակելով կոմպլեքսային պարարտանյութեր ստանալու պրոգրեսիվ պրոցեսը նույնպես առաջարկվել ու բազմակողմանիորեն ուսումնասիրվել էր ՍՍՌՄ-ում, թեպետև դրա արդյունաբերական իրացումը ավելի շուտ է իրագործվել ուրիշ երկրներում։ Գործնականում արդեն կիրառվում են հարստացված սուպերֆոսֆատ ստանալու ինքնատիպ մեթոդները, որ առաջարկել էր հայտնի սովետական գիտնական ակադեմիկոս Է.Վ. Բրիցկեն, ֆտորազրկված կերային ֆոսֆատ ստանալու եղանակները, բորոսիլիկատային հանքերը որպես բորի պարարտանյութեր վերամշակելու մեթոդները, միկրոէլեմենտներ պարունակող պարարտանյութեր և կերային միջոցներ ստանալու պրոցեսները և այլն։

Ներկայումս կատարվող հետազոտությունները հնարավորություն կտան ավելացնելու հատիկավորված ավելի արդյունավետ պարարտանյութերի թո-



ղարկումը, է՛լ ավելի պետք է զարգանա ազոտային և կոմպլեքսային հեղուկ պարարտանյութերի արտադրությունը, քլորազուրկ աղերի ձևով կալիական պարարտանյութերի արտադրությունը, քանի որ քլորն իջեցնում է մի շարք գյուղատնտեսական կուլտուրաների որակը։ Սկսվել է զանազան նյութերի հետ միզանյութի պոլիմերացման արտադրանքների բազայի վրա երկարատև գործող ազոտային ու կոմպլեքսային պարարտանյութերի թողարկումը։ Այդ հնարավորություն կտա խուսափելու ազոտի մեծ կորուստներից, որոնք տեղի են ունենում ավազուտային, աղուտային և այլ հողերից նրա աղերը ջրի հետ դուրս գալու հետևանքով։

Մշակվում են համակցված (բազմավալենտ) գործողություն ունեցող այնպիսի պրեպարատների արտադրության պրոցեսներ, որոնց բաղադրության մեջ, մակրո և միկրոպարարտանյութերից բացի, մտնում են հերբիցիդներ, աճի խթանիչներ, ֆունգիցիդներ, սիստեմային ինսեկտոֆունգիցիդներ և կենսաբանորեն ակտիվ այլ նյութեր։

Հսկայական նշանակություն ունի հանքային պարարտանյութերի օգտագործումը բարելավելու պրոբլեմը։ Դեռևս չափազանց մեծ են դրանց կորուստները. մեխանիկական՝ անփույթ պահպանման ու փոխադրման հետևանքով, ֆիզիկո-քիմիական՝ տարրալուծման, քայքայման և նման այլ պատճառներով և կենսաբանական՝ բակտերիալ ու բիոքիմիական պրոցեսների հետևանքով։

Տեսական և գործնական խնդիրների լուծման վրա մեծ, շատ տեսակետներից հեղաշրջող ներգործություն ունեցավ նշակիր ատոմների մեթոդի ներմուծումը բիոքիմիական, ագրոքիմիական և տոքսիկոլոգիական հետազոտություններում՝ ռադիոակտիվ և կայուն իզոտոպների կիրառումը, ֆոսֆորի, ազոտի, ածխածնի և մյուս էլեմենտների իզոտոպների օգտագործումը արմատապես փոխեց բույսերի և կենդանիների օրգանիզմների սնման, նյութերի շարժման ու փոխանակման և այլ կենսաբանական պրոցեսներ, ինչպես նաև հողի մեջ տեղի ունեցող պրոցեսների վերաբերյալ եղած նախկին բազմաթիվ պատկերացումներ։

Օրինակ. նախկինում գտնում էին, որ բույսերը առաջին վեգետացիոն շրջանում օգտագործում են հողի մեջ եղած ֆոսֆորի 10—30 տոկոսը միայն։ Ֆոսֆորի ռադիոակտիվ իզոտոպի միջոցով կատարված հետազոտությունները ցույց տվին, որ իրականում բույսերը կարող են 2—3 անգամ ավելի ֆոսֆատ յուրացնել և որ առաջին տարվա ընթացքում չօգտագործված ֆոսֆորը բույսերը յուրացնում են հետագա տարիներին։ Պարզվեց նաև, որ չափազանցված են եղել նախկինում եղած պատկերացումները այն մասին, թե հողում եղած շարժուն, դյուրին լուծվող ֆոսֆատները փոխարկվում են սակավ շարժուն, դժվար լուծվող ֆոսֆատների։

Այդ, առաջին շրջանում տեսական հետազոտություններից սովետական ագրոքիմիկոս պրոֆեսոր Ա. Վ. Սոկոլովը գործնական կարևոր հետևություններ արեց այն մասին, որ ՍՍՌՄ բոլոր շրջաններում բամբակենու, շաքարի ճակնդեղի, թեյի ցանքերը պարարտանյութերի հետ մեկտեղ 2—3 անգամ ավելի ֆոսֆոր էին ստանում, քան այն հանվում էր բերքի հետ մեկտեղ։ Այդ հետևությունները հնարավորություն տվեցին վերաբաշխելու զանազան կուլտուրաների համար օգտագործվող ֆոսֆորային պարարտանյութերի չափերը, խնայողություն անելով որոշ կուլտուրաների հաշվին, ավելացնելով մյուս կուլտուրաների մատակարարումը։ Այդ հետազոտությունների շնորհիվ ճշտվեցին ֆոսֆորային պարարտանյութերի մուծման եղանակներն ու ժամկետները։

Բույսերի կողմից ազոտային պարարտանյութերը և օդի ազոտը յուրացնելու պրոցեսը ուսումնասիրելիս ազոտ—15 կայուն իզոտոպի կիրառումը ևս շատ նոր բան մտցրեց տեսության ու պրակտիկայի մեջ։ Այդ ցույց տվեց, որ բույսերը առաջին ստադիայում չափազանց արագ են յուրացնում ամիակը և նիտրատները։ Ընդ որում արմատներում սինթեզվում են ամինաթթուներ, որոնք օգտագործվում են սպիտակուցների սինթեզի համար տերևներում։

Պարարտանյութերի և ինսեկտոֆունգիցիդների գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից պրոֆեսոր Ց. Վ. Տուրչինի փորձերի ժամանակ ազոտ—15-ով նշված ամոնիումի սուլֆատը հողի մեջ մուծելուց արդեն 15 րոպե հետո բույսերի արմատներում հայտնաբերվեցին ամինաթթուներ, որոնց պարունակությունը արագ աճում էր։ Ընդամենը մոտ երկու ժամ պահանջվեց, որպեսզի ամինաթթուները շարժվեն դեպի տերևները։ Սահմանվեց նաև տարբեր ամինաթթուների գոյացման որոշակի հաջորդականություն։ Ազոտային պարարտանյութ մուծելուց արդեն մեկ օր հետո ազոտ—15 է հայտնաբերվում բույսի սպիտակուցի բաղադրության մեջ։ Իսկ երկու օրվա ընթացքում սպիտակուցի մեջ պարունակվող ազոտը վերականգնվում է մոտ կեսով չափ։ Այդ փորձերը ցույց են տալիս, որ բույսերի մեջ սպիտակուցի մոլեկուլները համեմատաբար կարճ կյանք ունեն և անընդհատ վերականգնվում են։

Դեռևս ակադեմիկոս Ա. Ն. Բախը հայտնել է մթնոլորտային ազոտ յուրացնող բակտերիաներից ֆերմենտներ ստանալու, բակտերիալ բջջից դուրս ազոտի յուրացման մեխանիզմը ուսումնասիրելու և հետագայում այդ պրոցեսը տեխնիկայում վերարտադրելու գաղափարը։ Այդ հնարավորություն կտա հրաժարվելու ամիակի արդյունաբերական սինթեզի էներգատար և չափազանց բարդ եղանակից, որը տեղի է ունենում բարձր ճնշման ու ջերմաստիճանի պայմաններում։

Մթնոլորտային ազոտի յուրացման պրոբլեմը դրվեց նոր ձևով, երբ հետազոտողների զինանոցը հարստացավ իզոտոպ մեթոդներով, մասս-սպեկտրոմետրիայով և խրոմատոգրաֆիայով։ Այդ չափազանց բարդ, նաև հիմնավոր պրոբլեմի լուծմանը միկրոբիոլոգներից բացի ձեռնամուխ եղան բիոքիմիկոսները և քիմիկոսները։ Տուրչինը մասնավորապես հաստատեց, որ մթնոլորտային ազոտի ֆիքսացիան տեղի է ունենում ոչ թե պալարային բակտերիաների ներսում, այլ բուն իսկ բույսի պալարային հյուսվածքում, որը գոյանում է բակտերիաների շնորհիվ։ Նա ցույց տվեց նաև, որ լոբազգի և այլ բույսերի տերևներում կան ազոտ ֆիքսող ֆերմենտներ, որոնք առաջին անգամ ազոտոբակտերից զատեցին ամերիկացի հետազոտողները։ Այդ ֆերմենտները կարող են նաև բույսերից դուրս որոշակի պայմաններում ֆիքսել մթնոլորտային ազոտը, այն փոխարկելով ամիակի։ Այդ հետազոտությունները տեսական մեծ հետաքրքրություն են ներկայացնում, հարկադրում են վերանայել ստեղծված պատկերացումները և, ըստ երևույթին, խթան կհանդիսանան նոր տեխնիկական գաղափարների առաջացման համար։

Բիոքիմիկոսները, ագրոքիմիկոսները և քիմիկոսները հայտնաբերում են նորանոր քիմիական էլեմենտներ, որոնք նշանակություն ունեն բույսերի ու կենդանիների սնման և նրանց զարգացման պրոցեսների կարգավորման համար։ Ներկայումս սահմանված է, որ հայտնի 103 քիմիական էլեմենտներից առնվազն 40-ը օժտված են կենսաբանական ակտիվությամբ։ Կան տասնյակ հազար այնպիսի քիմիական միացություններ, որոնք դրական կամ բացասական ներգործություն են ունենում բույսերի և կենդանիների կենսագործունեության վրա։ Դրանցից գյուղատնտեսության քիմիացման համաշխարհային զինանոցն են մտել միայն մի քանի տասնյակ պարարտանյութեր և բույսերի պաշտպանության մոտ 400 քիմիական միջոցներ։

Վերջին տարիներս մեծ չափով աճեց միկրոէլեմենտների ուսումնասիրության և բուսաբուծության ու անասնաբուծության մեջ դրանց օգտագործման ուղղությամբ կատարվող հետազոտական աշխատանքների թիվը։ Միկրոէլեմենտները, որոնց մեծ մասը (բորը, պղինձը, մոլիբդենը, մարգանեցը, ցինկը և այլն) մտնում են ֆերմենտների բաղադրության մեջ, չափազանց արդյունավետ են։ Միկրոէլեմենտները ոչ միայն բարձրացնում են բույսերի ու կենդանիների մթերատվությունը, այլև կանխում ու բուժում են մի շարք հիվանդություններ։

Բույսն իր սնունդն ստանում է ո՛չ միայն հողից, այլև օդից՝ ածխաթթու գազի ձևով։ Ուստի վերջին ժամանակներս գյուղատնտեսության առջև ծառացել է «օդային պարարտանյութերի» օգտագործման խնդիրը։ Որպես այդպի-



սի պարարտանյութ կարելի է օգտագործել այն ածխաթթու գազը, որ հսկայական քանակությամբ արտադրում են արդյունաբերական վառարաններն ու ջերմային էլեկտրակայանները և որը տասնյակ հարյուրավոր անգամ ավելի է խտացված, քան մթնոլորտում։ Ջերմոցային, ինչպես նաև բաց բանջարանոցներում գազային և պինդ ածխաթթու կիրառելու ուղղությամբ կատարած փորձերը դրական արդյունք են տվել և այժմ առաջ է քաշվում գյուղատնտեսության մեջ այն լայնորեն կիրառելու գործնական խնդիրը։

Գյուղատնտեսական տարբեր շրջաններում հանքային պարարտանյութերը ճիշտ օգտագործելու համար վճռական նշանակություն ունեն հողի քիմիական անալիզները, որոնք հնարավորություն են տալիս դատելու սննդարար նյութերի նկատմամբ բույսերի ներկայացրած պահանջների մասին։ Այս տեսակետից նաև մեծ հաջողություններ են ձեռք բերվել շնորհիվ նշակիր ատոմների, քրոմատոգրաֆիայի, սպեկտրոսկոպիայի և հետազոտության այլ ֆիզիկա-քիմիական մեթոդների կիրառման։ Անալիտիկ աշխատանքը շատ ավելի արագ ու հուսալի է դարձել։ Ժամանակակից ապարատները՝ ծրագրված սպեկտրոգրաֆ- քվանտոմետրը, ավտոմատացված ֆոտոմետրը և մյուս ապարատները հնարավորություն են տալիս մի օրում հարյուրավոր անալիզներ կատարել։

Ագրոքիմիական հետազոտությունների նոր մեթոդները զգալի ուղղումներ մտցրին ազոտի և ֆոսֆորի նկատմամբ հողագործության պահանջների վերաբերյալ գիտնականների պատկերացումների մեջ։ Առաջներում կարծում էին, թե ֆոսֆորի պահանջն ավելի մեծ է, քան ազոտինը, իսկ այժմ երկրների մեծ մասում գտնում են, որ ազոտի ընդհանուր պահանջն ավելի մեծ է։

Վերջին ժամանակներս շատ երկրների գիտնականների ջանքերով մշակվում է բուսաբուծության մի նոր սիստեմ, այսպես կոչված՝ «հիդրոպոնիկան», երբ բույսերն աճեցվում են ջերմոցներում հողի փոխարեն կիրառելով կոպիճներ, խիճ կամ խոշորահատիկ ավազ, որը մի քանի անգամ ոռոգում են սննդարար աղերի ջրալուծույթներով (հեղուկ պարարտանյութերով)։ Ընդ որում բույսերի սնուցումը, ինչպես նաև լուսավորության, օդի ջերմաստիճանի ու խոնավության որոշակի ռեժիմի պահպանումը կարելի է մեքենայացնել ու ավտոմատացնել։ Հողագործության այդ եղանակը բանջարեղենի բարձր բերք է տալիս և արագ տարածվում է ՍՍՌՄ-ում և մյուս երկրներում։ Դրա կիրառումը ջերմոցային տնտեսության մեջ, հատկապես հյուսիսում և արդյունաբերական կենտրոնների շրջակայքում, իսկ ապագայում նաև բաց հողի վրա, ուշագրավ հեռանկարներ է բացում։

Քիմիական և կենսաբանական գիտությունների խոր փոխներթափանցումը մեծ արդյունք է տալիս բույսերի և կենդանիների քիմիական պաշտպանության բնագավառում։

Վերջին ժամանակներս ՍՍՌՄ-ում յուրացված է բույսերի պաշտպանության մոտ 20 քիմիական նոր միջոցների, այդ թվում մետաֆոսի, մետիլմերկապտոֆոսի, քլորոֆոսի, պղնձի եռաքլորֆենոլյատի, պոլիքլորպինենի և այլ միջոցների արտադրությունը։ Դրանցից բացի լաբորատորիաներում մշակված շուրջ 40 պրեպարատներ փորձնական ստուգման են ենթարկվում։

Առանձնապես մեծ տնտեսական ու տեխնիկական արդյունք է տալիս մոլախոտերի դեմ հերբիցիդների միջոցով մղվող քիմիական պայքարը։ Վերջին 15—20 տարում մեծ ուշադրություն է նվիրվում ընտրաբար ներգործություն ունեցող հերբիցիդների արագացմանը։ Դրանց կիրառումը 20—30 անգամ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը հացահատիկային տնտեսության մեջ։ Մինչև այժմ սովետական հետազոտողները փորձարկել են շուրջ 300 պրեպարատներ, որոնցից հեռանկարային են մոտ 25-ը։

Ամեն մի նոր առաջարկվող պրեպարատ պետք է բավարարի բուսաբուծության, ագրոտեխնիկայի ու զոոտեխնիկայի բազմազան պահանջները, պետք է անվնաս լինի մարդկանց, կենդանիների ու օգտակար միջատների, օրինակ՝ մեղուների, շերամի որդերի, ինչպես նաև օգտակար բակտերիաների համար։ Այդ իսկ պատճառով նոր պրեպարատները երկարատև ու բարդ փորձարկումներից

հետո են միայն «կյանքի ուղեգիր» ստանում։ Այստեղ, բաղադրությունից բացի, չափազանց մեծ նշանակություն ունի նյութի քիմիական կառուցվածքը և, այսպես կոչված, «ձևը», այսինքն՝ նրա ագրեգատային վիճակն ու ֆիզիկա-քիմիական հատկությունները։

Լաբորատորիաներում ստացված բազմաթիվ տասնյակ հազար պրեպարատներից միայն մի քանի հարյուրն են մուտք գործել աշխարհի գյուղատնտեսության մեջ։

Վերջին տարիներս պարզվել է, որ շատ պրեպարատներ պետք է փոխարինել մի ուրիշով 5—7 տարի հետո, քանի որ վնասատու միջատները, տիզերն ու կրծողները աստիճանաբար «ընտելանում են» այդ պրեպարատներին և «խարսխվելով» վերջիններս այլևս չեն ազդում կամ թույլ են ազդում վնասատուների հետագա սերունդների վրա։ Ուստի հարկ է լինում անընդհատ հետազոտական աշխատանք կատարել։

Մինչև վերջին ժամանակներս նոր պրեպարատների որոնումները մեծ մասամբ կատարվում էին էմպիրիկ ձևով, «խարխափելով», ըստ անալոգիայի։ Գիտնականները չունեին այնպիսի բավականաչափ հուսալի տեսություններ, որոնք ցույց տային, թե ինչ կախում գոյություն ունի պրեպարատների բաղադրության, կառուցվածքի և բիոլոգիական ակտիվության միջև։ Կենսաբանները, քիմիկոսները և ֆիզիկոսները միայն վերջերս են սկսել համատեղ հետազոտություններ կատարել այդ ուղղությամբ և ստացել են առաջին արդյունքները։

Գիտական աշխատողների առջև այժմ ծառացած են առաջին հայացքից հակասական մի քանի խնդիրներ։ Մի կողմից՝ հարկավոր է ստեղծել բույսերի քիմիական պաշտպանության ըստ հնարավորին ավելի ունիվերսալ միջոցներ, մյուս կողմից՝ գտնել այնպիսի միջոցներ, որոնք ընտրարար ներգործություն ունեն վնասատու միջատների ու բույսերի հիվանդությունների որոշ տեսակների վրա։

Բույսերի վնասատու բազմազան միջատների թիվը հսկայական է։ ՍՍՌՄ-ում դրանց միայն հիմնական տեսակները մի քանի հարյուրի են հասնում։ Դրանցից շատերը այնքան արագ են բազմանում, որ մեկ սեզոնի ընթացքում կարող են մինչև 15—20 սերունդ տալ։ Կոլորադյան բզեզն ընդունակ է ամառվա ընթացքում տասնյակ միլիոնի միջատներ տալ, որոնք կարող են փչացնել կարտոֆիլի մոտ 100 հազար թուփ։

Գյուղատնտեսությանը հսկայական վնաս են պատճառում նաև վնասատու կենդանիները։ Հաշված է, որ մեկ առնետը մի տարվա ընթացքում մոտ 20 կիլոգրամ հացահատիկ է ուտում։ Բացի դրանից, կրծողները կարող են կենդանիների ու մարդու ծանր վարակիչ հիվանդությունների, օրինակ՝ ժանտախտի, տուլյարեմիայի տարածողներ լինել։ Ուստի առանձնապես կարևոր է գտնել արագ ներգործող ու մեծ արդյունք տվող ըստ հնարավորին ավելի մասսայական միջոցներ։ Դեռ մոտ ժամանակներս ամենից ավելի շատ կիրառվում էին դուստերը՝ բույսերը փոշոտելու համար, ինչպես նաև լուծույթներն ու էմուլսիաները՝ սրսկելու համար։ Վերջերս ավելի լայնորեն են կիրառվում օդամոխիրը (ծուխը և մառախուղը) և թացացնող փոշիները, որոնք հեշտությամբ են ջրային սուսպենզիաներ առաջացնում։

Արագ տարածվում է բույսերի պաշտպանության մեթոդը ներբուսական կամ սիստեմային ինսեկտոֆունգիցիդներով։ Այս նյութերը, որոնց թվին են պատկանում մի շարք ֆոսֆորա-օրգանական միացություններ, ընդունակ են շարժվելու բույսերի անոթային համակարգի միջով, որի շնորհիվ էլ բույսերը ձեռք են բերում դիմացկունություն հիվանդությունների նկատմամբ, սպանում կամ վախեցնում են վնասատու միջատներին և չեն վնասում օգտակարներին։

Այստեղ ևս գյուղատնտեսական նոր թույներ փորձարկելիս և դրանք գործնականում արմատավորելիս մեծ ուշադրություն է դարձվում այն բանին, որ դրանք անվնաս լինեն մարդու, գյուղատնտեսական կենդանիների, օգտակար թռչունների ու միջատների համար, որպեսզի չխախտվի բիոցենոզը։



Հասկանալի է, որ պտուղների ու բանջարեղենի վրա թույների հետք անգամ չի կարելի թողնել։ Այս ամենը դժվարացնում են նոր պրեպարատներ գտնելը, քանի որ այդ պահանջները խիստ պահպանվում են։

Քիմիկոսները, ֆիզիոլոգները և բիոքիմիկոսները զգալի հաջողություններ են ձեռք բերել բույսերի աճն ու պտղաբերությունը կարգավորող քիմիական նոր միջոցներ սինթեզելու ու կիրառելու ասպարեզում։ Վերջին տարիներս ֆերմենտներից, վիտամիններից, հորմոններից և կենսագործունեությունը կարգավորող բնական այլ նյութերից բացի գնալով ավելի լայնորեն են կիրառվում զանազան օրգանական և էլեմենտա-օրգանական սինթետիկ պրեպարատները, ինչպես նաև ֆիզիոլոգիական ակտիվություն ունեցող միկրոէլեմենտների միացությունները։ Դրանց շարքին պետք է դասել նաև այն նյութերը, որոնց մեծ դոզաները կասեցնում են բույսերի զարգացումը և սպանում նրանց, իսկ փոքր դոզաները արագացնում են նրանց աճը։

Քիմիական խթանիչների միջոցով աճն ու պտղաբերությունը կարգավորելը կիրառվում է պոմիդորի, խնձորի, տանձի և մի քանի այլ կուլտուրաների անսերմ պտուղներ ստանալու համար։ Այժմ մշակվում են միջոցներ ծառերի ու թփերի արագ արմատակալման, բների ու ճյուղերի վրա առաջացած վերքերը բուժելու, պտղաթափման ու այլ նման երևույթների դեմ պայքարելու համար։ Ընդլայնվում է այնպիսի պրեպարատների կիրառումը, որոնք կասեցնում են ծառերի բողբոջումն ու ծաղկումը ցուրտ գարնանը, կարտոֆիլի ծլումը պահեստներում պահելիս, հեռացնում են պտղատու ծառերի, բամբակենու և այլ գյուղատնտեսական բույսերի անպետք շիվերը (այսպես կոչված «քիմիական ծերատում»)։

Արդի բուսաբուծության մեջ օգտագործվում են դեֆոլիանտներ՝ բամբակենին բերքահավաքից առաջ տերևազրկելու միջոցներ, և դեսիկանտներ՝ այնպիսի նյութեր, որոնք նպաստում են կարտոֆիլի, պոմիդորի և մյուս բույսերի ցողունների, տերևների ու փրերի չորացմանը մեքենայական բերքահավաքը հեշտացնելու համար։

Նախատեսված է 1965 թվականին բամբակի գրեթե ամբողջ բերքը ՍՍՌՄ-ում հավաքել մեքենաներով՝ դեֆոլիանտների օգնությամբ, որը հսկայական թվով մարդկանց կազատի ֆիզիկական սեզոնային ծանր աշխատանքից։ Դեսիկանտների արտադրության ընդարձակման հետ զուգընթաց դրանք կկիրառվեն շաքարի ճակնդեղի, երեքնուկի, լյուպինի, առվույտի, և այլ հատիկալոբազգի կուլտուրաների սերմնացանքերում, ինչպես նաև կարտոֆիլի փրերը բերքահավաքից առաջ հեռացնելու համար։

Վերջապես, ծավալվում է այն միջոցների կիրառումը, որոնք նպաստում են բերքահավաքից հետո, պահելու ժամանակ, մրգերի ու բանջարեղենի արագ հասունացմանը։

Քիմիական բիոակտիվ պրեպարատների մյուս տիպին են պատկանում, այսպես կոչված, մուտագեն նյութերը, որոնք սուր փոփոխություններ են առաջացնում օրգանիզմների բջջակորիզներում։ Այդ նյութերը կարող են կիրառվել միկրոօրգանիզմների, բույսերի ու կենդանիների սելեկցիայի համար։ Այժմ շարունակվում է քիմիական մուտագենեզի հետագա խոր ուսումնասիրությունը։

Արագ ծավալվում է քիմիայի կիրառումը անասնաբուծության մեջ, որտեղ օգտագործվում են կերային, կոնսերվացնող, սանիտարական և կենսական պրոցեսները կարգավորող միջոցներ։ Անասնաբուծության քիմիացումը տնտեսապես խիստ շահավետ է և արժանի հատուկ ուշադրության։ Քիմիական նյութերը վաղուց ի վեր կարևոր դեր են խաղում անասնաբուծության ասպարեզում կիրառվող պրոֆիլակտիկ ու բուժիչ միջոցառումներում։

Երբ հողագործության էքստենսիվ սիստեմից անցում է կատարվում բարձր-արտադրողական սիստեմին, երբ ավելանում են եգիպտացորենի, հացահատիկի, լոբազգիների, սիսեռի, սոյայի, կերի ճակնդեղի և մյուս կուլտուրաների ցանքերը, այդ ժամանակ անասնաբուծությունն ավելի բարձր պահանջներ է առաջադրում անասնակերը սննդարար նյութերով հարստաց-

նելու և երկարատև պահելիս այն կոնսերվացնելու քիմիական միջոցների նկատմամբ:

Խոնավ անասնակերը (հատիկը, խոտը) քիմիական կոնսերվացման ենթարկելիս կորուստները զգալիորեն նվազում են, որի հետևանքով էլ սննդարար նյութերի պարունակությունը նրա մեջ ավելանում է 40—50 տոկոսով: Օրինակ, երբ անասնակերը մի քիչ թթվեցնում են ծծմբաթթվային աղերով և այլ պրեպարատներով, գրեթե վերանում են սննդարար նյութերի և ամենակարևոր վիտամինի՝ կարոտինի կորուստները:

Վերջին տարիներս անընդհատ ավելանում է անասնաբուծության ու անասնաբուժության մեջ կիրառվող քիմիական էլեմենտների ու միացությունների թիվը: Քիմիական սինթեզի և ֆիզիկո-քիմիական անալիզի բացառիկ հաջողություններն ու աննախընթաց թափը անասնաբուծության առջև բացում են նորանոր մեծ ու հրապուրիչ հեռանկարներ:

Սովետական գիտնականների աշխատանքների շնորհիվ անասնաբուծության քիմիացման բնագավառում զարգանում են մի ամբողջ շարք օրիգինալ ուղղություններ:

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի Վ. Ի. Վեռնադսկու անվան գեոքիմիական և անալիտիկ քիմիայի ինստիտուտում արդեն շատ տարիներ է, ինչ ակադեմիկոս Ա. Պ. Վինոգրադովի և Վ. Վ. Կովալսկու ղեկավարությամբ կատարվում են Սովետական Միության բիոգեոքիմիական շրջանացման աշխատանքները: Ինստիտուտը կազմում է քարտեզներ, որոնք բնորոշում են կարևոր մակրո և միկրոէլեմենտների պարունակությունը առանձին շրջանների հողի մեջ, և հանձնարարություններ են տալիս դրա հետ կապված տեղաճարակային հիվանդությունները կանխելու ու պարզելու ուղղությամբ: Կենդանիների սննդի մեջ միկրոէլեմենտների կիրառման ուսումնասիրությունն ու փորձերը համեմատաբար լայնորեն կազմակերպված են Սովետական Միության շատ ռեսպուբլիկաներում:

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի բնական միացությունների քիմիայի ինստիտուտում կոմպլեքսային գիտա-հետազոտական աշխատանքներ են սկսված այնպիսի նյութեր գտնելու համար, որոնք հնարավորություն տային մեծապես ինտենսիվացնելու կենդանիների, հատկապես, մատղաշ կենդանիների բտման պրոցեսները: Ինստիտուտի աշխատակիցները ուսումնասիրում են բնական, այսպես կոչված, ճարպահալաք այն նյութերի քիմիական ու կենսաբանական հատկությունները, որոնք կարգավորում են օրգանիզմների ճարպափոխանակությունը: Ինստիտուտում սինթեզվում և ուսումնասիրվում են նոր ստերոիդ նյութեր, որոնք ընդունակ են խթանել սպիտակուցի գոյացումը օրգանիզմի մեջ, և էստրոգեն հորմոնները: Այդ նյութերն արդեն կիրառվում են թռչունների ձվատվությունը բարձրացնելու, ինչպես նաև մատղաշ անասուններին արագ աճեցնելու, ստերջությունն իջեցնելու համար:

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտում հետազոտվում են մեծ արդյունք տվող քիմիական մուտագեններ:

Անասնաբուծությանը մեծ վնաս են հասցնում կենդանիների աղիքային պարազիտները՝ հելմինտները: Լատվիական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի օրգանական սինթեզի ինստիտուտը մշակել է ամիակից և մոնոամինոէթանոլից պիպերազին ստանալու խնայողական եղանակ, իսկ այդ էֆեկտիվ միջոց է հելմինտների դեմ: Ակադեմիկոս Կ. Ի. Սկրյաբինի ղեկավարությամբ կատարված հետազոտությունների տվյալներով խոզաբուծության մեջ պիպերազինի կիրառումը մթերատվությունը բարձրացնում է 30 տոկոսով, որը ՍՍՌՄ մասշտաբով կտա մոտավորապես մեկ միլիոն տոննա խոզի միս:

Անասնաբուծության քիմիացման կարևորագույն պրոբլեմն է կենդանիների սննդի համար պրոտեինի՝ կերային սպիտակուցի աղբյուրներ գտնելը: Այս խնդիրը նոր ձևով է ծառացել այն բանից հետո, երբ հայտնագործվեց որոճող կենդանիների՝ մարմնակառուցման համար ազոտ պարունակող ոչ-սպիտակուցային նյութերի (կարբամիդը—սինթետիկ միզանյութը, ամոնիումի աղերը և այլն) օգտագործելու ընդունակությունը: Բիոքիմիկոսների հետազո-



տությունները ցույց տվեցին, որ ազոտ պարունակող ոչ-սպիտակուցային նյութերը կարող են ապահովել որոճող կենդանիների սպիտակուցի պահանջմունքի 25—30 տոկոսը: ՍՍՌՄ-ում խիստ ավելանում է անասնաբուծության համար այդպիսի նյութերի արտադրությունը:

Քիմիայի կիրառումը հետաքրքրական արդյունքներ է տալիս ձկնաբուծության մեջ: Վերջին տարիներս հաջող փորձեր են կատարվել լճերում, լճակներում և նույնիսկ ծովածոցերում պլանկտոնը զարգացնելու համար պարարտանյութեր օգտագործելու ուղղությամբ: Պլանկտոնը ձկների սննդի կարևորագույն աղբյուրն է և նրա առատությունը նպաստում է ձկնատնտեսության մթերատվության բարձրացմանը:

Այստեղ տեղին է շոշափել այն հարցը, որ ոչ-քիմիկոսները հաճախ տալիս են քիմիկոսներին, թե արդյոք հեռավոր ապագայում քիմիական կերային միջոցները կփոխարինե՞ն բնական միջոցներին:

Ինձ թվում է, որ XX դարում և, հավանաբար XXI դարում այդ խնդիրը սուր և տնտեսապես կարևոր չի լինի: Արդի գիտությունն արդեն ոտք է դրել բնական կերը քիմիական բարձր-սննդարար և համեղ նյութերով հարստացնելու ուղին. կարելի է կանխատեսել, որ աստիճանաբար կավելանա այդ նյութերի բաժինը և նրանց արժեքը: Սակայն միայն հեռավոր ապագայում գիտության զարգացումը կհասցնի այնտեղ, որ սինթետիկ կերը կկարողանա մրցել բնականի հետ:

Որքան ավելի խորն է քիմիան ներթափանցում գյուղատնտեսության բնագավառը, այնքան ավելի հստակ է դրսևորվում նրա հսկայական, վերափոխիչ դերը արտադրության այդ հնագույն, կարևորագույն և ամենախաղաղ ճյուղի զարգացման մեջ:

Կ. Ա. Տիմիրյազևը սիրում էր կրկնել Սվիֆտի այն խոսքերը, որ հարկավոր է երկու հասկ աճեցնել այնտեղ, որտեղ մեկն է աճում: Այդ բանն արդեն իրականացված է առաջավոր տնտեսությունների դաշտերում, և այժմ գիտությունը լուծում է մեկ-երկու հասկի փոխարեն աշխատանքի միջոցների ավելի քիչ ծախսումներով աճեցնել չորս-հինգ և ավելի հասկեր: Նման խնդիրներ են ծառացած բուսաբուծության և անասնաբուծության բոլոր ճյուղերի առջև: Դրանք Սովետական Միության մեջ առաջ են քաշված որպես կարևորագույն համաժողովրդական խնդիրներ: Դրանց լուծման ասպարեզում հսկայական դեր ունի կատարելու գյուղատնտեսության քիմիացումը:

Քիմիայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի և տեխնիկայի նվաճումները նպաստում են այն բանին, որ կենսաբանության մեջ արմատավորվեն ստույգ, քանակական հետազոտության մեթոդներ, և գյուղատնտեսությունը մոտենա ինդուստրիալ արտադրությանը, ինչի մասին երազում էր դեռ Դ. Ի. Մենդելեևը, այն անվանելով գյուղատնտեսական արդյունաբերություն:

Մոտենում է այն ժամանակը, երբ գիտության նվաճումները և սոցիալիստական վերափոխությունները ամբողջ աշխարհում օրակարգից կհանեն սննդամթերքների հումքի ու էներգիայի պակասության հարցը, մի հարց, որը դարեր շարունակ տանջել է աշխատավորներին: Գիտության և տեխնիկայի այդ հուժկու, հարաճուն հարձակման մեջ քիմիան ունի մեծ և ստեղծարար դեր:

«Наука и человечество», 1963 г.



Վ. ԲԱՂԴԱԳՈՒԼՅԱՆ

# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

ՍՄԿՊ Ծրագրում նշված է, թե ինչպիսի վիթխարի նշանակություն ունի աշխատավորների նյութական շահագրգռվածությունը արտադրության կատարելագործման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի ավելացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի ապահովման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում: «Պարտիան,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— ելնում է լենինյան այն դրույթից, որ կոմունիզմի կառուցումը պետք է հենվի նյութական շահագրգռվածության սկզբունքի վրա»: Լենինյան այս դրույթի ճշմարտությունն ապացուցվել և հաստատվել է սովետական իշխանության տարիներին և հատկապես վերջին տասնամյակում՝ մեր էկոնոմիկայի զարգացման խոշորագույն նվաճումներով:

Արտադրության պրոցեսում աշխատավորի նյութական շահագրգռվածությունն աշխատանքի արդյունքի նկատմամբ ունի որոշիչ նշանակություն: Այն հիմնականում պայմանավորում է արտադրողի վերաբերմունքը արտադրության հանդեպ: Աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքը բխում է սոցիալիստական արտադրաեղանակի, ըստ յուրաքանչյուրի աշխատանքի քանակական և որակական ցուցանիշների նյութական բարիքների բաշխման՝ սոցիալիզմի տնտեսական օրենքի էությունից:

Կապիտալիստական արտադրաեղանակին հատուկ է նրա էությունից բխող մի այլ սկզբունք՝ տնտեսական, նյութական հարկադրանքի սկզբունքը: Կապիտալի աշխարհում աշխատավորը զրկված լինելով արտադրամիջոցներից, կապիտալիստական ձեռնարկությունում աշխատում է ոչ թե իր շահագրգռվածության հետևանքով, այլ սոսկ իրեն և իր ընտանիքին սովի ու թշվառության չմատնելու համար: Այստեղ բանվորին իր աշխատանքի արդյունքը հետաքրքրում է այնքանով միայն, որքանով նա վարձատրվում է դրա համար: Վաճառելով կապիտալիստին իր աշխատուժը, նա դադարում է ինչպես իր աշխատուժին, այնպես էլ իր աշխատանքի արդյունքը տնօրինելուց: Մասնավոր սեփականության վրա խարսխված կապիտալիստական արտադրությունն աշխատավոր մարդուց խլում է աշխատանքի հաճույքը:

Սոցիալիզմի պայմաններում աշխատավորներն արտադրության նկատմամբ ունեն միանգամայն այլ վերաբերմունք: Այստեղ աշխատանքի արդյունքի նկատմամբ նյութական շահագրգռվածությունը և այդ արդյունքի հասարակական նշանակության գիտակցումը հանդես են գալիս միասնաբար: Սոցիա-



լիստական հասարակարգում յուրաքանչյուր աշխատավորի՝ ավելի շատ արտադրանք տալու ձգտումը պայմանավորված է ոչ միայն բարձր վարձատրություն ստանալու նկատառումով, այլև հասարակության հանդեպ իր պարտքի գիտակցմամբ:

Աշխատավորների նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը ունի խոշոր տեսական ու պրակտիկ նշանակություն և նրա ճիշտ ու հետևողական կիրառումը լուրջ պայման է աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, ամբողջ ժողովրդական տնտեսության վերելքի ապահովման համար:

Նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը սոցիալիստական արտադրահարաբերությունների որոշ կողմերի մի կարևոր ընդհանրություն է, որն ընդգրկում է արտադրանքի հանդեպ արտադրողի վերաբերմունքը պայմանավորող այնպիսի նախադրյալներ, ինչպիսիք են անհատական և հասարակական շահերի, նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգորդումը, դրանց փոխադարձ պայմանավորվածությունն ու կախվածությունն արտադրության բնույթից, նրա զարգացման աստիճանից և այլն: Հետևաբար, նյութական շահագրգռվածության սկզբունքի տակ հասկանալ սոսկ աշխատավորին նյութապես խրախուսելու, շահագրգռելու անհրաժեշտությունը, նշանակում է փոքրացնել, աղքատացնել լենինյան այդ սկզբունքի նշանակությունը:

Անհատի և հասարակության նյութական շահերի զուգակցումը նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքի կարևոր կողմերից մեկն է, որի ճիշտ կենսագործումը հզոր ազդակ է սոցիալիստական արտադրության հետագա զարգացման գործում: Անհատի և հասարակության շահերի միասնությունը բխում է սոցիալիզմի էությունից: Արտադրամիջոցների մասնավոր սեփականության, մարդու կողմից մարդու շահագործման վերացումը, համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հիման վրա երկրի ամբողջ էկոնոմիկայի վերակառուցումն ու զարգացումը, աշխատավոր մասսաների կենսական պայմանների բարելավումը ռեալ հող ստեղծեցին անհատի և հասարակության նյութական շահերի մերձեցման համար: Իհարկե, առայժմ չի կարելի շահերի այդ միասնության մեջ անտեսել որոշ տարբերության առկայությունը, սակայն վստահորեն պետք է ասել, որ զարգացումը տանում է դեպի անձնական և հասարակական շահերի լրիվ ու վերջնական միաձուլում: Արդեն այժմ էլ սովետական մարդիկ կոմունիստաբար են ընկալում մեր հասարակական զարգացումը, սոցիալ-քաղաքական կյանքի և տնտեսական փոխհարաբերությունների էությունը:

Կոմունիստական շինարարության հետագա հզոր ծավալմանը զուգընթաց, սովետական մարդիկ առավել ևս կշահագրգռվեն հասարակական հարստության բազմապատկմամբ, խոր գիտակցելով, որ անձնական բարեկեցությունը, անձնական նյութական ապահովվածությունը հասարակության բարօրության արգասիքն է, բոլորի կողմից բոլորի համար ստեղծվող նյութական բարիքների արտադրության բարձր մակարդակի արտահայտությունը: Սակայն սովետական մարդկանց նյութական պահանջմունքների բավարարման հիմնական միջոցը հանդիսանում է աշխատավարձը, որը, ինչպես նշեց ՍՄԿՊ XXII համագումարը, «առաջիկա քսանամյակի ընթացքում կմնա աշխատավորների նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման հիմնական աղբյուրը»: Հետևաբար արտադրողական ուժերի զարգացման ժամանակակից

մակարդակի պայմաններում սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամի անձնական նյութական շահագրգռվածությունը այնքան օրինաչափ և ակնհայտ է դրսևորվում, որ նրա խախտումը (ինչպես դա եղել է անցյալում) կբերի անցանկալի հետևանքների, որոնք բոլորովին էլ չեն նպաստի կոմունիզմի ծավալուն շինարարությանը։

«Կոլտնտեսությունների նկատմամբ պարտիայի քաղաքականությունը,— գրված է պարտիայի Ծրագրում,— հիմնվում է համաժողովրդական շահերը կոլտնտեսությունների և կոլտնտեսականների՝ իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ նյութական շահագրգռվածության հետ զուգորդելու վրա։ Պետությունը կնպաստի կոլտնտեսային կարգի արտադրողական ուժերի աճին, բոլոր կոլտնտեսությունների տնտեսական վերելքին. միևնույն ժամանակ պետք է աճի նաև կոլտնտեսային գյուղացիության ավանդը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 503)։ Եվ իսկապես, համապետական շահերի և կոլտնտեսությունների, ինչպես նաև յուրաքանչյուր աշխատավորի նյութական շահերը ամեն կերպ զուգորդելու քաղաքականությունը, որը տարվում է կոմունիստական պարտիայի կողմից, մեծապես նպաստում է անձնական նյութական շահագրգռվածության վերաճմանը համապետական, հասարակական շահագրգռվածության։ Անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգորդմամբ աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացումը, որպես սոցիալիստական տնտեսվարության կարևոր պայման, իր հերթին մեծ չափով նպաստում է նյութական բարիքների առատության ստեղծմանը, ուստի և կոմունիզմի հաղթանակին։

Անձնական նյութական շահագրգռվածության մյուս կարևոր կողմը, ինչպես նշվեց վերը, դա բարոյական և նյութական ազդակների ճիշտ զուգորդումն է։ Ի հակադրություն կապիտալիստական աշխարհի, որտեղ աշխատավոր մարդու աշխատանքի միակ շարժառիթը իր նյութական պահանջմունքների բավարարման ձգտումն է, որտեղ նյութական-դրամական հարաբերություններն իրենցով մթագնում են ամեն ինչ, մեր երկրում, սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, նյութական խթանների հետ մեկտեղ հսկայական նշանակություն ունի բարոյական գործոնը, աշխատավորների բարոյական շահագրգռվածությունը, որը և բնութագրում է մարդու միանգամայն նոր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Բուրժուական գաղափարախոսները, քաղաքական գործիչները, ժուռնալիստները և ուրիշներ երբեմն իրենց զարմանքն են հայտնում սովետական մարդկանց անձնուրաց ու անշահախնդիր աշխատանքի առթիվ։ Նրանք զարմանում են, թե ինչպես կարող է մարդը առանց հարկադրանքի, առանց նյութական շահի, կամավոր կերպով թողնել բարձր վարձատրությամբ իր աշխատանքը և անցնել ետ մնացող օղակը՝ ցածր աշխատավարձով։ Նրանց զարմացնում է Վ. Գագանովայի և նրա ավելի քան 50 հազար հետևորդների նման վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։

Սովետական մարդկանց համար հատկանշական է կոլեկտիվի, հասարակության հանդեպ սեփական պարտքի գիտակցումը։ Մեր երկրում աշխատանքը հանդիսանում է ոչ միայն նյութական բարիքների ստեղծման, այլև ուրախության ու երջանկության աղբյուր։ Մեզ մոտ մարդու հասարակական դիրքը որոշվում է նախ և առաջ նրա հանրօգուտ աշխատանքով։ Արտադրության հազարավոր նորարարներ, գյուղատնտեսության առաջավորներ մեր երկրում



ստացել են համաժողովրդական ճանաչում։ Այդպիսիներից են էջմիածնի արտադրական վարչության պարտիայի XXII համագումարի անվան կոլտնտեսության նախագահ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ռեսպուբլիկայի վաստակավոր զոոտեխնիկ Արտաշես Մեժլումյանը, նույն կոլտնտեսության կթվորուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Աշխեն Ավետիսյանը, Ներքին Ջարբախի Լենինի անվան կոլտնտեսության նախագահ Սուրեն Մովսիսյանը, Գորիսի արտադրական վարչության Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության հովիվ, ՀՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Գրիշա Արզանյանը, Տեղ գյուղի «Սովետական բանակ» կոլտնտեսության նախագահ, ՀՍՍՌ Գերագույն սովետի նախագահության անդամ Լենո Ջհանգիրյանը, Շամշադինի արտադրական վարչության Նորաշեն գյուղի կոլտնտեսության երիտասարդ եգիպտացորենագործների օղակավար Գրիշա Գալինյանը, Հոկտեմբերյանի արտադրական վարչության Հայկավան գյուղի կոլտնտեսության կոմերիտական մեխանիզատորներ Ժորա Հովսեփյանը, Յուրիկ Գևորգյանը և շատ ու շատ ուրիշները, որոնց հերոսական աշխատանքն արդեն հիմա ստանում է կոմունիստական աշխատանքի բնույթ։

Սոցիալիստական արտադրության մեջ մեծ է հասարակական-բարոյական ազդակների դերը, որոնք մասսաների աշխատանքային սխրագործության հիմքն են։ Կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման հետ մեկտեղ աշխատանքի բարոյական խթանները կդառնան առավել որոշիչ, առավել հիմնական, իսկ աշխատանքի պրոցեսը, փոխելով իր բնույթը, կվերածվի մարդու հոգեկան պահանջմունքների բավարարման պրոցեսի։ Աշխատանքը նյութական պահանջմունքների բավարարման միջոցից կդառնա ինքնին պահանջմունք, իսկ աշխատանքի պրոցեսը՝ նրա բավարարումը։

Սակայն զարգացման ժամանակակից էտապում, արտադրողական ուժերի այժմյան մակարդակի պայմաններում, երբ աշխատանքը նախ և առաջ հանդիսանում է մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման աղբյուր, իսկ աշխատանքի դիմաց նյութական վարձահատուցումը հիմնականում բնորոշում է աշխատավորի վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, նյութական և բարոյական ազդակների զուգորդումը բավականին մեծ նշանակություն է ստանում։

Նյութական և բարոյական ազդակների զուգորդումը նյութական շահագրգռվածության սկզբունքի կենսագործման անհրաժեշտ պայմանն է, որը զգալիորեն նպաստում է ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրության զարգացմանը, այնպես էլ աշխատավորների բարձր գիտակցության մշակմանը։ Պարտիայի XXII համագումարում իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգորդում՝ ահա մեր կուրսը, մեր գիծը կոմունիզմի կառուցման ամբողջ ժամանակաշրջանի համար»։

Հայտնի է, որ անհատի պաշտամունքի տարիներին անձնական նյութական շահագրգռվածության անտեսումը և միայն հուսադրումը էնտուզիազմի վրա, լուրջ կերպով արգելակել են ժողովրդական տնտեսության և հատկապես գյուղատնտեսության արագ զարգացմանը։ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պատմական պլենումից (1953 թ.) հետո ընկած ժամանակաշրջանում պարտիան շտկեց դրությունը՝ վճռականորեն պահանջելով ամեն կերպ ընդլայնել և զարգացնել աշխատանքի բարոյական խթանները, հետևողականորեն և մին-

մակարդակի պայմաններում սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամի անձնական նյութական շահագրգռվածությունը այնքան օրինաչափ և ակնհայտ է դրսևորվում, որ նրա խախտումը (ինչպես դա եղել է անցյալում) կբերի անցանկալի հետևանքների, որոնք բոլորովին էլ չեն նպաստի կոմունիզմի ծավալուն շինարարությանը։

«Կոլտնտեսությունների նկատմամբ պարտիայի քաղաքականությունը,— գրված է պարտիայի Ծրագրում,— հիմնվում է համաժողովրդական շահերը կոլտնտեսությունների և կոլտնտեսականների՝ իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ նյութական շահագրգռվածության հետ զուգորդելու վրա։ Պետությունը կնպաստի կոլտնտեսային կարգի արտադրողական ուժերի աճին, բոլոր կոլտնտեսությունների տնտեսական վերելքին. միևնույն ժամանակ պետք է աճի նաև կոլտնտեսային գյուղացիության ավանդը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 503)։ Եվ իսկապես, համապետական շահերի և կոլտնտեսությունների, ինչպես նաև յուրաքանչյուր աշխատավորի նյութական շահերը ամեն կերպ զուգորդելու քաղաքականությունը, որը տարվում է կոմունիստական պարտիայի կողմից, մեծապես նպաստում է անձնական նյութական շահագրգռվածության վերաճմանը համապետական, հասարակական շահագրգռվածության։ Անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգորդմամբ աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացումը, որպես սոցիալիստական տնտեսվարության կարևոր պայման, իր հերթին մեծ չափով նպաստում է նյութական բարիքների առատության ստեղծմանը, ուստի և կոմունիզմի հաղթանակին։

Անձնական նյութական շահագրգռվածության մյուս կարևոր կողմը, ինչպես նշվեց վերը, դա բարոյական և նյութական ազդակների ճիշտ զուգորդումն է։ Ի հակադրություն կապիտալիստական աշխարհի, որտեղ աշխատավոր մարդու աշխատանքի միակ շարժառիթը իր նյութական պահանջմունքների բավարարման ձգտումն է, որտեղ նյութական-դրամական հարաբերություններն իրենցով մթագնում են ամեն ինչ, մեր երկրում, սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, նյութական խթանների հետ մեկտեղ հսկայական նշանակություն ունի բարոյական գործոնը, աշխատավորների բարոյական շահագրգռվածությունը, որը և բնութագրում է մարդու միանգամայն նոր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Բուրժուական գաղափարախոսները, քաղաքական գործիչները, ժուռնալիստները և ուրիշներ երբեմն իրենց զարմանքն են հայտնում սովետական մարդկանց անձնուրաց ու անշահախնդիր աշխատանքի առթիվ։ Նրանք զարմանում են, թե ինչպես կարող է մարդը առանց հարկադրանքի, առանց նյութական շահի, կամավոր կերպով թողնել բարձր վարձատրությամբ իր աշխատանքը և անցնել ետ մնացող օղակը՝ ցածր աշխատավարձով։ Նրանց զարմացնում է Վ. Գագանովայի և նրա ավելի քան 50 հազար հետևորդների նման վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։

Սովետական մարդկանց համար հատկանշական է կոլեկտիվի, հասարակության հանդեպ սեփական պարտքի գիտակցումը։ Մեր երկրում աշխատանքը հանդիսանում է ոչ միայն նյութական բարիքների ստեղծման, այլև ուրախության ու երջանկության աղբյուր։ Մեզ մոտ մարդու հասարակական դիրքը որոշվում է նախ և առաջ նրա հանրօգուտ աշխատանքով։ Արտադրության հառաջավոր նորարարներ, գյուղատնտեսության առաջավորներ մեր երկրում



ստացել են համաժողովրդական ճանաչում։ Այդպիսիներից են Էջմիածնի արտադրական վարչության պարտիայի XXII համագումարի անվան կոլտնտեսության նախագահ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ռեսպուբլիկայի վաստակավոր զոոտեխնիկ Արտաշես Մեժլումյանը, նույն կոլտնտեսության կթվորուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Աշխեն Ավետիսյանը, Ներքին Չարբախի Լենինի անվան կոլտնտեսության նախագահ Սուրեն Մովսիսյանը, Գորիսի արտադրական վարչության Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության հովիվ, ՀՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Գրիշա Արզանյանը, Տեղ գյուղի «Սովետական բանակ» կոլտնտեսության նախագահ, ՀՍՍՌ Գերագույն սովետի նախագահության անդամ Լենո Ջհանգիրյանը, Շամշադինի արտադրական վարչության Նորաշեն գյուղի կոլտնտեսության երիտասարդ եգիպտացորենագործների օղակավար Գրիշա Գալինյանը, Հոկտեմբերյանի արտադրական վարչության Հայկավան գյուղի կոլտնտեսության կոմերիտական մեխանիզատորներ Ժորա Հովսեփյանը, Յուրիկ Գևորգյանը և շատ ու շատ ուրիշները, որոնց հերոսական աշխատանքն արդեն հիմա ստանում է կոմունիստական աշխատանքի բնույթ։

Սոցիալիստական արտադրության մեջ մեծ է հասարակական-բարոյական ազդակների դերը, որոնք մասսաների աշխատանքային սխրագործության հիմքն են։ Կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման հետ մեկտեղ աշխատանքի բարոյական խթանները կդառնան առավել որոշիչ, առավել հիմնական, իսկ աշխատանքի պրոցեսը, փոխելով իր բնույթը, կվերածվի մարդու հոգեկան պահանջմունքների բավարարման պրոցեսի։ Աշխատանքը նյութական պահանջմունքների բավարարման միջոցից կդառնա ինքնին պահանջմունք, իսկ աշխատանքի պրոցեսը՝ նրա բավարարումը։

Սակայն զարգացման ժամանակակից էտապում, արտադրողական ուժերի այժմյան մակարդակի պայմաններում, երբ աշխատանքը նախ և առաջ հանդիսանում է մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման աղբյուր, իսկ աշխատանքի դիմաց նյութական վարձահատուցումը հիմնականում բնորոշում է աշխատավորի վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, նյութական և բարոյական ազդակների զուգորդումը բավականին մեծ նշանակություն է ստանում։

Նյութական և բարոյական ազդակների զուգորդումը նյութական շահագրգռվածության սկզբունքի կենսագործման անհրաժեշտ պայմանն է, որը զգալիորեն նպաստում է ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրության զարգացմանը, այնպես էլ աշխատավորների բարձր գիտակցության մշակմանը։ Պարտիայի XXII համագումարում իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգորդում՝ ահա մեր կուրսը, մեր գիծը կոմունիզմի կառուցման ամբողջ ժամանակաշրջանի համար»։

Հայտնի է, որ անհատի պաշտամունքի տարիներին անձնական նյութական շահագրգռվածության անտեսումը և միայն հուսադրումը էնտուզիազմի վրա, լուրջ կերպով արգելակել են ժողովրդական տնտեսության և հատկապես գյուղատնտեսության արագ զարգացմանը։ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պատմական պլենումից (1953 թ.) հետո ընկած ժամանակաշրջանում պարտիան շտկեց դրությունը՝ վճռականորեն պահանջելով ամեն կերպ ընդլայնել և զարգացնել աշխատանքի բարոյական խթանները, հետևողականորեն և մին-

չէ վերջ կենսագործել նյութական շահագրգռվածության սկզբունքը, սերտ կերպով զուգակցելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման այդ կարևորագույն լծակները։

Բարոյական և նյութական խթանների զուգորդման անհրաժեշտությունը կոլտնտեսային արտադրության մեջ, ինչպես և ընդհանրապես, բխում է սոցիալիզմի տնտեսական օրենքներից։ Ի դեպ, բարոյական խթանների դերի բարձրացումը չի նսեմացնում նյութական խթանների ազդեցությունը ճիշտ այնպես, ինչպես նյութական շահագրգռվածության բարձրացումը ոչ միայն չի թուլացնում, այլ ընդհակառակը, ուժեղացնում է բարոյական խթանների դերը։ Բարոյական և նյութական գործոնների ճիշտ զուգորդումը զգալիորեն նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, կոլեկտիվի ամրապնդմանը, բարձր գիտակցության և աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ձևավորմանը։

Ռեսպուբլիկայի բազմաթիվ առաջավոր տնտեսություններում արտադրության լավ կազմակերպման, անձնական նյութական շահագրգռվածության կիրառման, բարոյական և նյութական խթանների ճիշտ զուգորդման շնորհիվ զգալիորեն բարձրացել է կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը, ամրապնդվել է կոլեկտիվիզմի զգացումը և հասարակական արտադրության հանդեպ կոլեկտիվ պատասխանատվությունը։ Հենց դրանում է Իջևանի արտադրական վարչության Կիրովի անվան, Գորիսի արտադրական վարչության «Ավանգարդ», Էջմիածնի արտադրական վարչության պարտիայի XXII համագումարի ու Ժդանովի անվան և տնտեսապես ամրապնդված մյուս կոլտնտեսությունների հաջողությունների «գաղտնիքը»։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերին նվիրված իր բազմաթիվ ելույթներում, զեկուցումներում և ճառերում Ն. Ս. Խրուշչովը բազմիցս ընդգծել է, որ գյուղատնտեսական արտադրության մակարդակի բարձրացման համար մյուս կարևոր գործոնների հետ միասին վճռական նշանակություն ունի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը, նրա սերտ զուգակցումը բարոյական խթանների հետ։

Նյութական շահագրգռվածության սկզբունքի կիրառումը, անկասկած, վերաբերում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին և առավել ևս գյուղատնտեսությանը։ Այն հանգամանքը, որ նյութական շահագրգռվածության սկզբունքի գործնական կիրառումը հրատապ անհրաժեշտություն է նաև գյուղատնտեսության բնագավառում, դա վեր է ամեն կասկածից, որովհետև այն կյանքի, մեր օրերի վճռական պահանջն է։ Ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի և հատկապես արդյունաբերության համեմատությամբ գյուղատնտեսությունն իր զարգացման արդի էտապում ունի մի շարք տարբերիչ առանձնահատկություններ, որոնց շնորհիվ կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը մղվում է առաջին պլանի վրա։

Արդյունաբերության համեմատությամբ գյուղատնտեսության ետ մնալը, որը նշանակալիորեն նյութական շահագրգռվածության սկզբունքի անտեսման հետևանք է, այդ սկզբունքի հետևողական կիրառումը դարձնում է անվերապահ անհրաժեշտություն։

Սոցիալիստական հասարակարգում գործում է ըստ աշխատանքի արդյունքի բաշխման օրենքը, որը բացառում է նյութական բարիքների բաշխման



մանր-բուրժուական հավասարեցումը։ Աշխատավորի վարձատրության չափը որոշվում է նրա աշխատանքի քանակական և որակական ցուցանիշներին համապատասխան։ Աշխատանքի բարձր արդյունավետությունը զուգակցվում է համապատասխանորեն բարձր վարձատրությամբ։ Իսկ դա պատճառ է դառնում, որպեսզի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև տեղի ունենա աշխատուժի որոշ տարերային վերաբաժանում և հատկապես աշխատուժը գյուղատնտեսությունից տեղափոխվի արդյունաբերություն։ Աշխատուժի նշված տարերային տեղաշարժի պատճառը հիմնականում առանձին կոլտնտեսություններում կոլտնտեսականների ցածր վարձատրությունն է։

Իհարկե, գյուղը եղել է և հավանական է երկար կմնա որպես արդյունաբերությանը բանվորական ուժ մատակարարող։ Սակայն հարցի այդ բնական կողմը չէ, որ մտահոգության տեղիք է տալիս, այլ այն, որ նախ, կոլտնտեսության աշխատանքները լքում և քաղաքներում աշխատելու են գնում տնտեսապես թույլ, աշխատող ձեռքերով անապահով կոլտնտեսություններից, ապա՝ նշված կոլտնտեսություններից գնում է ոչ թե կոլտնտեսականների մի մասն ընդհանրապես, այլ երիտասարդությունը, որի կարիքը ավելի շատ է զգացվում գյուղում։

1964 թ. հունիսի 5-ին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին ուղղած իր նամակում ընկ. Ն. Ս. Խրուշչովը այդ առթիվ գրել է. «Այժմ երիտասարդները հովվության չեն գնում, ծերերը մահանում են։ Հովիվների համար հարկավոր է ստեղծել կենցաղային և կուլտուրական նորմալ պայմաններ»։

Առաջավոր կոլտնտեսություններից, իբրև կանոն, կոլտնտեսականները չեն բացակայում և այդ տնտեսություններում, ինչ խոսք, աշխատավոր ձեռքերի պակաս չի զգացվում։ Օրինակ, Էջմիածնի արտադրական վարչության Ներքին Չարբախի Լենինի անվան կոլտնտեսությունում վարչությունն ամենից շատ մտահոգվում է բոլոր կոլտնտեսականներին աշխատանքով ապահովելու հարցով։ Չնայած կոլտնտեսությունը գտնվում է մայրաքաղաքի արվարձանում և կոլտնտեսականներն ազատ կերպով կարող են աշխատել քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում, բայց չեն լքում կոլտնտեսության աշխատանքները, որովհետև իրենց աշխատանքի դիմաց ստանում են բավարար վարձատրություն (1962 թվականին այս կոլտնտեսությունում մեկ աշխօրի դրամական արժեքը կազմում էր 5 ռ. 90 կ.)։ Այս կապակցությամբ տեղին կլինի հիշեցնել Ն. Ս. Խրուշչովի խոսքերը գյուղի աշխատավորի մասին. «Եթե մարդն ունենա բնակարան, ունենա միս, կաթ, բանջարեղեն և ավելի էժան քան քաղաքում, եթե նա ունենա կուլտուրական հանգիստ, այն ժամանակ նա դեռ կմտածի, թե որտեղ է նրան ձեռնտու ապրել՝ գյուղում թե քաղաքում»։

Զարգացման ժամանակակից էտապում գյուղատնտեսության մյուս առանձնահատկությունը նրա տեխնիկական զինվածության ցածր մակարդակն է արդյունաբերության համեմատությամբ։ Բավական է նշել, որ գյուղատնտեսության այնպիսի աշխատատար ճյուղում, ինչպիսին է անասնապահությունը, աշխատանքների մեքենայացումը կազմում է միայն 7 տոկոս։

Տեխնիկան գյուղատնտեսության մեջ հանդիսանում է ոչ միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոց, այլև բարոյական ներգործության կարևոր գործոն։ Վերափոխելով աշխատանքի բնույթը, տեխնիկան միաժամանակ փոխում է կոլտնտեսականի վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, ոչ ամեն մի երիտասարդ կոլտնտեսական կցանկանա բահով,

բրիչով, գերանդիով դաշտում աշխատել կամ կթվոր լինել, սակայն շատ շատերը կհամաձայնեն դառնալ տրակտորիստներ, կթող սարքավորման մեխանիկներ և այլն։

Մարքսը նշում էր, որ բանվորին չհրապուրող աշխատանքը նրանից ավելի մեծ լարվածություն ու ջանք է պահանջում։ Գյուղատնտեսության մեջ երիտասարդ կոլտնտեսականներին բոլորից շատ հրապուրում և իր բովանդակությամբ ու կիրառման ձևով հաճույք է պատճառում մեքենայացված աշխատանքը։ Հետևապես, այնքան ժամանակ, որքան գյուղատնտեսության մեջ դեռևս կգերիշխի ֆիզիկական աշխատանքը, նյութական խթաններն առաջնահերթ նշանակություն կունենան բարոյական ազդակների համեմատությամբ, և նյութական շահագրգռվածության սկզբունքը կունենա վճռական նշանակություն։ Իսկ երբ մեր երկրում կոմունիզմը հիմնականում կկառուցվի, երբ տեղի կունենա անցում «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» կոմունիստական սկզբունքին, այն ժամանակ անձնական նյութական շահագրգռվածությունը իր տեղը կզիջի կոլեկտիվ, հասարակական նյութական շահագրգռվածությանը։ Կոմունիզմի ժամանակ հասարակության յուրաքանչյուր անդամի արտադրական ակտիվ գործունեությունը, նրա՝ ըստ ընդունակությունների մասնակցությունը հասարակական արտադրությանը կպայմանավորվի ամենից առաջ բարոյական շարժառիթներով։ Գյուղատնտեսության հետագա մեքենայացումը և ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի կողմից նախանշված քիմիացումը լայն հեռանկարներ են բացում ժողովրդական տնտեսության այդ կարևորագույն ճյուղի հետագա ինտենսիվ զարգացման, գյուղատնտեսական արտադրությունը արդյունաբերականի տարատեսակը դարձնելու համար։

Գյուղատնտեսական արտադրության առանձնահատկություններից է նաև աշխատանքների սեզոնայնությունը և աշխատանքային օրվա համեմատաբար երկար տևողությունը։ Ինչ խոսք, գյուղատնտեսության մեջ մեքենայացման մակարդակի և դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացումը հնարավորություն կընձեռի մոտ ապագայում կրճատել աշխատանքային օրվա տևողությունը, սակայն ներկայիս վիճակն այդ առումով պահանջում է նյութապես խրախուսել կոլտնտեսականներին, բարձրացնել նրանց նյութական շահագրգռվածությունը։ Իր ելույթներից մեկում, անդրադառնալով գյուղատնտեսության մեջ աշխատանքային օրվա տևողությանը, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Ահա այստեղ մի կոլտնտեսուհի ճիշտ ասաց, որ մենք աշխատում ենք առանց աշխատաժամանակը հաշվի առնելու։ Դրա համար գլուխ ենք խոնարհում ձեր առաջ։ Սակայն վաղը նույն կոլտնտեսուհին կարող է ասել՝ լսեք, ես չեմ ծնվել, որ ամբողջ օրը պտտվեմ կովի շուրջը։ Հասարակության համար անհրաժեշտ մթերքներ արտադրելու համար ես իմ բաժինն եմ մտցնում հասարակական աշխատանքի մեջ, բայց ես ցանկանում եմ իմ ժամանակից օգտվել այնպես, որպեսզի լիորեն բավարարեմ իմ հոգեկան պահանջմունքները» (Ն. Ս. Խրուշչով, Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում և գյուղատնտեսության զարգացումը, հ. 2, էջ 286)։

Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության հետ սերտորեն առնչվող մյուս կարևոր հանգամանքը կոլտնտեսականներին տրվող վարձատրության անորոշակիությունն է, նրա նախօրոք սահմանվածության բացակայությունն ամբողջ տարվա ընթացքում։ Հայտնի է, որ կոլտնտեսականների



վարձատրման գոյություն ունեցող բոլոր սիստեմներն էլ չեն սահմանում կոլտնտեսականի վարձատրության չափը տարվա սկզբում, այլ վերջնական հաշվարկները, աշխատանքի դիմաց նրան տրվող վարձատրությունը որոշակի են դառնում միայն տարվա վերջում։ Ճիշտ է, անցումը դրամական վարձատրության, երաշխավորման ֆոնդերի ստեղծումը, ամենամսյա ավանսավորումները մեծ առավելություններ ունեն աշխօրերով վարձատրելու համեմատությամբ, սակայն նշված առաջադեմ սիստեմների կիրառման ժամանակ ևս վարձատրության վերջնական չափը որոշվում է միայն տարվա վերջում։ Այսպիսով, խնդիրն այն է, որպեսզի մշակվի կոլտնտեսականների վարձատրման մի այնպիսի սիստեմ, որի կիրառումը հնարավոր լինի ինչպես առաջավոր, այնպես էլ տնտեսապես թույլ կոլտնտեսություններում, որն առավել որոշակի դարձնի կոլտնտեսականների աշխատանքի դիմաց տրվելիք վարձատրության չափը և դրանով իսկ նպաստի նրանց նյութական շահագրգռվածության բարձրացմանը։

Մյուս հանգամանքը, որն առավել անհրաժեշտ է դարձնում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը, դա քաղաքի համեմատությամբ գյուղի կուլտուր-կենցաղային պայմանների ցածր մակարդակն է։ Կար ժամանակ, երբ գյուղացին մտահոգվում էր միայն մի կտոր հացի համար։ Բայց այդ ժամանակը վաղուց է անցել։ Այժմ մեր կոլտնտեսային գյուղացիությունն ունի նյութական և հոգևոր մեծ պահանջմունքներ։ Կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերն ավելի ու ավելի կարևոր նշանակություն են ստանում։

Վերջապես գյուղատնտեսության զարգացման արդի էտապում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման անհրաժեշտությունը բխում է անձնական և հասարակական նյութական շահերի ոչ լրիվ համընկնումից։ Կոլտնտեսականների մոտ անձնական և հասարակական շահերի զուգորդումն ունի իր առանձնահատկությունը։ Ի տարբերություն արդյունաբերության, որտեղ արտադրությունը խարսխված է հասարակական, այսինքն համաժողովրդական սեփականության վրա, կոլտնտեսություններում արտադրության հիմքում ընկած է արտադրամիջոցների (բացի հողից) կոլեկտիվ սեփականությունը։ Այստեղ շահերը եռորդացվում են. զուգորդվում են կոլտնտեսականի, կոլտնտեսության և պետության շահերը։

Վերջին տասնամյակում կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության կիրառած միջոցառումներն, ապահովելով գյուղատնտեսության շեշտակի վերելքը, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին կոլտնտեսությունների և պետության շահերի հետագա մերձեցման ու միաձուլման համար։ Յուրօրինակ են դրսևորվում նաև կոլտնտեսականների նյութական շահերը։ Ի տարբերություն բանվոր-ծառայողների, որոնք ունեն եկամտի մեկ աղբյուր՝ աշխատավարձը, կոլտնտեսականներն ունեն եկամտի երկու աղբյուր՝ կոլտնտեսությունը և տնամերձ տնտեսությունը։ Նշված երկու աղբյուրներից ստացվող եկամուտների հարաբերությունը որոշակիորեն ազդում է կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բնույթի վրա։ Որքան քիչ եկամուտ է ստանում կոլտնտեսականն իր տնամերձից և շատ՝ կոլտնտեսությունից, այնքան նրա անձնական նյութական շահը միաձուլվում է կոլտնտեսության, ապա և պետության շահին և, ընդհակառակը, որքան ավելանում է տնամերձից ստացվող եկամուտը և նվազում կոլտնտեսությունից ստացվողը, այն-

քան նրա անձնական շահը հեռանում է կոլտնտեսության, ապա և պետության շահերից։ Կոլտնտեսային սիստեմի հետագա զարգացումը, կոլտնտեսությունների հետագա տնտեսական-կազմակերպական ամրապնդումը կոլտնտեսականների նյութական, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը, անկասկած, հնարավորություն կստեղծեն վերացնելու կոլտնտեսականների տնամերձ տնտեսությունները, որը զգալիորեն կթեթևացնի կոլտնտեսականների աշխատանքը, դրական ազդեցություն կունենա հանրային աշխատանքի նկատմամբ նրանց վերաբերմունքի վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս կայացած պլենումը նոր խնդիրներ դրեց գյուղատնտեսության աշխատավորների առջև՝ պարարտանյութերի լայն կիրառման, ոռոգման ցանցի ընդարձակման, կոմպլեքսային մեքենայացման, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման հիման վրա ապահովել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվ զարգացումը, արագորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Պլենումը հատկապես նշեց առանձին տնտեսությունների ետ մնալը շուտափույթ հաղթահարելու անհրաժեշտությունը։

Գյուղի աշխատավորության նյութական շահագրգռվածության անհապաղ բարձրացման անհրաժեշտությունն ընդգծված է պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների ղեկավար աշխատողների 1964 թվականի փետրվարի 28-ի խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ։ Վեր հանելով գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատողների նյութական խրախուսման բնագավառում գոյություն ունեցող թերությունները, Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ ժամանակն է հրաժարվել գյուղատնտեսության ղեկավարման հին մեթոդներից, որ անհրաժեշտ է գործիմացությամբ ու հմտորեն, ամենայն կոնկրետությամբ վճռել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման, անմիջական արտադրողների նյութական շահագրգռվածության ըստ ամենայնի բարձրացման հարցերը։ «Պետք է,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— համարձակորեն ընթանալ արտադրված մթերքների քանակի ու որակի համար նյութապես խրախուսելու ուղիով։ Կոլտնտեսականը կամ սովխոզի բանվորը, որքան շատ մթերք է արտադրում, այնքան պետք է շատ ստանա իր աշխատանքի դիմաց։ Առաջին հերթին էլ ո՞ւմ պետք է խրախուսել, եթե ոչ նյութական արժեքներ ստեղծող աշխատողներին»։

ՍՄԿԿ Կենտկոմի կողմից առաջադրված նոր խնդիրների հաջող կատարման հիմնական պայմաններից մեկը գյուղի աշխատավորության նյութական շահագրգռվածության բարձրացումն է, որին լուրջ ուշադրություն պետք է նվիրեն գյուղական պարտիական կոմիտեները, արտադրական վարչությունները, կոլտնտեսությունների և սովխոզների պարտիական կազմակերպություններն ու տնտեսությունների ղեկավարները։

---

Վ. ԳԱԲՈՒՉՅԱՆ

# ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԸ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԹՇՆԱՄԻՆ ԵՆ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում, հիսունից ավելի երկրներ, թոթափելով գաղութային լուծը, քաղաքական անկախություն նվաճեցին։ Դեռ 1960 թվականին ավելի քան 100 միլիոն մարդ ապրում էին գաղութային ստրկության մեջ, իսկ այսօր միայն 50 միլիոն։

Հեռու չէ այն ժամանակը, երբ Անգոլայի, Ադենի, Քուվեյտի, «պորտուգալական» Գվինեայի, Մոզամբիկի, Հարավային Ռոդեզիայի և այլ երկրների ժողովուրդները նույնպես կհասնեն քաղաքական «չափահասության» և մեր մոլորակի վրայից կչնչվի ամոթալի գաղութատիրությունը։

Սակայն իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզման պայմաններում էլ մոնոպոլիստական կապիտալը իշխող դիրք է գրավում երիտասարդ շատ պետությունների էկոնոմիկայում։ Մոնոպոլիաները ձգտում են հատկապես ամուր մնալ արդյունահանող արդյունաբերության ճյուղերում։ Այսպես, օրինակ, տնտեսապես թույլ զարգացած երկրներում 1960 թվականին արդյունահանվել է 496,2 միլիոն տոննա նավթ, որի 87 տոկոսն ստացվել է ամերիկյան, անգլիական և հոլանդական կապիտալիստների կողմից վերահսկվող ձեռնարկություններում։ Մերձավոր Արևելքի ամբողջ նավթը գործնականորեն վերահսկվում է միջազգային նավթային կարտելի անդամ մոնոպոլիաների կողմից։ Աֆրիկայում միայն անգլիական մոնոպոլիաները վերահսկում են ծարիրի բոլոր պաշարները, վանադիումի պաշարների 94, քրոմի՝ 88, բոքսիդների՝ 52, պղնձի ու մարգանի՝ 44 տոկոսին։ Կոնգոյի ամբողջ պղինձը պատկանում է «Յունիոն Միներ դյու օ Կատանգա» միջազգային մոնոպոլիային, իսկ ամբողջ ալմաստը՝ «Ֆորմինիեր» ընկերությանը։ Մալայայի ֆեդերացիայի ամբողջ անագի ձուլումը գտնվում է անգլիական մոնոպոլիաների ձեռքում։ Հարավային Վիետնամի կաուչուկի համարյա բոլոր պլանտացիաները ամերիկյան մեկ մոնոպոլիայի հսկողության տակ են։

Այսպիսով, գաղութային կախումից ազատագրվելը դեռևս չի նշանակում ազատագրվել առհասարակ։ Ազգային ազատագրական շարժումների հաղթանակով երիտասարդ պետություններն անկախություն են ձեռք բերում արտատնտեսական հարաբերություններում՝ քաղաքական բնագավառում, այն էլ տարբեր չափերով։ Ինչ վերաբերում է տնտեսական անկախությանը, ապա այն ավելի բարդ խնդիր է, որովհետև տնտեսական կախումը ավելի խոր արմատներ ունի։ Քաղաքական և տնտեսական կախման դիալեկտիկան այնպիսին է,

որ տնտեսական անկախության մասին խոսք անգամ լինել չի կարող, եթե կախյալ երկիրը պետական ինքնուրույնություն չի նվաճել։ Մյուս կողմից, պետական անկախությունը չի կարող կայուն ու լիարժեք լինել, եթե երիտասարդ պետությունը մնում է տնտեսական կախման մեջ։ Տնտեսական անկախություն նվաճել, նշանակում է ազատվել օտար մոնոպոլիստական կապիտալի ճնշումից, վերացնել ժողովրդական տնտեսության գաղութային կառուցվածքը, ստեղծել ինքնուրույն, բազմաճյուղ ու կենսունակ տնտեսություն, որը չհենվի միայն հումքի արտահանման վրա։ Հենց այս ուղղություններով կատարվող յուրաքանչյուր քայլափոխում երիտասարդ պետությունները հանդիպում են մոնոպոլիաների բացահայտ ու քողարկված ոտնձգություններին։

Գաղութային ժամանակակից քաղաքականության նպատակն է՝ տարբեր եղանակներով սահմանափակել երիտասարդ պետությունների ազգային անկախությունը, նրանց հնարավորություն չտալ պետական իշխանությունն օգտագործելու իմպերիալիստական տերությունների մակաբույծ շահերի դեմ, պահպանել ազատագրված երկրների տնտեսական կողոպտման հիմքերը։ Ժամանակակից գաղութատիրությունը իմպերիալիզմի քաղաքական, ռազմական և տնտեսական այն միջոցառումների ամբողջությունն է, որոնք ձեռնարկվում են համաշխարհային մոնոպոլիստական կապիտալի կողմից՝ ազատագրված երկրների շահագործման պայմանների պահպանման և այդ երկրների ազգային անկախության սահմանափակման նպատակով։ Անզոր լինելով դիմագրավել գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժմանը, իմպերիալիստական մոնոպոլիաներն այժմ ձգտում են իրենց ձեռքում ամուր պահել տնտեսական կախման թելերը և նոր մեթոդներով ու ձևերով շարունակել ժողովուրդների գաղութային շահագործումը։ «Այսպիսով,— ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում,— իմպերիալիզմը մնում է որպես գլխավոր թշնամի և գլխավոր խոչընդոտ երիտասարդ սուվերեն պետությունների և բոլոր կախյալ երկրների առջև ծառացած համազգային խնդիրների լուծման ճանապարհին»։

Քաղաքական անկախություն նվաճած երիտասարդ պետությունների մեծ մասը չի մտնում ոչ սոցիալիստական, ոչ էլ իմպերիալիստական լագերի մեջ։ Երիտասարդ պետությունների մեծամասնությունը քաղաքականորեն դադարել է իմպերիալիզմի ռեզերվը լինելուց և կազմում է չեզոք երկրների խումբը։ Սա ինքնին մեծ վնաս է իմպերիալիզմի լագերի համար։ Երիտասարդ ինքնուրույն պետությունների ճակատը հակադրվում է իմպերիալիզմի լագերին։

Ինչ վերաբերում է հարցի տնտեսական կողմին, ապա պետական անկախություն նվաճած երկրների մեծ մասը շարունակում է մնալ տնտեսության կապիտալիստական համաշխարհային սիստեմում։ Այդ սիստեմում նրանք այսօր համեմատաբար ավելի բարենպաստ դիրքեր ունեն, քան մինչև քաղաքական անկախություն նվաճելը։ Նախկինում նրանց դրությունը տնտեսության համաշխարհային սիստեմում անելանելի էր։ Այժմ, սոցիալիստական երկրների կողմից ցույց տրվող բազմակողմանի օգնությունը երիտասարդ պետությունների առջև բաց է անում սեփական արդյունաբերությունը զարգացնելու և ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում սոցիալական վերափոխումների իրականացման հիման վրա դարավոր հետամնացությունն ու աղքատությունը վերացնելու ռեալ հնարավորություններ։ Թե երիտասարդ պետությունները հետագա զարգացման ինչպիսի ուղի կընտրեն՝ կապիտալիստական թե՞ ոչ-կապիտալիստական, դա այդ երկրների ժողովուրդ-



ների գործն է։ Այնուամենայնիվ, այնքան ժամանակ, քանի դեռ երիտասարդ ազգային պետությունները մնում են տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմում, այդ սիստեմի երկրների զարգացման մակարդակների միջև գոյություն ունեցող մեծ տարբերությունները նպաստավոր պայմաններ կստեղծեն հավելյալ արժեքը նախկին գաղութային երկրներից զարգացած երկրներ փոխադրելու համար։

Իմպերիալիստական մոնոպոլիաները շարունակում են վիթխարի շահույթներ կորզել նախկին գաղութային երկրների ժողովուրդներին շահագործելով։ Եթե ԱՄՆ-ում կապիտալի շահութաբերությունը տատանվում է 10—12 տոկոսի սահմաններում, իսկ Անգլիայում՝ 8—9, ապա Գանայի ոսկու և Կոնգոյի ուրանի հանքերում այն կազմում է 100 տոկոս, իսկ Ռոդեզիայի «Ռոկանա» պղնձահանքային ընկերության կապիտալների շահութաբերությունը հասնում է 1400 տոկոսի։ Արտասահմանյան մոնոպոլիաների կողմից վիթխարի շահույթների կորզումը կրճատում է այն միջոցները, որոնք կարող էին օգտագործվել տեղում՝ ազգային էկոնոմիկայի զարգացման համար։ Օրինակ, Մալայայում 24 օտար ընկերությունների 1960 թվականի շահույթների տարեկան աճը կազմում էր ավելի մեծ գումար, քան Մալայայի արդյունաբերության զարգացման 1961—1965 թվականների պլանով պահանջվող ամբողջ կապիտալ ներդրումները։ Օտարերկրյա մոնոպոլիաների շահույթները Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում ներկայումս հասնում են տարեկան 5 միլիարդ դոլարի, որի առյուծի բաժինը տեղափոխվում է իմպերիալիստական երկրներ։

Քաղաքական անկախություն նվաճելը, իհարկե, խթանում է թույլ զարգացած երկրների տնտեսական առաջընթացը։ Այդ երկրների համախառն արտադրանքի տարեկան միջին աճը մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը կազմել է 1, իսկ 60-ական թվականներին՝ 4 տոկոս։ Տնտեսական առաջընթացը բնութագրող բազմաթիվ օրինակներ կարելի է բերել առանձին երկրների վերաբերյալ։ Հնդկաստանում, օրինակ, արդյունաբերական արտադրության ծավալը 1951-ից մինչև 1960 թվականը աճել է 1,7 անգամ։ Նույն ժամանակամիջոցում առավել կարևոր ճյուղերի՝ մեքենաշինական արդյունաբերության արտադրանքն աճել է 3,5 անգամ, սև մետաղներինը՝ 2,1, էլեկտրաէներգիայինը՝ 2,8 անգամ և այլն։

Սակայն, գաղութային երկարատև ճնշումը և ծայրահեղ շահագործումը խոր հետքեր են թողել այդ երկրների էկոնոմիկայի վրա։ Գաղութային նախկին երկրների արտադրողական ուժերի զարգացման մակարդակը անհամեմատ ցածր է իմպերիալիստական երկրների զարգացման մակարդակից։ Երիտասարդ պետություններում, շատ քիչ բացառություններով, արտադրողական ուժերի զարգացումն այսօր գտնվում է այն աստիճանի վրա, որի վրա կանգնած էր Արևմտյան Եվրոպան միջին դարերում։ Արտադրական հարաբերություններում խիստ զգալի են ֆեոդալիզմի, որոշ երկրներում նույնիսկ ստրկատիրության մնացորդները։ Գաղութատիրությունը չափազանց մեծ վնասներ է հասցրել մարդկությանը։ Այդ տիրապետության հետևանքով այսօր աշխարհի երկու երրորդը տնտեսապես հետամնաց երկրներ են, որոնցում ապրում է երկրագնդի բնակչության 70 տոկոսը, որոնք, սակայն, արտադրում են արդյունաբերական համաշխարհային արտադրանքի 9,9 տոկոսը միայն։ Թույլ զարգացած երկրներում, իմպերիալիստական երկրների համեմատությամբ, բնակ-

չության մեկ շնչի հաշվով արտադրվում է 25—30 անգամ քիչ պողպատ, 50—100 անգամ քիչ էլեկտրաէներգիա և այլն։

Երիտասարդ պետություններում բնակչության ճնշող մեծամասնությունը կապված է գյուղատնտեսության հետ, ուստի տնտեսական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հնարավորությունները կախված են գյուղատնտեսության վիճակից։ Սակայն գյուղատնտեսության հիմնական արտադրության միջոցը՝ հողը, այդ երկրներում շատ վատ է օգտագործվում։ Այստեղ 1 հեկտարի վրա օգտագործվող պարարտանյութերը 10 անգամ քիչ են ԱՄՆ-ից և 30 անգամ՝ Արևմտյան Եվրոպայից։ Այդ երկրներին բաժին է ընկնում կապիտալիստական աշխարհի տրակտորային պարկի 6 տոկոսը միայն։ Խիստ թերսնվում են Լատինական Ամերիկայի բնակչության երկու երրորդը, Աֆրիկայի բնակչության մեծամասնությունը և հարյուր միլիոնավոր մարդիկ Ասիայում։ Այսօր, XX դարի երկրորդ կեսին, կապիտալիստական աշխարհում ապրող 700 միլիոն մարդ անգրագետ են։ Անգրագետ է Պակիստանի բնակչության 75, Սվազիլենդում՝ 82, Հայիթիում՝ 89, Մալիում՝ 92, Նիասալենդում՝ 93, իսկ Անգոլայում՝ 99 տոկոսը։

Այսպիսով, երիտասարդ պետությունների առջև կանգնած են խոշոր ու դժվարին պրոբլեմներ՝ հետամնացության ու աղքատության վերացումը, տնտեսական առաջընթացը, քաղաքական անկախության ամրապնդումը և դեմոկրատիայի զարգացումը ապահովող անկախ էկոնոմիկայի ստեղծումը։ «Դրա համար,— ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը 1963 թ. դեկտեմբերին Գանայի, Ալժիրի և Բիրմայի երեք թերթերի խմբագրությունների հարցերին տված պատասխաններում,— առաջին հերթին անհրաժեշտ է վերջ տալ իմպերիալիզմի տնտեսական տիրապետությանը։ Թույլ զարգացած երկրների հարստությունները շահագործող օտար մոնոպոլիաները ժողովուրդների առաջընթացի և նրանց՝ լավագույն կյանքի ուղու վրա կանգնելու գլխավոր խոչընդոտն են»։

Իմպերիալիստական մոնոպոլիաները երիտասարդ պետությունների նկատմամբ իրենց թշնամանքը ամենից ցայտուն արտահայտում են այդ երկրների էկոնոմիկայում պետական սեկտորի զարգացման և ինդուստրացման հանդեպ։ Օտար մոնոպոլիաները ձգտում են առաջին հերթին խանգարել սոցիալ-տնտեսական կարևոր վերափոխումների իրականացումը, վերափոխումներ, որոնք անհրաժեշտ են նյութական բոլոր հնարավորությունները մոբիլիզացնելու, ինդուստրացման միջոցով տնտեսական խոր հետամնացությունը հաղթահարելու համար։ Որպես օրինակ հիշենք ամերիկյան մոնոպոլիաների վերաբերմունքը Հնդկաստանում պետական սեկտորի զարգացման և ինդուստրացման ուղղությամբ կատարված առաջին քայլերի նկատմամբ։ Հնդկաստանի ազգային էկոնոմիկայի զարգացման 1951—1956 թվականների առաջին հնգամյա պլանով նախատեսված էր կառուցել մետաղաձուլական ոչ-մեծ մի գործարան՝ երկրում պողպատի պակասը որոշ չափով մեղմացնելու համար։ Հնդկաստանի կառավարությունը դիմեց ԱՄՆ-ի օգնությանը, սակայն մերժվեց։ Այդ խնդրի իրականացմանն օգնեց Սովետական Միությունը։ Կամ, վերցնենք օրինակ, Հնդկաստանի համար այնքան կարևոր նշանակություն ունեցող նավթի պրոբլեմը։ Մինչև անկախություն նվաճելը Հնդկաստանի վառելիքա-էներգետիկ բալանսը չափազանց լարված էր, ծանր էր հատկապես հեղուկ վառելիքի դրությունը։ Նավթի հանույթը, որը կենտրոնացած էր անգլիական «Ասամ օյլ» ընկերության ձեռքում, ապահովում էր երկրի պահանջի 6—8 տոկոսը միայն։ Հետագայում,



ինդուստրացման ծրագրի իրականացման կապակցությամբ, նավթի պահանջն ավելի մեծացավ։ Դրանից անմիջապես օգտվեցին ամերիկյան ու անգլիական նավթային մոնոպոլիաները և նրանց շահույթները հասան արտասահմանյան բոլոր մասնավոր ներդրումների շահույթների մեկ երրորդին։

Նավթի առևտրական գործարքներից ստացվող և մինչև հարյուր տոկոսի հասնող շահութաբերությունը շատ հաճելի էր «Ասամ օյլ» և «Ստանդարտ վակում օյլ» ընկերություններին։ Հենց այդ էր պատճառը, որ հիշյալ մոնոպոլիաները չկատարեցին Հնդկաստանի կառավարության հետ կնքված պայմանագրով իրենց ստանձնած պարտավորությունները՝ երկրում նավթի հետախուզման ուղղությամբ։ Նրանք հրաժարվեցին կատարված աշխատանքների արդյունքները Հնդկաստանի կառավարությանը հաղորդելուց, ձգձգում էին Հնդկական անձնակազմի ուսուցման գործը։ Այս հարցում ևս օգնության հասան սոցիալիստական երկրները։

Սովետական Միության և Ռումինիայի մասնագետները հաստատեցին, որ նավթի հնարավոր պաշարներ կան երկրի տերիտորիայի $1/3$-ում։ Սակայն իմպերիալիստական մոնոպոլիաները չդադարեցրին իրենց քայքայիչ գործունեությունը։ Այսպես, Հնդկաստանի կառավարությունը որոշեց երրորդ հնգամյակի ընթացքում, մինչև 1965—1966 թվականը կրկնապատկել նավթավերամշակման գործարանների կարողությունները, հասցնելով 17 միլիոն տոննայի, ըստ որում լրացուցիչ կարողությունների մեծ մասը պետք է գործարկվեր պետական սեկտորի գործարանների կառուցման հաշվին։ Այս հանգամանքը դուր չեկավ օտար մոնոպոլիաներին. Նրանք ուլտիմատում ներկայացրին, հայտարարելով, որ եթե հնարավորություն չտրվի ամերիկյան և անգլիական ընկերությունների նավթավերամշակման գործարանների կարողություններն ավելացնել 4 միլիոն տոննայով, ապա նրանք առհասարակ կհրաժարվեն իրենց պատկանող բոլոր գործարանների կարողություններն ավելացնելուց, դրանով ձախողելով երրորդ հնգամյա պլանի կատարումը։

Նույնպիսի վիճակ գոյություն ունի նաև Ցեյլոնում։ Անգլիական «Շել» ընկերությունը, որը ոտք է դրել Ցեյլոն ավելի քան կես դար առաջ, վերահսկում էր նավթի ներմուծման ու ներքին առևտրի 60 տոկոսին։ Հետագայում, համաձայնագիր կնքելով երկու ամերիկյան ընկերությունների հետ, նրանք ամբողջովին իրենց ձեռքը վերցրին Ցեյլոնի նավթի ներքին շուկան, վիթխարի շահույթներ կորզելով երկրից։ Ցեյլոնի կառավարությունն ստիպված եղավ դիմել իմպերիալիստական մոնոպոլիաների կամայականությունները սահմանափակող միջոցառումների։ Որոշվեց ստեղծել նավթային պետական ընկերություն։ Ամերիկյան և Անգլիական մոնոպոլիաները կատաղի դիմադրություն ցույց տվին։ Դիվանագիտական մանևրներով, սպառնալիքներով ու կաշառքով նրանք փորձեցին ձախողել օրինագծի ընդունումը։ 1963 թվականի փետրվարին ԱՄՆ-ի կառավարությունը հայտարարեց, որ դադարեցնում է Ցեյլոնին ցույց տրվող օգնությունը։ Այնուամենայնիվ նավթային ազգային ընկերությունն ստեղծվեց և այժմ գործում է։

Իմպերիալիստական մոնոպոլիաները պայքարում են նախկին գաղութային երկրների էկոնոմիկայում իրենց դիրքերը ոչ միայն պահպանելու, այլև ավելի խոր տարածելու համար։ Այդ հարցում որպես գործիք օգտագործվում են կապիտալները։ Չնայած մոնոպոլիստական կապիտալի քաղաքական դիրքերը նախկին գաղութային երկրներում խիստ թուլացել են, այնուամենայնիվ այդ

երկրներում իմպերիալիստական տերությունների կապիտալ ներդրումներն աճում են։ Այսպես, օրինակ, գաղութային կայսրության փլուզման պայմաններում նկատվում է գաղութատիրության գլխավոր պատվարի՝ ամերիկյան իմպերիալիզմի տնտեսական ուժեղացող ներթափանցումը երիտասարդ պետությունների էկոնոմիկան։ Եթե մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ԱՄՆ-ի կապիտալ ներդրումների գումարը Աֆրիկայում չէր հասնում 200 միլիոն դոլարի, ապա 1962 թվականին գերազանցեց 3 միլիարդ դոլարից։ Միաժամանակ, իմպերիալիզմի տնտեսական աճող ներթափանցման իսկական նպատակները քողարկելու համար, մոնոպոլիաները կապիտալների աճող արտահանումը որակում են որպես թույլ զարգացած երկրներին ցույց տրվող «օգնություն»։ Ի՞նչ օգնության մասին կարող է խոսք լինել, երբ այդ անվան տակ տրամադրվող կապիտալները իմպերիալիստական մոնոպոլիաների՝ թույլ զարգացած երկրներից ստացած հսկայական շահույթների մի մասն են պարզապես։ Եվ հենց այն պատճառով, որ օտար մոնոպոլիաներն ընդհանուր առմամբ շահույթի ձևով ավելի շատ միջոցներ են կորզում, քան տրամադրում են «օգնության» անվան տակ, այդ «օգնությունը» չի կարող արագացնել երիտասարդ պետությունների տնտեսական զարգացումը։

Իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից երիտասարդ պետություններում կատարվող ֆինանսական ուժեղացող ներխուժման նպատակն է քայքայումից փրկել ազգային-ազատագրական շարժման հարվածների տակ խարխլվող տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմը, այդ սիստեմի սահմանների մեջ պահել քաղաքական անկախություն նվաճած երիտասարդ պետությունները։ Իմպերիալիստական երկրներից կատարվող կապիտալի արտահանումն իհարկե, ունի նաև հետամնաց երկրների տնտեսական շահագործումն ուժեղացնելու նպատակ։ Կապիտալի արտահանման միջոցով իրենց ձեռքը վերցնելով տեղական արդյունաբերության վերահսկումը, իմպերիալիստները ձգտում են խոչընդոտել նրա զարգացումը, շահագրգռված են ոչ թե բարձրացնելու տեխնիկական մակարդակը, այլ հարստություններ դիզելու տեղի էժան աշխատուժի հաշվին։ Այսպես, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում, տնտեսապես հետամնաց երկրներում ներդրված ամեն մի դոլարի դիմաց ամերիկյան մոնոպոլիաներն ստացել են 2,5 դոլար շահույթ։ Սակայն ստրատեգիական գլխավոր նպատակն է՝ թույլ չտալ, որ երիտասարդ պետությունները պոկվեն տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմից։ Նրանք ամեն կերպ խոչընդոտում են հասարակական զարգացմանը, օժանդակում են առաջին հերթին երիտասարդ պետությունների ներքին ռեակցիոն ուժերին։

Պատահական չէ, որ ԱՄՆ-ի կողմից օտար պետություններին տրվող «օգնության» $^{3}/_{4}$-ը գնում է ռազմական նպատակներով։ Շատ հաճախ ոչ ռազմական նպատակներով տրվող տնտեսական «օգնությունը» նույնպես կապվում է ագրեսիվ, ռազմական պայմանների հետ։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի պետական քարտուղարի միջազգային կազմակերպությունների գծով օգնական Կլիվլենդի պլանով Կոնգոյի էկոնոմիկայի զարգացման համար «ֆինանսական միջազգային օգնությունը» տարեկան կկազմի 175 միլիոն դոլար, որից 60—70 միլիոնը կտրամադրի ԱՄՆ-ը, իսկ մնացածը՝ Անգլիան, ԳՖՌ-ն, Բելգիան, ինչպես նաև «ընդհանուր շուկայի» զարգացման ֆոնդը։ Սակայն այդ «օգնությունն» ստանալու գլխավոր պայմանն այն է, որ Կոնգոյի բանակը վերակառուցվի ՆԱՏՕ-ի ռազմական մասնագետների ղեկավարությամբ։



Երիտասարդ անկախ պետություններին ցույց տրվող իմպերիալիստական տնտեսական «օգնությունը» հարմարեցվում է ոչ թե «օգնություն» ստացող երկրների, այլ իմպերիալիստական մոնոպոլիաների շահերին։ Ինչպես ուղղակի հայտարարել է Արևմտյան Գերմանիայի տնտեսական համագործակցության հարցերի մինիստր Վալտեր Շեելը, տնտեսապես հետամնաց երկրներին արևմտագերմանական վարկերի մեծ մասը կտրվի ԳՖՌ-ից սարքավորումներ գնելու պայմանով։ Օրինակ, Կրուպի մոնոպոլիայի և Պակիստանի արդյունաբերական զարգացման ընկերության միջև կնքված պայմանագրի կետերից մեկը նախատեսում է, որ ցույց տրվող «օգնության» դիմաց Կրուպը պետք է արտակարգ իրավունքներ ունենա՝ կառուցվող պողպատաձուլական գործարանի համար սարքավորումներ մատակարարելու հարցում։ Բացի դրանից, Կրուպը պայման դրեց՝ ձեռք բերել գործարանի արժեթղթերի 10 տոկոսը և նշանակել իր ներկայացուցիչը գործարանի ղեկավար խորհրդում։ Կիպրոսի ազգային էկոնոմիկայի զարգացման 1961—1965 թվականների առաջին հնգամյա պլանով նախատեսված խնդիրների իրականացման համար դարձյալ իրենց «ծառայությունները» առաջարկեցին իմպերիալիստական տերությունները։ Նրանք երիտասարդ պետության վզին փաթաթեցին նրա տնտեսական կախվածությունը ուժեղացնող ստրկացուցիչ պայմանագիր։ Օրինակ, Կիպրոսի էլեկտրիֆիկացմանը տրամադրվող վարկի համար անգլիական մոնոպոլիաները սահմանեցին տարեկան յոթ տոկոս և այն էլ պայմանով, որ վարկի ամբողջ գումարով սարքավորումը գնվի հենց Անգլիայից։ Կամ, վերցնենք, օրինակ, Ալժիրի և Ֆրանսիայի միջև 1963 թվականի հունվարին կնքված պայմանագիրը, որով Ֆրանսիան պարտավորվեց ֆինանսական «օգնություն» ցույց տալ Ալժիրին։ Այդ պայմանագրով Ֆրանսիան իր համար նպաստավոր պարիտետ ապահովեց ալժիրյան վալյուտայի և ֆրանսիական ֆրանկի միջև։ Սակայն դա բոլորը չէ։ Ֆրանսիան պահանջեց, որ այդ «օգնությունն» օգտագործվի իր ցուցումներով, և նա կարողանա առանց հսկողության որոշել, թե ո՞ր ձեռնարկություններին պետք է տրամադրվի «օգնությունը»։

Կարելի է նման բազմաթիվ օրինակներ բերել։ Երիտասարդ անկախ պետություններին մոնոպոլիաների կողմից ցույց տրվող յուրաքանչյուր «օգնություն» մի օրինակ է՝ ապացուցելու, որ երիտասարդ պետությունների նկատմամբ իմպերիալիստական տերությունների վարած տնտեսական քաղաքականությունը գործիք է իմպերիալիզմի դիրքերի պահպանման ու ամրապնդման համար և հակասում է երիտասարդ պետությունների ազգային շահերին։

Իմպերիալիստական մոնոպոլիաները տնտեսական քայքայիչ քաղաքականություն են վարում երիտասարդ պետությունների նկատմամբ այդ երկրների համար խիստ կարևոր նշանակություն ունեցող նաև մի այնպիսի բնագավառում, ինչպիսին արտաքին առևտուրն է։

Մեծ տարբերություններ կան կապիտալիստորեն զարգացած և գաղութային լծից ազատագրված տնտեսապես հետամնաց երկրների արտադրողական ուժերի զարգացման մակարդակների միջև։ Այսպես, օրինակ, վերջերս ազատագրված նախկին անգլիական գաղութներում աշխատանքի արտադրողականությունը 20 անգամ ցածր է, քան Անգլիայում։ Հնդկաստանում աշխատանքի արտադրողականությունը 10 անգամ ցածր է, քան ԱՄՆ-ում։ Նման տարբերու-

թյունները համաշխարհային շուկայում արտահայտվում են ոչ-համարժեքային փոխանակության մեջ։ Իմպերիալիստական տերությունները իրենց ապրանքները արժեքից ցածր վաճառելով, երիտասարդ պետությունները մոնոպոլիաների պատրաստի արտադրանքը գնելու համար վճարում են արժեքից բարձր։ Եվ, քանի որ կապիտալիստական համաշխարհային շուկայում հումքի նկատմամբ պահանջն աճում է ավելի դանդաղ, քան արդյունաբերական պատրաստի արտադրանքի նկատմամբ, ուստի տնտեսապես հետամնաց երկրների արտահանումների հիմնական պրոֆիլը կազմող հումքի գներն ունեն անկման տենդենց. և ընդհակառակը՝ զարգացած երկրներից արտահանվող արդյունաբերական պատրաստի արտադրանքի գներն ունեն բարձրացման տենդենց։ Այսպես, եթե արտահանման գների 1953 թվականի մակարդակն ընդունենք 100, ապա հումքի գների 1960 թվականի ինդեքսը կկազմի 94, մինչդեռ արդյունաբերական պատրաստի արտադրանքինը՝ 109։ Գների նման «մկրատի» պատճառով հումք արտահանող երկրները համաշխարհային առևտրից ստացվող միջոցներով այսօր կարողանում են ներմուծել 20—25 տոկոսով ավելի քիչ պատրաստի արտադրանք, քան սրանից 10 տարի առաջ։

Իմպերիալիստական տերությունների հետ կատարվող ոչ-համարժեքային փոխանակության հետևանքով տնտեսապես հետամնաց երկրները տարեկան կորցնում են 14—16 միլիարդ դոլար։ Այս եղանակով իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից իրականացվող թալանը ներկայումս ավելի ուժեղ է, քան մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, քանի որ այդ ժամանակաշրջանում արտաքին առևտրական շրջանառության ծավալը համարյա կրկնապատկվել է։

Ոչ-համարժեքային փոխանակության հետևանքով տնտեսապես հետամնաց երկրներն ավելի քիչ չափով են կարողանում ներմուծումների դիմաց իրենց պարտավորությունները ծածկել արտահանումներից ձեռք բերված միջոցներով։ Եթե Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի տնտեսապես հետամնաց երկրների արտաքին առևտրի դեֆիցիտը 1955 թվականին կազմել է արտահանումից ստացված միջոցների գումարի 4,4 տոկոսը, ապա 1961 թվականին այն հասել է 10,6 տոկոսի։ ԱՄՆ-ի, Անգլիայի և Արևմտյան Գերմանիայի հետ կատարվող արտաքին առևտրում Հնդկաստանի առևտրական բալանսի դեֆիցիտը 1956 թվականին կազմել է 69 միլիոն ֆունտ ստեռլինգ, իսկ 1960/1961 թվականներին՝ 280 միլիոն։

Իմպերիալիստական տերությունների և տնտեսապես հետամնաց երկրների միջև կատարվող առևտրի ոչ համարժեքայնությունը ունի աճման տենդենց, քանի որ կապիտալիստական համաշխարհային շուկայում տիրապետում են մոնոպոլիաները։

Ժամանակակից աշխարհում կազմավորվել են երկրների երեք խմբեր՝ սոցիալիստական, չեզոք և իմպերիալիստական։ Սոցիալիզմի ուժերի աճը և ազգային-ազատագրական շարժումների հզոր վերելքը խիստ թուլացնում են իմպերիալիզմի դիրքերը։ Դրանով է բացատրվում այն, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ներկա՝ երրորդ էտապում ուժեղանում է իմպերիալիստական տերությունների միավորման տենդենցը, չնայած նրանց միջև գոյություն ունեցող հակասությունների խորացմանը։ Այդ տենդենցն արտահայտվեց Եվրոպայի «ինտեգրացման» պրոցեսների մեջ, որոնք սկիզբ առան 50-ական թվականների երկրորդ կեսին։ Տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է, թե ինչպիսի նպատակներ են հետապնդում այդ միջպետական մոնոպոլիստական միավորումները (հատկապես նրանցից առավել հզորը՝ «վեցյակը») երիտասարդ պետությունների և, առհասարակ, տնտեսապես հետամնաց երկրների նկատմամբ։



Արևմտաեվրոպական 6 երկրների՝ Ֆրանսիայի, ԳՖՌ-ի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի ջանքերը Եվրոպայի տնտեսական համագործակցության կամ «ընդհանուր շուկայի» կազմավորման ուղղությամբ նպատակ ունեն արտաքին առևտրում ստեղծել մաքսային պատնեշներ և Աֆրիկայի գաղութային երկրներն ընդգրկել «Ընդհանուր շուկայի» սիստեմի մեջ։ Այդ միջոցառումները, բնականաբար, պետք է անմիջականորեն շոշափեին երիտասարդ պետությունների կենսական շահերը։ Այդ է պատճառը, որ մեր օրերում տնտեսապես հետամնաց համարյա բոլոր երկրների և իմպերիալիզմի տնտեսական հարաբերությունների հարցերը այս կամ այն չափով առնչվում են «ընդհանուր շուկայի» գործունեության հետ։

«Ընդհանուր շուկան» վերացնում է մաքսերը 6 երկրների միջև կատարվող փոխադարձ առևտրում և պահպանում է միասնական բարձր մաքսեր՝ այլ երկրներից կատարվող ներմուծումների համար։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ դա լուրջ հարված է Արևմտյան Եվրոպայի հետ առևտրական հարաբերությունների մեջ գտնվող երկրներին։ Ինչպես նշված է Հնդկաստանի առևտրաարդյունաբերական պալատների ֆեդերացիայի կազմած զեկուցագրում, «...մաքսերի և ներմուծման կվոտաների կրճատման ու լրիվ վերացման միջոցով Եվրոպայի տնտեսական համագործակցության ներսում ռեգիոնալ առևտրի խրախուսումը բացասաբար կանդրադառնա Ասիայի երկրների առևտրի վրա»։ Եվ իրոք, եթե 1961 թվականին «ընդհանուր շուկայի» ներքին առևտուրն աճեց 16 տոկոսով, ապա այդ նույն 6 պետությունների առևտուրը տնտեսապես հետամնաց երկրների հետ աճեց ընդամենը 1 տոկոսով։ 1961 թվականին, 1957 թվականի մակարդակի վրա մնացին վառելիքի և սննդամթերքների ներմուծումները Մերձավոր և Միջին Արևելքի երկրներից , հանքաքարի ներմուծումները՝ Հարավ-Արևելյան Ասիայից, իսկ վառելիքի ներմուծումը Հարավ-Արևելյան Ասիայից և Լատինական Ամերիկայի երկրներից նույնիսկ կրճատվեց։ Այսպիսով, արևմտաերոպական մոնոպոլիստական կապիտալի մանևրները լրացուցիչ դժվարություններ են ստեղծում երիտասարդ պետությունների համար։

Աֆրիկյան երկրները «ընդհանուր շուկայի» սիստեմի մեջ ընդգրկելու ծրագիրը՝ «Էվրաֆրիկան», նույնպես ամբողջովին ուղղված է «միացված» երկրների շահերի դեմ։ «Ընդհանուր շուկային» «միացված» են 26 երկրներ, որոնց մեծ մասը նախկին գաղութային, այժմ անկախ երիտասարդ պետություններ են, իսկ մյուսները՝ դեռևս գաղութային ստրկության մեջ գտնվող երկրներ։ Արևմտաերոպական մոնոպոլիստական կապիտալը «Եվրաֆրիկան» հորինել է գաղութային ռեժիմը երկարացնելու, իսկ երիտասարդ անկախ պետություններն ագրարային-հումքային կցորդների դերում պահելու համար։ Սա տարբեր երկրների մոնոպոլիաների համախմբված պայքարն է երիտասարդ պետությունների դեմ։ Այդ քաղաքականության հետևանքով հանքային ու գյուղատնտեսական հումքի արժեքավոր պաշարները մնում են մոնոպոլիաների ձեռքում, իսկ տնտեսապես հետամնաց երկրների էկոնոմիկան շարունակում է զարգանալ միակողմանի, գաղութային տնտեսության այլանդակ կառուցվածքով։

Օրինակ, «միացված» երկրներից Սենեգալի արտահանումների $2/3$-ը արախիսի բաժինն է, նախկին Հասարակածային Աֆրիկայի արտահանումների կեսը՝ բամբակը և այլն։ Նման վիճակը պահպանելու համար մոնոպոլիաները շատ ջանքեր են թափում, մինչդեռ աֆրիկյան երկրների համար կենսական նշանակություն ունեցող խնդիրներում խիստ անտարբեր են։ Այսպես, օրինակ, նախատեսված էր 219 միլիոն դոլար հատկացնել որպես «ասոցիացված» երկրների զարգացման ֆոնդ, դրա փոխարեն ծախսվեց ընդամենը 55 միլիոն, այսինքն՝ պայմանագրով սահմանված գումարի մեկ քառորդը։ Ըստ որում չթույլատրվեց աֆրիկյան շահագրգռված երկրների ներկայացուցիչներին մասնակցել նույնիսկ այդքան կրճատված գումարի օգտագործման կոնկրետ կանոնները որոշելու գործին։

«Ընդհանուր շուկան» խիստ անմխիթար է դարձնում «միացված» երկրներում ազգային արդյունաբերության զարգացման հեռանկարները։ Պատահական չէ, որ «սև մայրցամաքի դեմքը վերափոխելու» և պրոպագանդիստական այլ խոստումներով մոնոպոլիաները կաշվից դուրս են գալիս համոզելու համար, որ «միացված» երկրները մնան «Եվրաֆրիկայի» կազմում։ «Ընդհանուր շուկան» ոչ մի լավ բան չբերեց երիտասարդ պետություններին, ավելին, լրացուցիչ կապանքներ ստեղծելով, վատթարացրեց նաև նրանց առևտրի պայմանները «ընդհանուր շուկայի» մեջ չմտնող երկրների հետ։

«Եվրաֆրիկայի» սիստեմով «միացված» երկրները պարտավոր են ապրանքների և կապիտալի արտահանման բնագավառում «ընդհանուր շուկայի» մասնակից 6 պետությունների համար ստեղծել նույն արտոնյալ պայմանները, որոնցից նախկինում օգտվում էին միայն մետրոպոլիաները։ Ստացվում է, որ, եթե գաղութային կախման մեջ գտնվելու ժամանակ այդ երկրների էկոնոմիկայի զարգացումը ենթարկվում էր միայն մեկ երկրի՝ մետրոպոլիայի մոնոպոլիաների շահերին և ճնշվում էր միայն վերջինների կողմից, ապա քաղաքական անկախություն նվաճելուց հետո երիտասարդ «ասոցիացված» պետությունների էկոնոմիկայի զարգացման խնդիրներն արդեն պետք է բախվեն շատ իմպերիալիստական երկրների մոնոպոլիաների շահերին։

Քաղաքական անկախություն նվաճելուց հետո նախկին գաղութային երկրների ժողովուրդների առջև ամբողջ հասակով կանգնել է տնտեսական անկախության հասնելու խնդիրը, որն իրականացնելուց հետո միայն երիտասարդ պետությունները կարող են բազմաճյուղ տնտեսություն ստեղծելու միջոցով վերջ տալ էկոնոմիկայի միակողմանի զարգացմանը, լիկվիդացնել աղքատությունը, սովն ու հետամնացությունը։ Իսկ այդ ամենի հիմքը ինդուստրացումն է։ Երիտասարդ պետությունները պետք է ապահովեն արդյունաբերության, հատկապես նրա վերամշակող ճյուղերի արագ ստեղծումն ու զարգացումը։ Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի ինդուստրիալ հիմք, որը զարգանալով ընդունակ լինի աշխատանքի և հումքի ազգային ռեսուրսները վերածել արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, շինարարության, կապի զարգացման համար պահանջվող մեխանիզմի։

Մի շարք երիտասարդ պետություններ արդեն սկսել են արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղերի հիմքը դնել, ինչպիսիք են՝ մետաղաձուլությունը, մեքենաշինությունը և քիմիական արդյունաբերությունը։ Եթե Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի տնտեսապես հետամնաց երկրներում 1939 թվականին արտադրվել է 1,3 միլիոն տոննա պողպատ, ապա 1956 թվականին արտադրվել է ավելի քան 5,1 միլիոն, իսկ 1960 թվականին արդեն 11,6 միլիոն տոննա։ Մոտավոր կանխատեսումներով 1966 թվականին նրանք կարտադրեն 32 միլիոն տոննա պողպատ։ Սա թեև զգալի նվաճում է նրանց համար, այնուամենայնիվ խիստ փոքր տեսակարար կշիռ է կազմում կապիտալիստական աշխարհի պողպատի ամբողջ արտադրության մեջ։

Դեռևս տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմից չպոկված երիտասարդ անկախ պետությունները լուրջ դժվարություններ ունեն ինդուստրացումն արագացնելու բնագավառում։ Թեև նրանք արդեն մեծ մասամբ հասել են ազգային ռեսուրսներն իրենց հայեցողությամբ արդյունավետ օգտագործելու իրավունքին, սակայն միջոցների մոբիլիզացման, կուտակման նրանց հնարավորությունները սահմանափակ են։ Այդ իսկ պատճառով երիտասարդ պետությունների առաջնահերթ խնդիրներից մեկը օտար մոնոպոլիաներին պատկանող ձեռնարկությունների ազգայնացումն է, որն արդեն իրականացվում է։ Գաղութային ստրկությունից ազատագրված շատ երկրներում մեծ մասամբ ազգայնացվել են բանկերն ու ֆինանսա-վարկային հիմնարկները։ Մի քանի երկրներում պետական վերահսկողություն է սահմանվել արտաքին առևտրի վրա, ազգայնացվել են արդյունաբերության առաջատար ճյուղերի ձեռնարկությունները։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ օտար մոնոպոլիաները ձգտում են բոլոր միջոցներով խանգարել երիտասարդ պետությունների համար այնքան կենսական նշանակություն ունեցող ազգայնացման գործը, ձախողել այդ երկրների տնտեսական առաջընթացի գլխավոր պայմանը՝ հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական ռեվոլյուցիաների զարգացումը։

Ներկա պայմաններում, երբ երիտասարդ պետություններում ձեռք բերված անկախությունը մեծ մասամբ ի սպաս է դրվում այդ երկրների սոցիալական, տնտեսական և կուլտուրական առաջընթացի խնդիրների իրականացմանը, երբ գոյություն ունեն կապիտալիստական և սոցիալիստական երկու հակադիր սիստեմներ, նախկին գաղութային երկրների զարգացման պայմանների համար նոր հեռանկարներ են բացվել։ Ինչքան սերտ լինի երիտասարդ պետությունների տնտեսական համագործակցությունը սոցիալիստական սիստեմի հետ, այնքան ավելի հաջողությամբ նրանք կկարողանան ընթանալ միջազգային մոնոպոլիստական կապիտալից վերջնականապես ազատագրվելու ուղիով։ Սոցիալիստական երկրների ֆինանսա-տնտեսական և տեխնիկական օգնությունը երիտասարդ պետություններին լայն հնարավորություններ է ընձեռում ինդուստրացման, էկոնոմիկայի գաղութային կառուցվածքի լիկվիդացման և ժողովրդական տնտեսության բազմակողմանի զարգացման համար։ Բավական է հիշել Հնդկաստանում Բհիլայի մետաղաձուլական գործարանի և ՄԱՌ-ում Ասուանի ամբարտակի կառուցման օրինակները։

Սոցիալիստական երկրների հետ նախկին գաղութային երկրների համագործակցության զարգացումը երիտասարդ պետությունների համար ունի ոչ միայն ուղղակի, այլև անուղղակի օժանդակության նշանակություն։ Ամեն անգամ, երբ տնտեսական բլոկադայի, կամ այլ եղանակներով իմպերիալիզմը աշխուժացնում է քայքայիչ գործունեությունը երիտասարդ պետությունների նկատմամբ, օգնության է հասնում սոցիալիստական աշխարհը, ընդլայնելով բամբակի, բրնձի, շաքարի, կաուչուկի ու այլ ապրանքների գնումները և փոխադարձաբար՝ անհրաժեշտ սարքավորումների մատակարարումները։ Այս լուրջ գործոնի հետ չեն կարող հաշվի չնստել իմպերիալիստական մոնոպոլիաները։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 94-ԱՄՅԱԿԸ

## ԿՈՎԿԱՍԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԵՐԿԵՐՈՒՄ

Անցյալ տարի լույս տեսան Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուի 41 և 42-րդ հատորները, որոնք տպագրության է պատրաստել ՍՄԿՊ Կենտկոմին առնթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը։

Հատորներն ընդգրկում են կոմունիստական պարտիայի և սովետական պետության հիմնադրի ու ղեկավարի 1920 թվականի ապրիլից մինչև 1921 թվականի մարտը գրած աշխատությունները, որոնք արտացոլում են սովետների ռեսպուբլիկայի կյանքի այն վճռական ժամանակաշրջանը, երբ մեր ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վերջին ջախջախիչ հարվածները հասցրեց ինտերվենտներին ու ներքին հակառևոլյուցիոն ուժերին և անցավ սոցիալիստական խաղաղ շինարարության խնդիրների իրականացմանը։

Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուի 41 և 42-րդ հատորների մեջ ամփոփված աշխատությունները տեսական ու քաղաքական հսկայական նշանակություն ունեն ինչպես մեր պարտիայի և սովետական ժողովրդի, այնպես էլ միջազգային կոմունիստական շարժման համար։

41-րդ հատորը բացվում է Վ. Ի. Լենինի ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» հանճարեղ աշխատությամբ, որը կարևոր էտապ է մարքսիստական-լենինյան տեսության զարգացման, պատմական նոր պայմաններում կոմունիստական պարտիայի ստրատեգիայի ու տակտիկայի մշակման գործում։ Նույն հատորում մեծ տեղ են գրավում Կոմունիստական ինտերնացիոնալի երկրորդ կոնգրեսի նախապատրաստմանը վերաբերող փաստաթղթերը, կոնգրեսում Լենինի թեզիսները, նրա կարդացած զեկուցումները, որոնք լրացնում և զարգացնում են ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» գրքի դրույթները։ Վ. Ի. Լենինն ամենաեռանդուն մասնակցությունն է ունեցել ազգային գաղութային հարցի վերաբերյալ կոնգրեսի որոշումների մշակմանը, որոնց հիմքում ընկած էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան սկզբունքները։

ՌԿ(բ)Պ Համամիութենական IX կոնֆերանսում, Մոսկվայի սովետի, ՌԿ(բ)Պ Մոսկվայի կոմիտեի և արհմիությունների Մոսկվայի քաղխորհրդի պլենումի նիստերում, Մոսկվայի նահանգական կոնֆերանսում և արհմիությունների համագումարում սովետական ռեսպուբլիկայի միջազգային ու ներ-



քին դրության մասին արտասանած և մի շարք այլ ճառերում ու ելույթներում Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում Լեհաստանի և գեներալ Վրանգելի կողմից սովետական Ռուսաստանի դեմ սանձազերծած պատերազմի ընթացքին։ Նա կոչ էր անում աշխատավոր մասսաներին՝ լարել բոլոր ուժերը ինտերվենտներին և սպիտակգվարդիականներին պարտության մատնելու համար։ Սովետների համար այդ ծանր օրերին Վ. Ի. Լենինը խոր համոզվածությամբ նշում էր, որ բուրժուական աշխարհն ընթանում է դեպի կործանում, որովհետև «կապիտալիստները կործանվող դասակարգ են՝ որքան էլ հարուստ լինեն և որքան էլ ուժեղ, իսկ մենք հանդիսանում ենք դեպի հաղթանակը բարձրացող դասակարգ» (հ. 42, էջ 3)։

Այդ տարիներին Վ. Ի. Լենինը մշակում էր հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության հիմնական սկզբունքները։ «...մենք ունենք ոչ միայն դադար,— ասում էր նա 1920 թվականի նոյեմբերի 21-ին,—մենք ունենք նոր շրջան, երբ մեր հիմնական միջազգային գոյությունը կապիտալիստական պետությունների ցանցում նվաճված է» (հ. 42, էջ 22)։ Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունն իր կողմն է գրավում բոլոր երկրների աշխատավորական ամենալայն մասսաներին։ Նա նշում է. «...մենք ասել և ասում ենք՝ սոցիալիզմն ունի օրինակի ուժ»։ Բռնությունն իր ուժն ունի նրանց նկատմամբ, ովքեր ուզում են վերականգնել իրենց իշխանությունը։ Բայց դրանով էլ հենց սպառվում է բռնության նշանակությունը, իսկ այնուհետև արդեն ուժ ունի ազդեցությունը և օրինակը։ Պետք է գործնականորեն ցույց տալ կոմունիզմի նշանակությունը» (էջ 75)։

1920 թվականի հոկտեմբերի 2-ին ՌԿԵՄ III համագումարում արտասանած պատմական ճառում («Երիտասարդական միությունների խնդիրները») Վ. Ի. Լենինը երիտասարդության առաջ խնդիր է դնում կոմունիզմ սովորել։ «Կոմունիստ կարելի է դառնալ միայն այն ժամանակ,— ասում է Վ. Ի. Լենինը,— երբ հիշողությունդ հարստացնես այն բոլոր հարստությունների իմացությամբ, որ մշակել է մարդկությունը» (հ. 41, էջ 305)։

Հատորներում զետեղված բազմաթիվ փաստաթղթեր նվիրված են պարտիական, պետական ու տնտեսական շինարարության հարցերին, էլեկտրիֆիկացիայի նշանակության հիմնավորմանը՝ երկրի ժողովրդական տնտեսության վերակառուցման ու սոցիալիստական զարգացման գործում։ Սովետների Համառուսաստանյան VIII համագումարում տված զեկուցման մեջ Վ. Ի. Լենինն առաջ քաշելով իր հանճարեղ ֆորմուլան «Կոմունիզմը դա Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան» նշում էր, որ եթե Ռուսաստանը ծածկվի էլեկտրակայանների և հզոր տեխնիկական սարքավորումների խիտ ցանցով, այն ժամանակ մեր կոմունիստական տնտեսական շինարարությունը օրինակ կդառնա գալիք սոցիալիստական Եվրոպայի ու Ասիայի համար։ Վ. Ի. Լենինի այս մարգարեական խոսքերը լենինյան պարտիայի իմաստուն ղեկավարությամբ այժմ իրականություն են դարձել։ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ արդի պայմաններում կյանքը, գիտատեխնիկական առաջադիմությունը իրավունք են տալիս «Կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը» լենինյան ֆորմուլան լրացնել ամբողջ ժողովրդական տնտեսության քիմիացման դրույթով։ Այժմ մենք ամենայն իրավամբ

կարող ենք ասել՝ կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը, գումարած ժողովրդական տնտեսության քիմիացումը։

Հատորներում զետեղված մի շարք հոդվածներում և ճառերում տեսնում ենք Վ. Ի. Լենինի կողմից պարտիական աշխատանքի ձևերի ու մեթոդների մշակումը։ Ժողովրդական տնտեսության վերակառուցման խաղաղ աշխատանքի անցնելու պայմաններում ջախջախիչ հարված հասցնելով տրոցկիստներին և այլ հակապարտիական խմբերի, նա լայն գործունեություն էր ծավալում պարտիայի միասնության ամրապնդման, սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման գործում պարտիայի դերի բարձրացման, պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում արհմիությունների դերի ու խնդիրների մշակման ուղղությամբ։ Միաժամանակ Վ. Ի. Լենինը մանրազնին մշակում է սոցիալիստական հասարակության կառուցման ձևերն ու մեթոդները, խաղաղ շինարարության պայմաններում բանվոր դասակարգի ու գյուղացիության փոխհարաբերության հարցերը։ 42-րդ հատորում զետեղված է «Գյուղացիության մասին թեզիսների նախնական, սևագիր ուրվագծերը», որով Լենինը ձևակերպել է պարենմասնատրումը պարենհարկով փոխարինելու հիմնական դրույթները։

Մի շարք աշխատություններում Վ. Ի. Լենինը մշակում է կուլտուրական ռևոլյուցիայի խնդիրները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Մի հոդվածի շրջանակները չափազանց նեղ են թեկուզ և մոտավոր պատկերացում տալու այն տիտանական գործունեության մասին, որ ծավալել էր Վ. Ի. Լենինը սոցիալիզմի կառուցման շեմին։ Ուստի մենք նպատակահարմար ենք գտնում սահմանափակվել Վ. Ի. Լենինի երկերի 41 և 42-րդ հատորներում տեղ գտած այն աշխատությունների մասին խոսելով, որոնք վերաբերում են Կովկասի ժողովուրդների ռևոլյուցիոն ազատագրական, սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման համար նրանց մղած հերոսական պայքարի հարցերին։

★ ★ ★

Դեռևս իր ռևոլյուցիոն գործունեության վաղ շրջանից Վ. Ի. Լենինն զբաղվում էր Կովկասի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների ուսումնասիրությամբ, ուշադիր հետևում այստեղ զարգացող ռևոլյուցիոն իրադարձություններին, ղեկավարում էր ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը Կովկասում։ Նա անողոքաբար մերկացրել էր ցարիզմի գաղութարարական քաղաքականությունը Կովկասի ժողովուրդների նկատմամբ, ցույց տալով նրանց ազատագրության միակ ճիշտ ուղին, որը հնարավոր էր Ռուսաստանի բանվոր դասակարգի հետ դաշնակցած և նրա ղեկավարությամբ։

Վ. Ի. Լենինի առաջնորդությամբ հաղթանակած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան նոր դարաշրջանի՝ սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի սկիզբը դրեց։ Մեծ Հոկտեմբերի, սովետական իշխանության ազատագրական գաղափարները հասան Կովկասի բոլոր ծայրամասերը, արթնացրին նրա ժողովուրդներին և համախմբեցին լենինյան դրոշի շուրջը։

Լենինյան պարտիայի ղեկավարությամբ սովետական իշխանության համար կովկասյան ժողովուրդների 1917—1921 թթ. մղած հերոսական պայքա-



րը պսակվեց լիակատար հաղթանակով. Հյուսիսային Կովկասը, Ադրբեջանը, Հայաստանն ու Վրաստանը դառնալով սոցիալիստական երկրներ՝ կամավոր կերպով միավորվեցին մեծ ու հզոր Սովետական Միության մեջ։

Սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման համար կովկասյան ժողովուրդների մղած ողջ պայքարը անխզելիորեն կապված է Վ. Ի. Լենինի անվան ու գործունեության հետ։ Նշված հատորներում զետեղված բազմաթիվ աշխատությունները, ինչպես նաև Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության տարեգրության տվյալները այդ բանի փայլուն ապացույցն են։

1920 թվականի մայիսի 4-ին Վ. Ի. Լենինը մասնակցում է պարտիայի Կենտկոմի քաղբյուրոյի նիստին, որտեղ այլ կարևոր հարցերի հետ միասին քննարկվում է նաև Վրաստանի հարցը։ Նույն օրը Վ. Ի. Լենինի նախագահությամբ տեղի է ունենում Ժողկոմսովետի նիստը, որը հաստատում է Ադրբեջանի սովետական ռեսպուբլիկայի կառավարությանն ուղղված ողջույնի հեռագրի տեքստը։ Հեռագրում ասված է. «Ժողկոմսովետը ողջունում է անկախ Ադրբեջանական ռեսպուբլիկայի աշխատավոր մասսաների ազատագրումը և հաստատ վստահություն է հայտնում, որ Ադրբեջանի անկախ ռեսպուբլիկան իր Սովետական կառավարության ղեկավարությամբ ՌՍՖՍՌ-ի հետ միասին կպաշտպանի իր ազատությունն ու անկախությունը Արևելքի և ճնշված ժողովուրդների ոխերիմ թշնամուց՝ իմպերիալիզմից» (հ. 41, էջ 119)։

1920 թվականի գարնանն ու ամռանը Սովետական Ռուսաստանի համար ամենածանր պայմաններում Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ պարտիայի Կենտկոմի քաղբյուրոն իր նիստերում քննարկում է Դոնում կազակների մարզային համագումարի, Բաքվի նավթահանքերի, Հյուսիսային Կովկասում պարտիական աշխատանքի ղեկավարման և սովետական իշխանության հաստատման, Կովկասյան ռազմաճակատի վիճակի, Բաքվում արևելքի ժողովուրդների համագումարի կազմակերպման ու անցկացման, Ադրբեջանին, Վրաստանին, Հայաստանին օգնություն ցույց տալու և Կովկասին վերաբերող այլ կարևոր հարցեր։

1920 թվականի հունիսին Կոմունիստական ինտերնացիոնալի երկրորդ համագումարի համար Վ. Ի. Լենինը գրում է ազգային ու գաղութային հարցերի վերաբերյալ թեզիսների սկզբնական ուրվագիծը՝ խնդրելով ընկերներին քննության առնել այն և տալ իրենց կարծիքը մի շարք կետերի, այդ թվում նաև արևելյան ու կովկասյան ժողովուրդների հարաբերությունների հարցի մասին։ Մերկացնելով բուրժուական դեմոկրատիայի սուտն ու կեղծավորությունը, Վ. Ի. Լենինն ընդգծում է, որ այդ դեմոկրատիային հատուկ է վերացական կամ ձևական հարցադրումը ընդհանրապես հավասարության, ինչպես և ազգային հավասարության մասին։

Վ. Ի. Լենինը կոմունիստների ամբողջ քաղաքականության անկյունաքարը ազգային և գաղութային հարցում համարում էր բոլոր ազգերի ու երկրների աշխատավոր մասսաների մերձեցումը շահագործողների դեմ համատեղ ռևոլյուցիոն պայքար մղելու համար, առանց որի անհնար կլիներ ազգային ճնշման և իրավազրկության ոչնչացումը։ Կոմունիստական պարտիայի և աշխարհում առաջին սովետական պետության ղեկավարը խնդիր էր դնում շարունակ պարզաբանել, որ միայն սովետական իրավակարգն է ի վիճակի տալու ազգերի իրական հավասարություն։ Նա բոլոր երկրների կոմունիստներին պար-

տավորեցնում էր զգուշությամբ և առանձնահատուկ ուշադրությամբ վերաբերվել ճնշված ժողովուրդների ազգային զգացմունքներին։

Կովկասում ազգային ճիշտ քաղաքականություն վարելու տեսանկյունից չափազանց կարևոր նշանակություն ունեն թեզիսների ուրվագծում Վ. Ի. Լենինի նշած այն հիմնական սկզբունքները, որոնք վերաբերում են առավել հետամնաց երկրներին ու ազգերին, որտեղ գերակշռում են ֆեոդալական կամ նահապետական գյուղացիական հարաբերությունները (հատ. 41, էջ 166—167)։ Ընդգծելով ֆեդերացիայի նշանակությունը, որպես անցման ձև դեպի տարբեր ազգերի աշխատավորների լիակատար միասնությունը, Վ. Ի. Լենինը գրում է, որ ֆեդերացիան արդեն գործնականում դրսևորել է իր նպատակահարմարությունը ՌՍՖՍՌ-ի հետ ունեցած սովետական մյուս ռեսպուբլիկաների հարաբերություններում՝ (հունգարական, ֆիննական, լատվիական՝ անցյալում, ադրբեջանական, ուկրաինական՝ ներկայումս), այնպես էլ ՌՍՖՍՌ-ի ներսում այն ազգությունների վերաբերմամբ, որոնք առաջ չեն ունեցել ոչ պետական գոյություն, ոչ ավտոնոմիա (օրինակ, Բաշկիրական ու Թաթարական ավտոնոմ ռեսպուբլիկաները ՌՍՖՍՌ-ում, որոնք ստեղծվել են 1919 և 1920 թվականներին (հատ. 41, էջ 164)։

1920 թվականի ամռանը կրկին ուժեղանում է Անտանտի երկրների և ԱՄՆ-ի ռազմական ինտերվենցիայի վտանգը։ Կովկասի նկատմամբ զավթողական պլաններով հանդես է գալիս Թուրքիան։

1920 թվականի հոկտեմբերի 9-ին Մոսկվայի պարտիական կազմակերպության ակտիվի խորհրդակցությունում տված զեկուցման մեջ վերլուծելով սովետական ռեսպուբլիկայի ներքին և արտաքին դրությունը, Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Թուրքեստանում և Կովկասում դրությունը համեմատաբար բարդ է։ Վերջերս թուրքերը սկսել են հարձակվել Հայաստանի վրա Բաթումը և ապա, կարող է պատահել, նաև Բաքուն գրավելու համար։ Հասկանալի է, որ այդ հարցում մենք պետք է հանդես բերենք առավելագույն զգուշություն» (հատ. 41, էջ 339—340)։ Վ. Ի. Լենինն անձամբ կարգադրություններ էր անում՝ շտապ միջոցներ ձեռք առնել ցամաքից ու ծովից Բաքվի մատույցներն ամրապնդելու համար, հետաքրքրվում էր Կովկասում կոնտրռևոլյուցիոն բանդաների դեմ մղվող պայքարի ընթացքով, հնարավորություններ որոնում մենշևիկյան Վրաստանի ու դաշնակցական Հայաստանի հետ ՌՍՖՍՌ-ի հարաբերությունների խաղաղ կարգավորման ուղղությամբ։

Արևելքի ժողովուրդների նկատմամբ Վ. Ի. Լենինի հոգատարության մասին է վկայում 41-րդ հատորում զետեղված ՌԿ(բ)Պ քաղբյուրոյի որոշման նախագիծը արևելյան ժողովուրդներով բնակեցված վայրերում ՌԿ(բ)Պ-ի խնդիրների մասին։ Նոյեմբերի 27-ին պարտիայի Կենտկոմի քաղբյուրոյի նիստում ընդունվում է Վ. Ի. Լենինի գրած որոշումը Կովկասի դրության մասին, որտեղ նշված են Ադրբեջանի, Վրաստանի ու Հայաստանի նկատմամբ կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության քաղաքականության հիմնական խնդիրները։ «Վրաստանի, Հայաստանի, Թուրքիայի և Պարսկաստանի նկատմամբ,— ասված է որոշման մեջ,— ընդունել առավելագույն հաշտվողական քաղաքականություն, այսինքն ամենից շատ ուղղված այն բանին, որ խույս տրվի պատերազմից։

Խնդիր չդնել արշավել ոչ Վրաստանի, ոչ Հայաստանի և ոչ էլ Պարսկաստանի վրա։



Հիմնական խնդիրը համարել Ադրբեջանի պաշտպանությունը և ամբողջ Կասպիական ծովին հաստատապես տիրելը» (հ. 42, էջ 47)։

Արևմտյան իմպերիալիստների կամակատար մենշևիկներն ու դաշնակները հրաժարվեցին Սովետական Ռուսաստանի բարյացակամ վերաբերմունքին ընդառաջելուց և օգնությունից։ Նրանք իրենց օտարերկրյա տերերի հետ միասին խճճում էին դրությունը, ձգտում պատերազմի։ Անտանտի դիվանագետները հրահրում էին պատերազմ թուրքերի և դաշնակցական Հայաստանի միջև, որը հայ ժողովրդին կանգնեցրեց ֆիզիկական բնաջնջման վտանգի առջև։

1920 թվականի նոյեմբերի 21-ին ՌԿ(բ)Պ Մոսկվայի նահանգական կոնֆերանսում Սովետական Ռուսաստանի արտաքին ու ներքին դրության և պարտիայի խնդիրների մասին արտասանած իր ճառում Վ. Ի. Լենինը խոսում է Կովկասում ստեղծված շատ բարդ պայմանների մասին, որոնք օրավուր կարող են պատերազմի հասցնել։ «Թերթերի հաղորդագրություններն այն մասին, թե ինչ է կատարվում Հայաստանում, Թուրքիայում, որոշ պատկերացում են տալիս մեզ այդ մասին.— ասում էր Վ. Ի. Լենինը.— Ստեղծվում է չափազանց խճճված դրություն»։ Սակայն Լենինը լիակատար վստահություն էր հայտնում, որ այդ բարդ դրությունից սովետական ռեսպուբլիկան դուրս կգա էլ ավելի ուժեղացած ու ամրապնդված (հ. 42, էջ 25)։

Ոգեշնչված լենինյան հոգատարությամբ և արտաքին ու ներքին թշնամիների դեմ Սովետական Ռուսաստանի տարած պատմական հաղթանակներով, Հայաստանի և Վրաստանի ժողովուրդները զինված ապստամբության միջոցով տապալեցին դաշնակցականների, մենշևիկների ու նրանց օտարերկրյա տերերի լուծը և կարմիր բանակի եղբայրական օգնությամբ իրենց երկրներում հաստատեցին սովետական կարգեր։

42-րդ հատորում զետեղված է Վ. Ի. Լենինի պատմական հեռագիրը Հայաստանի ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահ Ս. Կասյանին։ «Հանձին ձեզ,— ասված է հեռագրում,— ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Չեմ կասկածում, որ դուք կգործադրեք բոլոր ջանքերը՝ Հայաստանի, Թուրքիայի, Ադրբեջանի աշխատավորների միջև եղբայրական համերաշխություն հաստատելու համար» (հ. 42, էջ 54)։

Վ. Ի. Լենինը բարձր գնահատական է տալիս Կովկասի աշխատավորության պայքարին։ 1920 թվականի դեկտեմբերի 22-ին Սովետների համառուսաստանյան VIII համագումարում տրված զեկուցման մեջ նա նշում է. «Արևելքում մեր քաղաքականությունը այս տարվա ընթացքում խոշոր հաջողություն ունեցավ։

Մենք պետք է ողջունենք Բուխարայի, Ադրբեջանի և Հայաստանի Սովետական ռեսպուբլիկաների կազմվելն ու ամրապնդվելը, որոնք վերականգնեցին ոչ միայն իրենց լիակատար անկախությունը, այլև իշխանությունը տվեցին բանվորների և գյուղացիների ձեռքը։ Այդ ռեսպուբլիկաներն ապացույցն ու հաստատումն են այն բանի, որ սովետական իշխանության գաղափարներն ու սկզբունքները մատչելի ու անմիջապես իրագործելի են ոչ միայն այն երկրներում, որոնք արդյունաբերական տեսակետից զարգացած են, ոչ միայն սոցիալական այնպիսի հենարան ունեցող երկրներում, ինչպիսին պրոլետա-

րիատն է, այլև այնպիսի հիմք ունեցող երկրներում ինչպիսին գյուղացիությունն է» (հ. 42, էջ 132)։

1921 թվականի փետրվարի 28-ին Մոսկվայի սովետի պլենումում՝ Սովետական Ռուսաստանի միջազգային ու ներքին դրության մասին արտասանած ճառում Վ. Ի. Լենինն անդրադառնալով Կովկասում զարգացող դեպքերին՝ վերլուծում է Հայաստանում ու Վրաստանում սովետական իշխանության հաղթանակի ու ամրապնդման համար աշխատավորության մղած պայքարը, ընդգծում, որ անհրաժեշտ է բոլոր միջոցներով օգնել Կովկասին։ «...մենք մեր բոլոր ջանքերը կգործադրենք, որպեսզի հանգցնենք Կովկասում բռնկված հրդեհը.— ասում է Վ. Ի. Լենինը.— Եվ այն, ինչ մեզ հաջողվեց ցույց տալ Արևմուտքում, այդ այն է, որ որտեղ Սովետական իշխանություն կա, այնտեղ ազգային ճնշումը տեղ չունի,— այդ մենք ցույց կտանք և Արևելքում» (հ. 42, էջ 357)։

42-րդ հատորում զետեղված է Վ. Ի. Լենինի 1921 թվականի մարտի 2-ի նամակը Գ. Կ. Օրջոնիկիձեին, որով նա ջերմորեն ողջունելով վրացական կոմունիստներին, վրացական ռևկոմի բոլոր անդամներին, Սովետական Վրաստանին անգնահատելի ցուցումներ է տալիս Վրաստանում սովետական իշխանության ամրապնդման ու սոցիալիստական շինարարության ծավալման ուղղությամբ (հ. 42, էջ 367)։

Վ. Ի. Լենինն ամեն ինչ անում էր Կովկասի սովետական ռեսպուբլիկաների ամրապնդման համար։ Նա բազմիցս ընդունում է Կովկասում աշխատող ընկերներին, աշխատավորության ներկայացուցիչներին, զրուցում նրանց հետ, խորհուրդներ տալիս։ 1920 թվականի մայիսին Լենինն ընդունում է Սովետական Ադրբեջանի ռևկոմի նախագահ Նարիման Նարիմանովին և կարևորագույն ցուցումներ տալիս։ Դեկտեմբերին Մոսկվայում Վ. Ի. Լենինի մոտ են լինում Սովետական Հայաստանի ռևկոմի անդամներ՝ Սահակ Տեր-Գաբրիելյանն ու Ասքանազ Մռավյանը. Լենինը նրանց ասում է. «Մենք ինքներս դժվարին դրության մեջ ենք, բայց Սովետական Հայաստանին ամեն կերպ կօգնենք»։ 1921 թվականի փետրվարի 19-ին Վ. Ի. Լենինը զրուցում է Ֆիլիպ Մախարաձեի հետ, որը պատրաստվում էր մեկնել Վրաստան՝ Ռևկոմում աշխատելու համար։ 1921 թվականի փետրվարին Վ. Ի. Լենինը Կրեմլում ընդունում է Դաղստանի պատգամավորությանը։ 42-րդ հատորում զետեղված են այդ ընդունելության լենինյան գրանցումները (էջ 420)։ Չափազանց կարևոր փաստաթուղթ է «Նախապատրաստական նյութեր» բաժնում՝ Բաքվի ընկերներին 1921 թվականի փետրվարի երկրորդ կեսին Լենինի ուղղած նամակը (էջ 423—426)։

Ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ Սովետական Կովկասի համար խիստ կարևոր նշանակություն ունեցավ 1920 թվականի դեկտեմբերին Սովետների համառուսաստանյան VIII համագումարում հավանության արժանացած Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պետական պլանը (Գոէլրո), որը լենինյան հանճարի ծնունդն էր։

Գոէլրոյի լենինյան պլանի—կոմունիստական պարտիայի այդ երկրորդ ծրագրի մեջ տրված էին նաև Կովկասի արդյունաբերական զարգացման հիմքերը։ 42-րդ հատորում՝ «Միասնական տնտեսական պլանի մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը նշում է, որ նախատեսվում է էլեկտրիֆիկացնել Կովկասն



ամբողջությամբ, ելնելով զանազան ռեսպուբլիկաների միջև ենթադրվող համաձայնությունից (էջ 342)։

Հատորներում զետեղված երկերը ակնառու ցույց են տալիս այն վիթխարի դերը, որ խաղացել է Վ. Ի. Լենինը՝ Կովկասում Սովետական իշխանության հաստատման և ամրապնդման, Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության մեջ։ Կովկասի ժողովուրդները, որոնք դաստիարակվել են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարներով, սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում վստահորեն ընթանում են կոմունիզմի ուղիով։

Կոմունիզմի կառուցումը ապահովում է սովետական ժողովուրդների, այդ թվում նաև անդրկովկասյան ժողովուրդների օրգանական միասնության, եղբայրական փոխօգնության և համագործակցության ուժեղացումը։ Այդ բանի ցայտուն վկայություններից է Անդրկովկասի խոշոր տնտեսական շրջանի և նրա միացյալ տնտեսական օրգանի՝ Անդրկովկասի ժողտնտխորհների աշխատանքի կոորդինացման և պլանավորման հանձնաժողովի կազմակերպումը, որը մի առաջընթաց քայլ է բնական, նյութատեխնիկական ու աշխատանքային ռեսուրսները էլ ավելի արդյունավետ օգտագործելու, ռեսպուբլիկաների միջև աշխատանքի սոցիալիստական բաժանումը կատարելագործելու, ամբողջ երկրի շահերը սովետական ամեն մի ռեսպուբլիկայի շահերի հետ ճիշտ զուգակցելու վերաբերյալ լենինյան պատգամների իրագործման ճանապարհին։

Անդրկովկասի սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների աշխատավորները ձեռք-ձեռքի տված, միացյալ ուժերով առաջ են տանում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման մեծ ու պատասխանատու գործը։ Նրանք անում են ամեն ինչ, որպեսզի ժամկետից շուտ կատարվեն ժողովրդական տնտեսության զարգացման պլանային առաջադրանքները, որպեսզի ապահովվի Սովետական միության կոմունիստական պարտիայի XXII համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործումը։

Կովկասի սովետական ռեսպուբլիկաների աշխատավորները տոգորված են Վ. Ի. Լենինի նկատմամբ անսահման սիրով ու երախտագիտությամբ, որի հանճարով է լուսավորված նրանց ռևոլյուցիոն ազատագրական պայքարի, նրանց զարգացման ու բարգավաճման ամբողջ պատմությունը։

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր
պրոֆեսոր



# ԼԵՆԻՆԻ ԿԵՐՊԱՐԸ ԱՐԵՎԵԼՔԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊՈԵԶԻԱՅՈՒՄ

*Արևելքի ճնշված ժողովուրդները Վլադիմիր Իլյիչի՝ աշխատավոր ժողովրդի առաջնորդի հանդեպ տածած իրենց սերն ու նվիրվածությունն արտահայտում են երգերում, բանաստեղծություններում, վեպերում և ժողովրդական ստեղծագործության այլ ձևերում։*

*Արևելքի երկրների գրողները, բանաստեղծները Հոկտեմբերի առաջին իսկ օրերից սկսած ավելի հաճախ են անդրադարձել Վ. Ի. Լենինի կերպարին, տեսնելով նրա մեջ ամենազոր և անմահ ուժ։ Լենինի կերպարը դարձել է առաջադեմ գրողների, բանաստեղծների, նկարիչների ստեղծագործության ոգեշնչման անսպառ աղբյուր։ Արևելքի ժողովուրդների՝ Վլադիմիր Իլյիչին նվիրված ստեղծագործություններում արտահայտված է աշխատավոր մասսաների անսահման սերը առաջնորդի, ռևոլյուցիոների, պետական գործչի, ազատարարի, այն մարդու հանդեպ, որն իր ողջ գեղեցիկ կյանքը տվել է բոլոր ժողովուրդների երջանկության և պայծառ ապագայի համար մղված պայքարին։*

*Լենինի վառ կերպարը չին ժողովրդի հետ է եղել նրա բոլոր ծանր փորձությունների պահին։ Նրա հանդեպ տածած սերը ոգևորել է ժողովրդա-ազատագրական բանակի զինվորներին ռևոլյուցիոն մարտերի բոլոր ճակատներում։*

*Տաղանդավոր պոետ Լյու Լան-շանը իր «Առաջին փարոսը» բանաստեղծության մեջ խոսում է Հոկտեմբերի, Լենինի գաղափարների մեծ ուժի մասին։ Ռուսաստանի պրոլետարիատի վառած առաջին փարոսը ոգեկոչել է չին ժողովրդին ազատության և ազգային անկախության պայքարի։ Բանաստեղծը դիմում է Լենինին որդիական սիրո, նվիրվածության խոսքերով.*

Ես, աղքատ ու պարզ գեղջուկի որդի,
Քո մասին այսօր գրում եմ երգեր,
Թեև անսահման խոր սերն իմ սրտի
Չեմ կարող ոչ մի երգում ընդգրկել [1]:

*«Լենինի պորտրեն» բանաստեղծության մեջ Յան Ին հիշում է Չինաստանի ոչ հին անցյալը։ Նա թերթում է իր զինվորական օրագիրը։ Նրա էջերից մեկում փակցված է Լենինի պորտրեն... Այդ դեպքը պատահել է ռազմաճակատում։ Կռվում մահացու վիրավորված հրամանատարը հանձնել է նրան խնամքով պահպանված Իլյիչի պորտրեն։ Հաջորդ օրը ջոկատը կռվի է բռնվել և մարտիկներին թվում էր, թե այդ Լենինն էր հարձակվում և դրանից է, որ նահանջում է թշնամին։*

[1] *Հոդվածի չափածո տողերը թարգմանել է բանաստեղծ Վ. Կարենցը։*



Նրա նկարն ինձ հետ՝ շատ ճամփաներ անցա,
Նա ինձ օգնեց կռվել դաժան տարիներին:

*Ողջ ժողովրդի հետ պայքարի դժվարին ուղի է անցել ռևոլյուցիոներ բանաստեղծ Ցզան Կե-ցզյան։ Լենինի ծննդյան 90-ամյակին նվիրված «Գարնանային խոհեր» ոտանավորում բանաստեղծն իր երկրի հաջողություններով հպարտ քաղաքացու աչքերով ուշադիր դիտում է այն ամենը, ինչ կատարվում է իր շուրջը։ Նա տեսնում է մարտիկին, որն առաջին անգամ հրացան է վերցրել, որպեսզի պաշտպանի իր հայրենիքի խաղաղ աշխատանքը։ Պոետի կողքով ուրախ երգով անցնում է պիոներական ջոկատը, տանելով Լենինի նկարը։ Գարնանային զեփյուռը ծածանում է կարմիր փողկապները, որոնք հիշեցնում են սուրացող ծիծեռնակներ։ Պոետը հուզմունքով է թերթում Լենինի կյանքի անմահ էջերը։ Ողջ ժողովրդի անունից նա դիմում է Իլյիչին.*

Քո ողջ կյանքում պայքարեցիր կեղծիքի դեմ ու չարի,
Որ խնդության այգը տեսնեն մարդիկ ամբողջ աշխարհի,
Եվ ժամանակն անցած կյանքիդ որքան մնում է հեռվում,
Փոթորկվում է գործդ անքան, այնքա՜ն պայծառ է վառվում:

*Չին բանաստեղծները շատ ստեղծագործություններում ձգտում են ուսումնասիրել և գեղարվեստորեն իմաստավորել Լենինի ռևոլյուցիոն գործունեության տարբեր էտապները։ Այդպիսի բանաստեղծություններից են՝ Լյու Լյանցզինի «Պետրոգրադում», Ֆեն Չժիի «Ջրահագնացքը», Յան Չինի «Հեղեղը», Վան Ցզին-չժիի «Լենինն ու Պրավդան» և այլն։*

*Վլադիմիր Իլյիչի հանդեպ տածած սերը լայն արտացոլում է գտել նաև ժամանակակից չին պոետների ստեղծագործություններում։*

*Հնդկաստանի բազում ազգությունների, կրոնական ու քաղաքական տարբեր համոզմունքների, գրական զանազան հոսանքների, տարբեր սերունդների պոետներ երգել են Հոկտեմբերյան ռևոլյուցիան և մեծ Լենինի նշած ուղիով ընթացող սովետական ժողովրդի հաղթանակը։ Հետաքրքրական է, թե ինչպես աստիճանաբար, համաժողովրդական, ազգային-ազատագրական պայքարի զարգացման, ժողովրդական մասսաների քաղաքական և դասակարգային գիտակցության աճին զուգընթաց, Հնդկաստանի բանաստեղծներն իրենց ստեղծագործություններում ավելի խոր ու բազմակողմանի են մարմնավորում Լենինի կերպարը՝ որպես սոցիալիստական ռևոլյուցիայի առաջնորդի և աշխարհում բանվորների ու գյուղացիների առաջին պետության ստեղծողի։*

*Հնդիկ բանաստեղծ Մուխամեդ Իկբալն իր «Լենին» սիմվոլիստական պոեմում, ասես թե Լենինի շրթներով խոսում է հին աշխարհը քանդելու անհրաժեշտության մասին, հանուն ազատության և արդարության հաղթանակի։*

Դե՛, բարձրացե՛ք, հանե՛ք ոտքի աղքատներին սեր հողի,
Հարուստների փոշին ցրե՛ք, մեր դարավոր ոսոխի,
Հաղթանակի մեծ հավատով վառեք հոգին ճորտերի,
Որ թշնամու բռնության տակ էլ չմնանք մենք գերի:

Փենջաբյան բանաստեղծ Նարինդեր Պալ Սինգխը «Իմ հավատամքը» պոեմում շարադրելով իր հայացքները համաշխարհային պատմության զարգացման ընթացքի մասին, պատմական, ինչպես և միֆոլոգիական մեծ հերոսների շարքում նշում է Լենինին։ Նկարագրելով մարդկության վերընթաց շարժման ճանապարհը, համաշխարհային պատմության մեջ պատվավոր տեղ է հատկացնում Մարքսին, Էնգելսին, Լենինին և նրանց մասին արտահայտվում ակներև հմայքով ու սիրով։

Բենգալյան նշանավոր բանաստեղծ Բիշնու Դեն, որը պատկանում է հնդկական գրականության ռոմանտիկա-սիմվոլիստական ուղղությանը, Լենինին անվանում է «միլիոնավոր մարդկանց հավերժ կենդանի աչք», «Հիմալայի ամենաբարձր գագաթ՝ բարձրացած ամբողջ երկրի վրա», «խաղաղության ամենազոր մարտիկ»։

Բենգալյան բանաստեղծ Բիմոլչոնդրո Գխոշայի «Նրա անունը փայլում է դարերում» բանաստեղծությունը պահպանում է հնդկական պոեզիայի տրադիցիոն տոնը. յուրաքանչյուր քառյակը սկսվում է նույն տողով.

Այսօր ա՛յն մարդու օրն է ծննդյան,
Որ ծովերն հուլեց արյուն-արցունքի,
Ծովեր քրտինքի ու տառապանքի,
Եվ բերեց նվեր տանջված մարդկության
Խաղաղությունը՝ գավաթով ոսկի:
Այսօր ա՛յն մարդու օրն է ծննդյան,
Որ բարձրացրեց լեռներից էլ վեր՝
Ջահակիրը մեծ ազատության,
Հավասարության ու եղբայրության:
Այդ նա՛ ստեղծեց այս հողագնդում
Խաղաղ, երջանիկ երկիրն առաջին,
Այսօր ա՛յն մարդու տոնն է ծննդյան,
Որի անունը շողում է հավերժ,
Իբր խորհրդանիշ հեղափոխության,
Անսահման սիրո ու երջանկության:

40-ական թվականներից սկսած հնդկական պոեզիայում երևան է գալիս հասարակական-քաղաքական նոր թեմա՝ որն արտացոլում է Լենինի վիթխարի դերը Արևելքի ժողովուրդների զարթոնքի գործում (Սուկանտա Բխատա չարիյա, Ուրդու Ալի Սարդար և ուրիշներ)։

Հնդկաստանի ժողովուրդների գրականության մեջ Լենինի կերպարը ոգեւորում է տարբեր հոսանքների և ուղղությունների պոետներին, որը նրանց օգնում է հաղթահարելու դժվարությունները, գտնելու կենսական բարդ պրոբլեմների լուծման ուղիները։

Փխենյանի կենտրոնական գրադարանի արխիվում պահպանվում են ճապոնական գաղութային ռեժիմի ժամանակաշրջանի արդեն դեղնած պատմական փաստաթղթեր։ Դրանց մեջ կա մի ձեռագիր թերթիկ։ Այդ թերթիկի վրա նկարված է զինվորական բլուզ հագած մի մարդ՝ նշաձև աչքերով, իսկ տակը ստորագրված՝ «Լենին», ապա բանաստեղծական տողերի հիերոգլիֆներ են՝ գրված անհայտ պոետի կողմից։ Երեսնական թվականների սկզբի պարտիզանական թռուցիկներից մեկն է այդ։ Անանուն ռևոլյուցիոներ բանաստեղծը գրել է.

Մեր հյուսիսային երկրում լայնածիր,
Ղեկավարությամբ անմահ Իլյիչի,



Ծաղկումի ճամփով մարդիկ գնացին,
Որ թշվառությունն հավետ նահանջի:

Գաղութային Կորեայում, իհարկե, հնարավոր չէր բացահայտ գրել Լենինի մասին։ Իրենց զգացմունքները, ժողովրդի առաջնորդի նկատմամբ տածած խոր հարգանքը կորեական ռևոլյուցիոներ պոետները կարող էին արտահայտել միայն գաղտնի թռուցիկներում, ձեռագիր պոեմներում։

Երկրի ազատագրումից հետո կորեական գրականության մեջ երևան եկան բազմաթիվ ստեղծագործություններ, որոնցում պատկերված է մեծ Իլյիչի կերպարը։

«Լենին կարճ բառում,— գրել է պոետ Ցոյ յոն Իրը,— միաձուլվել են միլիոնների միտքը, բոլոր ճնշվածների խոհերն ու ձգտումները»։ Կորեական ժողովրդի պայքարի վրա Լենինի ուսմունքի վիթխարի ազդեցության մասին այս նույն միտքն արտահայտված է նաև բանաստեղծ Ցոյ Ջին յոնի «Լենինի գաղափարները» բանաստեղծության մեջ։

«Առավոտյան կծագի արևը» բանաստեղծության մեջ Իմ Խո Գվոնը Լենինին համեմատում է արևի կենսատու շողերի հետ։ Նա ասում է, որ հասարակ մարդկանց Լենինը սովորեցրեց, թե ինչպես պետք է վարվել, որպեսզի աշխատանքի պտուղները ուրախություն բերեն հենց իրենց՝ գործարանի բանվորներին և ոչ թե հարստացնեն տերերին։

Պոետը դիմելով Լենինին գրում է.

Իլյի՛չ,
Թեև դու ռուս ես ազգությամբ,
Մեր գույնն ուրիշ է, մեր լեզուն ուրիշ,
Սակայն դու մե՛րն ես, մե՛րն ես հավիտյան,
Որպես մեծ սիրո, բախտի ուղենիշ:

Մի այլ պոետ՝ Կիմ Գվի Ռենը, պատմում է կորեացի մոր մասին, որը պահպանում է Լենինի նկարը։ Օրորելով երեխային, կինը երգում է այն պայծառ օրվա մասին, երբ Հարավային Կորեան երկրի հյուսիսի նման կընթանա այն ճիշտ ճանապարհով—ճանապարհ, որը ցույց է տվել Լենինը քառասուն տարի առաջ։ «Դու երջանիկ ես,— ասում է նա որդուն,— որովհետև ապրել է աշխարհում Լենինը, որ մեծ ճշմարտությունն է գտել»։

Իր պոեմում Կիմ ու Ջորը մեծ ոգևորությամբ գրել է, որ Իլյիչը կենդանի ու անմահ է, և եկել է սոցիալիստական Կորեա։

Ո՛չ, նա չի՛ մեռել, ապրո՛ւմ է, նա կա՛,
Իլյիչն եկել է, Կորեա հասել,
Քառասուն տարի սրանից առաջ
Կարեկցանքով է մեր մասին խոսել...
Այո՛, ծանր էին այն օրերը շատ,
Տառապանքներով անցանք մենք բազում,
Ե՛վ ժանդարմների մտրակը դաժան,
Ե՛վ պատերազմի բոցը հրկիզուն.
Հիմա դժվար է ճանաչել նրան,
Ծաղկում է, ապրում և իմ Կորեան:

Հասարակ ու մեծ, հարազատ ու մոտ, ճնշվածների բարեկամ են համարում Վլադիմիր Իլյիչին կորեական պոետները։ Եվ, ինչպես փոքրիկ առվակ-

ներից առաջանում է մեծ գետը, այդպես էլ առանձին բանաստեղծություններից հյուսվում է մեծ պոեմը այն սիրո մասին, որը տածում է կորեական ժողովուրդը իրեն ազատության, երջանկության ու խաղաղության ուղին ցույց տվող մարդու նկատմամբ:

Լենինի կերպարը լայն ու խոր արտահայտություն է գտել նաև արաբական գրականության մեջ: Արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման բուռն վերելքի օրերին առաջադեմ պոետները, 20-ական թվականներից սկսած, ավելի ու ավելի հաճախ են վկայակոչում իմաստուն Լենինին:

Արաբական պոեզիայում Իլյիչի մասին լավագույն ստեղծագործությունը «Լենին» պոեմն է, որը գրել է հայտնի բանաստեղծ ու նկարիչ Ռադվան Աշ-Շախալոմը, որը Լիբանանի առաջադեմ գրողների ասոցիացիայի և խաղաղության պաշտպանության կոմիտեի ղեկավարներից մեկն է: Բանաստեղծը նկարագրում է Լենինին որպես մեծ մարդու և ընդգծում նրա սերտ կապը ժողովրդի հետ: «Նա մասնիկն է ժողովրդի», բացականչում է բանաստեղծը: Հատկապես այդ, ինչպես և հասարակական կյանքի օրինաչափությունների գաղտնիքների բանալին գտնելու կարողությունն է մեծ առաջնորդի ուժի աղբյուրը: «Լենինը,— գրում է նա,— այն բոցավառ տրիբունն է, որի խոսքը ոտքի է հանում աշխատավոր մասսաների «փոթորկող, ալեկոծվող օվկիանոսը»»:

Իրենց ստեղծագործություններում Վլադիմիր Իլյիչի խոր ժողովրդայնության, մարդասիրության, պարզության ու համեստության մասին են պատմում արաբական բանաստեղծներ Վասֆի ալ-Բունին՝ Սիրիայից, Ռաշիդ ալ-Յասիպը՝ Իրաքից, Ալի Աշուրը՝ Հորդանանից, Նազիր Խիսամին՝ Եգիպտոսից և ուրիշներ:

Հավատը լենինիզմի ամենահաղթ ուժի նկատմամբ իր արտահայտությունն է գտել «Ճիշտ ճանապարհ» բանաստեղծության մեջ, որը 1956 թվականին գրել է Նիֆոն Սաբան.

Լենի՛ն, ապրում ես սրտերում մարդկանց,
Նրանց գործերում մեծ ու փառավոր,
Այդ դո՛ւ ցրեցիր խավարը անանց,
Կյանքի խավարը—գիշեր դարավոր,
Դու մի հրաբորբ արեգակ դարձար,
Ե՛վ ապառության, և՛ հաղթանակի,
Դու մեզ նշեցիր ուղիներ պայծառ,
Ճանապարհները լուսավոր կյանքի:
Դու մեզ ուսուցիր կռվել համարձակ,
Եվ հասնել անդուլ մեծ հաղթանակի:

Ինտերնացիոնալիզմի, բոլոր երկրների աշխատավորների եղբայրական համագործակցության ոգով են տոգորված արաբական առաջավոր պոետների շատ բանաստեղծություններ: «Մեր երեխաների գերեզմանոցը» սքանչելի բանաստեղծության մեջ Ռաշիդ ալ-Յասին ամոթանքի սյունին է գամում Արևելքի ժողովուրդների արյունն ու քրտինքը քամող իմպերիալիստներին, ովքեր ռազմական ամրոցներ են կառուցում, որոնք հետո դառնալու են երեխաների գերեզմանոցներ: Պոետն ասում է, որ իմպերիալիստները ուզում են սպառնալիքով և ուժով ստիպել արաբներին դուրս գալ՝



Ընդդեմ դրախտի, որ ստեղծել են մարդիկ տքնությամբ,
Ընդդեմ ազգերի, որոնք փշրել են շղթան գերության՝
Անմահ Լենինի ղեկավարությամբ
Եվ Հոկտեմբերի այն հերոսների,—
Նրանք կարծում են, որ մենք հեզությամբ
Կլսենք ձայնը ռազմամոլների,
Որ պատերազմ են առուտուր անում,
Կբարձրացնենք մեր բանվորական ձեռքերը՝ կրակի,
Ժողովուրդների մեծ բարեկամի, մեծ երկրի վրա:

Ժամանակակից արաբական պոետներն ու գրողները լենինյան գաղափարների գանձարանից են այսօր ուժ առնում գաղութատիրության դեմ պայքարելու համար, հանուն տնտեսական ու քաղաքական կատարյալ անկախության, այն բանի համար, որ երջանկության ու ազատության արևը պայծառ շողա Ալժիրի ու Լիբանանի լեռներում, Նեղոսի, Տիգրիսի և Եփրատի հովիտներում, արաբական ողջ անծայրածիր երկրում:

Մեծ Հոկտեմբերի գաղափարները լայն արձագանք գտան նաև Իրանի առաջադեմ պոետների ստեղծագործություններում: Այդ ժամանակաշրջանի պարսիկ բանաստեղծների առաջին ստեղծագործություններում Լենինը ներկայացվում է որպես ժողովրդի ազատարար, որպես մարդ, որն օգնում է մարդկանց՝ հասնելու երջանկության, լուծելու ամենաբարդ կենսական խնդիրները:

Լենինին նվիրված հետաքրքրական ստեղծագործություններից է Միրզա Մոխսեն Դաստգերդիի «Գիրք սովի մասին» պոեմը: Հեղինակը, ինքնուս բանաստեղծ, մի գյուղացի Իսպահանի շրջանից, ինքնատիպ ձևով նկարագրում է քաղաքացիական պատերազմի տարիներին Ռուսաստանում տիրող զրկանքներն ու սովը: Ընդ որում, բանաստեղծը Լենինին ներկայացնում է որպես սովի դեմ մղվող պայքարի գլխավոր կազմակերպիչ, որպես անձնավորություն, որի կյանքի նպատակը հասարակ մարդկանց մասին հոգալն է:

Ավելի բազմակողմանի են բացահայտում Լենինի մեծությունն ու դերը մարդկության պատմության մեջ Իրանի բանաստեղծները 40—50-ական թվականներին, Իրանի ազգային-ազատագրական շարժումների նոր վերելքի շրջանում: 1946 թվականին, Իրանի գրողների առաջին համագումարում, բանաստեղծներ Ալի Ասքարը և Ղահրամանը հանդես եկան Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին իրենց ստեղծագործություններով:

Ղահրամանը «Լենինի հիշատակին» բանաստեղծության մեջ պատմում է աշխարհում լայնորեն տարածված այն իդեաների ու մեծ գործերի մասին, որոնք անմահացրել են Լենինի անունը:

Նա չի՛ մեռնի երբեք ժողովրդի սրտում,
Հիշատակը որի հար մնում է արթուն,
Որի անունը միշտ արևի պես անշեջ
Լույս է տալիս հավար ու բյուր սրտերի մեջ.
Եվ Լենինը կապրի սրտում սերունդների,
Քանի ապառության լույսն աշխարհում կապրի:

Լենինի կերպարը ոգևորել և ազատության է կոչում Իրանի ժողովրդին: Այս առումով բնորոշ է բանաստեղծուհի Ժալեի «Դամբարանում» բանաստեղծությունը, որը ներշնչված է Լենինի դամբարանն այցելելուց հետո ծնված խո-

*հերով և զգացմունքներով: Ժալեի պարզ շարադրանքում զգացվում է մարդու ապրած ամենաանմոռաց դեպքերից ծնված խոր հուզմունքը:*

Եվ ե՛ս էլ տեսա այն ձեռքը հկոր,
Որ տարավ մարդկանց դեպ ապատություն,
Որ երազանք էր թվում դարավոր.
Երջանի՛կ աշխարհ, ապա՛տ լայնություն,
Թվաց ինձ, հոգիս թևերով ճերմակ,
Թևածեց իր ջերմ հույզերով համակ
Այն մարդու առաջ, որի ջերմ հոգին
Մարդկության համար ջահ էր թանկագին,
Հույսը ծաղկումի և արևը վառ...
Այն, ինչ զգացի, ինչ իմ հոգում կար,
Կար և բոլորի՛, բոլորի հոգում,
Ես վերջին անգամ նայեցի նրան
Եվ հոգուս խորքից տվեցի բարի
Ողջույնը բոլո՛ր իմ եղբայրների:



*Անհնար է ընդգրկել այն ամենը, ինչ ասված է Լենինի մասին, որն այնպիսի լայն ժողովրդայնություն է վայելում Արևելքում: Վլադիմիր Իլյիչի անունը տարբեր երկրներում ապրող, տարբեր լեզուներով խոսող միլիոնավոր մարդկանց համար դարձել է հարազատ ու մոտ: Չինացիների ու արաբների, հնդիկների ու կորեացիների, ճապոնացիների ու մոնղոլների, ինդոնեզցիների ու իրանցիների, աֆղանների ու թուրքերի, Աֆրիկայի ժողովուրդների համար Լենինը դարձել է ոգևորության հորդաբուխ աղբյուր:*

*Անծայրածիր Արևելքի ժողովուրդների պոեզիայից բերված մեր քաղվածքները ցույց են տալիս, թե որքա՜ն խորն է ճնշված մասսաների հարգանքը Վլադիմիր Իլյիչի հանդեպ: Բնորոշելով Վ. Ի. Լենինի գործունեության նշանակությունը Արևելքի ժողովուրդների համար, Խո Շի Մինը դեռևս 1924 թվականին գրել է. «Եթե Լենինը Արևմուտքի ժողովուրդների համար առաջնորդ է, լիդեր, ուսուցիչ, ապա Արևելքի ժողովուրդների համար ինչ-որ բանով նա ավելի մեծ է: Նրանց համար նա, եթե կարելի է այսպես արտահայտվել, սրբություն է: Նրանց հարգանքը Լենինի հանդեպ հավասար է երեխաների՝ հոր նկատմամբ տածած մեծարանքին»:*

Գ. ԼԱԼԱՅԱՆՑ



# ԿԵՆԴԱՆԻ ԼԵՆԻՆԸ

Վերջին տասնամյակում զգալիորեն հարստացավ կոմունիստական ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինին նվիրված գրականությունը, որի ստվար ցանկում առանձնահատուկ տեղ է գրավում Ալբերտ Ռիս Վիլյամսի՝ «Լենինի և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մասին» աշխատությունը:

Մեծ առաջնորդի և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դրվատմանը նվիրված այս երկը խիստ աչքագրավ է երկու տեսակետից. նախ այն, որ հեղինակը լինելով ամերիկացի, մի քանի տարվա անձնական փորձով համոզվեց բոլշևիկյան ռևոլյուցիայի ճշտության մեջ, և երկրորդ՝ նրան հաջողվեց զարմանալի ջերմությամբ և գերող ճշմարտությամբ վերակերտել մեծ առաջնորդի՝ Լենինի գործունեության և բնավորության մի քանի բնորոշ գծերը:

Ինչպես իրավացի նշում է առաջաբանի հեղինակ Բ. Պոլևոյը, Վիլյամսի տվյալ երկի մեծագույն արժանիքն այն է, որ նա հանձին Իլյիչի՝ կռահեց ռևոլյուցիայի կենտրոնական դեմքին: Ոչ միայն կռահեց, այլև զինվորագրվեց Լենինի մեծ գաղափարների կենսագործման համար մարտնչող բանակին և զենքով պաշտպանեց մեծ Հոկտեմբերի նվաճումները: Վիլյամսի գիրքը իր տեսածի ու ապրածի տաղանդավոր վերարտադրությունն է:

Վիլյամսն առաջին անգամ Լենինին տեսավ այն պահին, երբ Ավրորայի հրանոթներն ազդարարեցին հին կարգերի կործանումն ու նորի ծնունդը, երբ Իլյիչը ողջույնների, բացականչությունների ու ծափահարությունների տակ բեմ բարձրացավ և ի լուր աշխարհի հայտարարեց պրոլետարական սոցիալիստական պետության կառուցման մասին:

Հեղինակի անկեղծ և անմիջական նկարագրությունը դյուրում է ընթերցողին և փոխադրում նրան ռևոլյուցիոն օրերի իրադրության ոլորտը: Ահա թե ինչպես նա առաջին անգամ տեսավ Իլյիչին. «Մենք սպասում էինք տեսնել վիթխարի հասակ ունեցող մի մարդու, որը միայն իր արտաքինով տպավորություն է գործում: Իսկ իրականում մեր առջև կանգնած էր ցածրահասակ, ամրակազմ մի մարդ ճաղատով և խնձված մորուքով... Մի մարդ, որը խոսում էր հանգիստ և պարզ, սակայն խոր համոզվածությամբ և ուժով:

...Մենք պատկերացնում էինք այն խնդրի ամբողջ դժվարությունը, որի լուծմանը ձեռնամուխ էին եղել բոլշևիկները: Արդյոք նրանք կլուծե՞ն դա: Նրանց առաջնորդը սկզբում մեզ վրա ուժեղ մարդու տպավորություն չգործեց» (48—49):

Այսպիսին էր Վիլյամսի առաջին տպավորությունը աշխարհի ամենամեծ ռևոլյուցիոների մասին: Հետագայում նա շատ առիթներ ունեցավ հանդիպելու Լենինի հետ, պայքարելու լենինյան պարտիայի դրոշի ներքո և հանգեց այն հաստատ համոզմանը, որ նրա գործն ու գաղափարներն ամենահաղթ են: Եվ ահա, քառասուն տարիներ անց, 1959 թվականին Վիլյամսը եկավ Սովետական Միություն, այցելեց Լենինի աշխատասենյակը: Այստեղ նա տեսավ իր, Լենինը որպես մարդ և նրա գործը գիրքն անգլերեն լեզվով. նա մի պահ ստեղծագործական երանություն ապրեց, որ մեծ Լենինը ծանոթ է եղել նրա գրքին:

Սկզբից ևեթ Վիլյամսը ճիշտ ըմբռնեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի գլխավոր խնդիրը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը՝ խաղաղության, արդարության և ժողովրդի բարօրության ստեղծման ճանապարհով: Իր ամբողջ գրքում հեղինակն առանձնապես շեշտում է, որ Սովետական Միությունն ընթացել է դեպի իր մեծ նպատակը և երբեք չի խոտորվել նշած ուղուց:

Իր գրքի ընդհանուր խորագրի տակ հեղինակը զետեղել է երկու աշխատություններ՝ Լենինը որպես մարդ և նրա գործը և Ռուսական ռևոլյուցիայի միջով:

Վիլյամսը համեստորեն ընդգծում է, որ իր գիրքն ավարտված չէ, որ այն հավակնություն չունի լրիվ պատկերացում տալու Լենինի՝ որպես անձնավորության և նրա գործի մասին: Բայց և այնպես, ինչպես ճիշտ նշում է առաջնորդի քույրը՝ Ա. Ելիզարովան, Վիլյամսի աշխատության մեջ անկեղծորեն պատկերված է Լենինի

ցին «Կրեստյանին ի ռաբոչի» և «Կրասնոյե զնամյա» թերթերը:

Դաշնակից իմպերիալիստական պետությունները չխոսալովակներին հարձակման դրդեցին սովետների դեմ: Հարձակվեցին նաև ճապոնացիները, անգլիացիները, չինացիները: «Սովետն ընկավ» բացականչություններով բշնամիները ողջունում էին չեխերին: Նրանք ուշնչացնում էին այն ամենը, ինչ հիշեցնում էր սովետի մասին: Սակայն իզուր: Սովետներն ամրացան և հաղթանակեցին:

Սովետական Ռուսաստանը Ալբերտ Ռիս Վիլյամսի համար դարձավ կյանքի իսկական համալսարան: Բուրժուա-դեմոկրատական ազատության սկզբունքներով երիտասարդ տարիներին դաստիարակված այդ շնորհալի ժուռնալիստը վերամկրտվեց սոցիալիստական Ռուսաստանի ռևոլյուցիայի քուրայում և Ջոն Ռիդի հետ Ամերիկա տարավ մեծ Լենինի գաղափարներն ու վառ հուշերը նրա անմահ գործի մասին:

Ջոն Ռիդի «Տասը օր, որ ցնցեցին աշխարհը» և Ալբերտ Ռիս Վիլյամսի սույն գիրքը եղել և մնում են պատմական մեծ դարաշրջանի կենդանի վկայություններ, վկայություններ, որոնց էջերից մեզ է հառնում կենդանի Լենինը:

Ալբերտ Ռիս Վիլյամսի գիրքը կարդացվում է հափշտակությամբ, որովհետև այն տոգորված է լենինյան պարտիայի ղեկավարությամբ կատարված ռևոլյուցիայի վարակիչ պաթոսով, գրված է ջերմացնող ավյունով:

Չնայած լեզվական առկա որոշ թերություններին, թարգմանիչ Կ. Ս. Վարդանյանը հիմնականում հաղթահարել է թարգմանության հետ կապված դժվարությունները, կատարելով շնորհակալ աշխատանք:

Զ. ԱՍԱՏՐՅԱՆ



## ՈՒՇԱԳՐԱՎ ՓԱՍՏԵՐ

ԱՄՆ-Ի ԴԻՊԼՈՄԱՏԻԿԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՆԱԿԸ ԱՌԱՋԻՆ ՊՐԵԶԻԴԵՆՏԻ ԺԱՄԱՆԱԿ: Երբ Ջորջ Վաշինգտոնը դարձավ պրեզիդենտ (1789 թվականի ապրիլ), ԱՄՆ-ի դիպլոմատիկական ծառայության մեջ հաշվվում էին՝ պետական դեպարտամենտի ղեկավարը, դեպարտամենտի երկու չինովնիկ, դեսպանները Լոնդոնում և Փարիզում: ԱՄՆ-ի բանակի ընդհանուր թիվը կազմում էր 840 մարդ:

ՈՐՔԱՆ Է ՆՍՏԵԼ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ: Եթե հավատանք «Յունայտեդ ստեյտս նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» ժուռնալին, Ամերիկայի հայտնագործումը շատ էժան է նստել: Քրիստափոր Կոլումբոսի նավերի արժեքն էր՝ 3000 դոլար: Կոլումբոսի աշխատավարձն էր տարեկան 300 դոլար, երկու կապիտաններինը՝ 200 դոլար, իսկ նավերի անձնակազմի անդամներինը ամսական 2 դոլար 50 ցենտ: Ամերիկայի հայտնագործման ընդհանուր արժեքը կազմել է մոտավորապես 7000 դոլար:

ԽՈՀԵՐ ՀԱՐՈՒՑՈՂ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ: Ամերիկյան «Կոնգրեշնլ ռեկորդ» պաշտոնական բյուլետենի տվյալներով, հրազենով մահափորձի են ենթարկվել ԱՄՆ-ի 35 պրեզիդենտներ (այդ թվում և Ջոն Քեննեդին), 17 տոկոսը և բոլոր պրեզիդենտների մոտավորապես 11,5 տոկոսը մահացել է մահափորձ անողների գնդակից:

17 ՏՈԿՈՍ: ԱՄՆ-ի աշխատանքի մինիստր Ուիրտցի հայտարարության համաձայն, 1963 թվականին երիտասարդության մեջ գործազրկությունն աճել է ևս 5 տոկոսով և մինչև 20 տարեկան տղաների ու աղջիկների մոտ այն կազմում է 17 տոկոս:

Ուիրտցի վկայությամբ, 1964 թվականին գործազրկությունն ավելի կաճի, քանի որ բանվորական ուժի շուկան կհամալրվի մեկ միլիոն 600 հազար տղաներով ու աղջիկներով:

ԿՅԱՆՔԸ ԱՊԱՌԻԿ: 1963 թվականին ԱՄՆ-ում ռեկորդային էր սպառողական պարտքը: Այն մեծացավ ավելի քան 6,5 միլիարդ դոլարով: Նյու-Յորք թայմսի տվյալներով 1963 թվականի վերջում ամերիկացիները խանութներից, սպասարկող կոմպանիաներից և բանկերից պարտք արեցին մոտավորապես 70 միլիարդ դոլար:

ԵՐԵՔԻՑ ՄԵԿԸ: Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում հրապարակված տվյալներով, 1962 թվականին Արևմտյան Գերմանիայի հանքահորերում սպանվել են 771 հանքագործ և 130 հազար 680 մարդ խեղվել են: Այդ նշանակում է, որ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում դժբախտ պատահարի զոհ է դարձել 3 հանքափորից մեկը:

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔԱՐՏՈՒՂԱՐՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Սկզբնական պարտիական կազմակերպություններն այն օղակներն են, որոնց ամբողջ գործունեությունը տեղի է ունենում անմիջականորեն աշխատավորության շրջաններում, որոնք ղեկավար պարտիական օրգանները կապում են բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի լայն մասսաների հետ: Սկզբնական պարտիական կազմակերպությունը համախմբում է տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության առաջավոր մարդկանց, նրանց ոգեկոչում նորանոր նախաձեռնությունների, մասսաներին մղում աշխատանքային նոր սխրագործությունների:

Առանց սկզբնական պարտիական կազմակերպությունների ակտիվ գործունեության, առանց լայն մասսաներին իրենց շուրջը համախմբելու, անհնարին է պարտիայի և կառավարության որոշումների հաջող կենսագործումը: Ահա թե ինչու մեր երկրի առջև դրված մեծ խնդիրների լուծման կարևորագույն պայմաններից մեկը պարտիան միշտ համարել է իր սկզբնական կազմակերպությունների ակտիվության անընդհատ բարձրացումը: Սկզբնական պարտիական կազմակերպությունների ակտիվությունն ու մարտունակությունը հատուկ կարևորություն են ստանում այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման, նրա նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանը և լարված պայքար է մղում յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար:

Սկզբնական պարտիական կազմակերպությունների թիվը մեզանում անընդհատ մեծանում է: Ներկայումս մեզ մոտ չկա արտադրական ձեռնարկություն, շինարարական կազմակերպություն, սովխոզ կամ կոլտնտեսություն, լինի այն մեծ թե փոքր, որտեղ չլինի պարտիական կազմակերպություն: Սկզբնական պարտկազմակերպությունների անընդհատ աճը ղեկավար պարտիական օրգաններին հնարավորություն է տալիս իրենց ամենօրյա գործունեության ընթացքում հենվելու նրանց վրա, կատարելագործելու պարտիական աշխատանքի ոճն ու մեթոդները և բոլորին մոբիլիզացնելու՝ առաջադրված տնտեսական ու քաղաքական խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

ՍՄԿԿ XXII համագումարն ընդունեց կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագիրը և պարտիայի կանոնադրությունը՝ նրա ներքին կյանքի հիմնական օրենքը: Նոր կանոնադրությունը ներթափանցված է մեծ հոգատարությամբ պարտիայի սկզբնական կազմակերպությունների նկատմամբ: Պարտիան մեծ ուշադրություն է հատկացնում սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների կազմը գրագետ, կարող ու քաղաքականապես հասուն կոմունիստներով համալրելու գործին:

Պարտիայի կանոնադրության մեջ ասված է, որ պարտիական սկզբնական կազմակերպությունների քարտուղարներն անընդմեջ կարող են ընտրվել ոչ ավելի, քան երկու ընտրական շրջան: Ընտրությունների նման կարգի նպատակահարմարությունն ակնառու կերպով իր դրական արդյունքն է տվել հետհամագումարյան ժամանակաշրջանում: Վերջին երկու տարիների ընթացքում պարտիայի քաղկոմ-շրջկոմները և արտադրական պարտիական կոմիտեները, անշեղորեն ղեկավարվելով պարտիայի կանոնադրությունով ու պարտիական ղեկավար օրգանների ընտրությունների հրահանգով, ղեկավար պարտիական օրգանների կազմի ընտրության ժամանակ առավելագույն չափով ապահովել են ներպարտիական դեմոկրատիան՝ պարտիական մասսաների առավել բարձր ակտիվության ու ինքնագործունեության պայմաններում: Սկզբնական պարտիական կազմակերպությունների 1963 թվականի հաշվետու ընտրական ժողովները ցույց տվին պարտկազմակերպությունների ակտիվությունը ռեսպուբլիկայի քաղաքական ու տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում: Պարտկազմակերպությունների բյուրոների, նրանց քարտուղարների հաշվետու զեկուցումների մեջ հմտորեն ընդհանրացվել էր պարտիական աշխատանքի դրական փորձը, ցույց էին տրվել դրան հասնելու և նորի, առաջավոր փորձի լայն արմատավորման ու տարածման ճանապարհները:

Սկզբնական պարտիական կազմակերպությունների վերջին հաշվետու-ընտրական ժողովներում կազմակերպությունների քարտուղարների կեսից ավելին (50,6 տոկոսը) առաջին անգամն է ընտրվել: Որպես պարտկազմակերպությունների քարտուղարներ առաջ են քաշվել մեծ թվով երիտասարդ, քաղաքականապես հասուն, արտադրության ոլորտում աշխատող առաջավոր, մասնագետ կոմունիստներ, որոնք պրակտիկ աշխատանքներում իրենց լավ են դրսևորել և ցույց են տվել ժողովրդին ծառայելու իրենց պատրաստակամությունը: Ռեսպուբլիկայի սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարներից 1476 հոգի անմիջականորեն աշխատում են արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կոլտնտեսային և սովխոզային արտադրության ոլորտում: Քարտուղարների կազմի 48 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն՝ հիմնականում մասնագիտական թեքումով, միջնակարգ և թերի միջնակարգ կրթություն ունեցողները կազմում են 51,6 տոկոսը: Անցյալում բավականին մեծ տոկոս էին կազմում տարրական կրթություն ունեցող քարտուղարները. մի հանգամանք, որը խիստ անհանգստացնում էր վերադաս պարտիական օրգաններին: Վերջին ընտրությունների ժամանակ պարտիայի քաղկոմ-շրջկոմները և պարտիական կոմիտեները լրջորեն զբաղվեցին այդ կարևոր հարցով և, եթե նախորդ ընտրությունների ժամանակ տարրական կրթություն ունեցող քարտուղարները կազմում էին մեկից-երկու տոկոս, ապա այժմ նրանք կազմում են 0,4 տոկոս:

Ղեկավարվելով ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումի որոշումներով, սկզբնական պարտիական կազմակերպություններն ամեն ինչ անում են արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում պարտիական քաղաքական ու կազմակերպական աշխատանքի բարելավման, սոցիալիստական մրցության ծավալման, արդյունաբերության և գյուղատնտեսության առջև դրված խնդիրների կենսագործման համար:

Այս օրերին ամենուրեք սկզբնական պարտիական կազմակերպություն-



ները պայքարում են է՛լ ավելի բարձրացնելու մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը, ապահովելու ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների պատմական որոշումների կենսագործումը:

Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեն, քաղաքային, շրջանային և արտադրական պարտիական կոմիտեները մշտապես հոգում են սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների ուսուցման մասին, նրանց համար սիստեմատիկաբար կազմակերպում սեմինար պարապմունքներ, կարճատև ուսուցման դասընթացներ, հրահանգչական խորհրդակցություններ, փորձի փոխանակում: Ուսուցման նման ձևերն օգնում են պարտկազմակերպությունների քարտուղարներին՝ տիրապետելու ղեկավարման արվեստին, կատարելագործելու աշխատանքի ոճն ու մեթոդները:

Կազմակերպության քարտուղարների ուսուցումը ներկայումս տարվում է այն ուղղությամբ, որ պարտիական կազմակերպական ղեկավարությունը լինի քաղաքական ղեկավարության մակարդակին, որ կազմակերպական աշխատանքը լիովին ապահովի պարտիայի որոշումների կատարումը: Մեր օրերում ավելի քան բարձրացել է պահանջկոտությունը պարտիական կազմակերպության քարտուղարի նկատմամբ: Ժամանակն անընդհատ նորանոր խնդիրներ է դնում նրանց առաջ, որոնց հաջող լուծումը պարտիական վերադաս օրգաններից պահանջում է առավել լավ կազմակերպել նրանց ուսուցման գործը, բազմակողմանի օգնություն ցույց տալ սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարներին, որոնք պետք է օժտված լինեն նորի զգացումով, ընթանան կյանքի հետ, ժամանակին տեսնեն այն ամենը, ինչ առաջադեմ է և պարտիական քաղաքական աշխատանքը համակերպեն այդ պահանջների ոգուն:

Սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների ուսուցումը կազմակերպելու լավագույն ձևերից են Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական կոմիտեի և տեղական կոմիտեների կողմից անցկացվող սեմինարները, պարտիական աշխատանքի փորձի ուսումնասիրությունն ու տարածումը, որը տվել և տալիս է դրական արդյունք: ՀԿՊ Կենտրոնական կոմիտեն հաշվի առնելով, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների մեծ մասն առաջին անգամն է ընտրվել, նրանց սովորեցնելու նպատակով վերջին երեք ամսվա ընթացքում կոլտնտեսային-սովխոզային, վարչական օրգանների, արտադրական, շինարարական և տրանսպորտի ձեռնարկությունների նորընտիր քարտուղարների համար կազմակերպեց սեմինարներ, որտեղ տարբեր թեմաների շուրջ զեկուցումներով հանդես եկան պարտիայի Կենտրոնական կոմիտեի քարտուղարները, ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի նախագահն ու նրա տեղակալները, պարտիական ու սովետական ապարատի մի շարք ղեկավար ընկերներ: Այդ սեմինարներն օգնեցին բարձրացնելու նորընտիր քարտուղարների գիտելիքները: Այդպիսի սեմինարներ սիստեմատիկ կերպով տեղի կունենան նաև հետագայում:

Պարտիական կազմակերպությունների քարտուղարների կազմի նորացումը քաղկոմ-շրջկոմներից և պարտիական կոմիտեներից պահանջում է պլանավորված կերպով զբաղվել քարտուղարների ուսուցման գործով: Պետք է նկատի ունենալ, որ կազմակերպության քարտուղարներն արտադրական, քաղաքական և առօրյա բազմապիսի հարցերով մշտապես առնչվում են կոլեկտիվների անդամների հետ, զբաղվում նրանց դաստիարակության խնդիրներով,

մոբիլիզացնում կոմունիստներին և կոլեկտիվի անդամներին՝ կենսագործելու տվյալ ձեռնարկության առջև դրված խնդիրները։ Իրենց աշխատանքների բազմազանությամբ նրանք մշտապես գտնվում են, փոքր թե մեծ, ամենատարբեր խնդիրների լուծման առաջատար գծում։ Այդ առումով էլ, նրանց ուսուցման գործը պետք է կազմակերպել այնպես, որ անընդհատ բարձրանան նրանց ակտիվությունն ու պատասխանատվությունը։

Պարտիական կոմիտեների պատասխանատու աշխատողները, լինելով սկզբնական պարտիական կազմակերպություններում, պետք է հանգամանորեն ծանոթանան պարտիական կազմակերպության գործունեությանը, պարտկազմակերպության քարտուղարի աշխատանքի ոճին, կարողանան տեսնել նրա աշխատանքներում եղած թերությունները և գործարար օգնություն ցույց տան դրանք վերացնելու նպատակով։ Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարների ուսուցման գործը չպետք է սահմանափակվի միայն սեմինարներով. հարկավոր է հոգալ և այն մասին, որ պարտկազմակերպության քարտուղարներն ընդգրկվեն պրոպագանդիստական աշխատանքներում, հաճախակի զեկուցումներով հանդես գան պարտիական կազմակերպության, կոլեկտիվի ընդհանուր ժողովներում։ Պարտիական կոմիտեները պետք է աշխատեն կազմակերպությունների քարտուղարներին և նրանց տեղակալներին ընդգրկել կոմիտեների պլենումներում, բյուրոյի նիստերում և ակտիվի ժողովներում քննարկվող հարցերի նախապատրաստման ու ուսումնասիրության գործում, ապահովել նրանց մասնակցությունը հարցերի քննարկմանը։

Պարտկազմակերպությունների և բյուրոների նորընտիր քարտուղարների ուսուցմանը նպաստում է նաև նրանց ամենօրյա գործունեության խնամքով ուսումնասիրությունը և արդյունքների գործարար քննարկումը կոմիտեների պլենումներում կամ բյուրոների նիստերում։ Հաշվետվություններ լսելը պարտիական կոմիտեներին հնարավորություն է տալիս ժամանակին տեսնելու պարտիական կազմակերպության աշխատանքներում տեղ գտած սուվերոտ կողմերը, օգնում է ժամանակին նկատելու կազմակերպության քարտուղարի թերությունները։ Հաշվետվություն լսելը ակտիվ ու գործարար միջամտություն է կոմիտեի կողմից տվյալ պարտկազմակերպության գործունեությանը։ Հաշվետվության առթիվ կոմիտեի ընդունած որոշումը, եթե այն ժամանակին է ընդունվում, կոնկրետ է և ունի գործնական բնույթ ու կազմակերպչական աշխատանք է տարվում դրա կատարման ուղղությամբ, մեծ չափով լիցքավորում է պարտկազմակերպությանը, բարձրացնում նրա մարտունակությունը։

Պարտիական կազմակերպությունների քարտուղարների հաշվետվությունները պլենումներում և բյուրոների նիստերում լսելիս, լավ կլինի հրավիրել տվյալ կոմիտեի ենթակայության նույնատիպ բնույթի պարտիական կազմակերպությունների քարտուղարներին, որոնք հարցի քննարկումից ուսանելի շատ բան կստանան։ Այս շատ շնորհակալ աշխատանքն անբավարար են կատարում Սիսիանի, Մեղրու, Բասարգեչարի պարտիական կոմիտեները, որոնք բյուրոներում և պլենումներում ամբողջ 1963 թվականի ընթացքում չեն լսել ոչ մի պարտիական կազմակերպության քարտուղարի հաշվետվություն։

Առաջին անգամ ընտրված պարտիական կազմակերպությունների քարտուղարներին ներպարտիական աշխատանքների վարման մինիմում գիտելիքներով զինելու գործին զգալիորեն կնպաստի պարտիական աշխատանքի փորձի սիստեմատիկ ուսումնասիրությունը և դրա արդյունքները խորհրդակցու-



թյուններում ու սեմինարներում լայնորեն քննարկելը։ Առանձին պարտիական աշխատողներ և պարտկազմակերպությունների քարտուղարներ սխալ պատկերացում ունեն պարտիական աշխատանքի դրական փորձի ուսումնասիրության ու տարածման մասին. այսպես. որևէ պարտկազմակերպության դրական աշխատանքն ուսումնասիրելիս նրանք ջանում են միայն վեր հանել գործի դրական կողմերը, անտեսելով առանձին օղակներում տեղ գտած թերությունները, հարկ չհամարելով քննադատել դրանք և այդ նույն կազմակերպության բյուրոյին ու քարտուղարին, որոնք, ինչպես հարկն է, չեն զբաղվում պարտկազմակերպության անդամների դաստիարակությամբ։ Դրական փորձի մասին խոսելիս անհրաժեշտ է նշել նաև տվյալ կազմակերպության աշխատանքներում եղած թերությունները։

Պարտկազմակերպությունների քարտուղարների մոտ 35 տոկոսն անցյալում աշխատել է իբրև քարտուղարների տեղակալ։ Այդ հանգամանքը պարտավորեցնում է մեր պարտիական կոմիտեների ղեկավար աշխատողներին՝ հոգ տանել քարտուղարների տեղակալների ուսուցման մասին։ Պարտկազմակերպության քարտուղարների տեղակալների վրա դրված են որոշակի պարտավորություններ, և նրանք պատասխանատու են կազմակերպության առաջ։ Պետք է հաշվի առնել այն, որ նրանց զգալի մասը հաջորդ ընտրությունների ժամանակ կարող է ընտրվել պարտիական կազմակերպության քարտուղար։

Տեղերում պետք է սկզբնական կազմակերպությունների քարտուղարների և ակտիվի մասնակցությամբ կազմակերպել ցեխային պարտիական կազմակերպությունների քարտուղարների և պարտխմբերի կազմակերպիչների ուսուցումը, մշտապես պետք է հիշել, որ դրանք այն պարտիական օղակներն են, որոնք անմիջապես շփվում են արտադրության ոլորտում աշխատող մարդկանց հետ, և նրանց ակտիվ գործունեությունից շատ բան է կախված ցեխի, տեղամասի առջև դրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար։ Պարտիական կազմակերպությունների քարտուղարների ուսուցման գործին մեծ չափով կօգնի մամուլի էջերում պարտիական կյանքի հարցերի սիստեմատիկ լուսաբանումը։

Պարտիական կոմիտեի առաջնահերթ խնդիրը պետք է լինի արմատապես բարելավել պարտիական կազմակերպությունների քարտուղարների ուսուցման գործը։ Պարտիական աշխատանքը ձևամոլություն չի հանդուրժում։ Պետք է մեծ հոգատարություն ցուցաբերել պարտիական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների նկատմամբ, օգնել նրանց՝ հաղթահարելու իրենց աշխատանքում եղած դժվարությունները։

Ե. ՄԵԼՔՈՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական օրգանների
բաժնի վարիչի տեղակալ

## ՊԱՐՏԻԱՅԻ ՇԱՐՔԵՐՆ ԸՆԴՈՒՆԵԼ ՄԻԱՅՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻՆ

Կոմունիստական պարտիան ունի մի վեհ նպատակ։ Մարդկության համար ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիզմի կառուցումն է այն, որի համար անհրաժեշտ է, որ նրա շարքերում համախմբված լինեն այդ գործի կայուն և անձնվեր մարտիկներ։ Մեր պարտիայի ամբողջ պատմությունը

վկայում է այն մասին, որ նա մշտապես հոգ է տանում իր շարքերի անաղարտության ու որակական կազմի բարելավման մասին։ Պարտիայի դռները բաց են բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական աշխատավոր ինտելիգենցիայի ամենաարժանավոր, գիտակից, ակտիվ ու նվիրված մարդկանց առաջ, որոնք ընդունում են պարտիայի ծրագիրն ու կանոնադրությունը։ Բայց նա, ով ցանկանում է լինել կոմունիստական պարտիայի անդամ, չի կարող բավարարվել միայն պարտիայի ծրագիրն ու կանոնադրությունը ընդունելով, նա պարտավոր է կենսագործել դրանք։ Ուստի ամեն ոք մտնելով պարտիայի շարքերը, ջանում է ապրել ու աշխատել կոմունիստաբար։ Չէ՞ որ յուրաքանչյուր ոք, երբ իր բախտը կապում է պարտիայի հետ, քաղաքական ու բարոյական լուրջ պարտավորություններ է ստանձնում։

Կոմունիստական պարտիան աշխատավորության ավանգարդն է, սովետական ժողովրդին ուղղություն տվող ղեկավար ուժը։ Նա ծառայում է ժողովրդին, պաշտպանում նրա շահերը։ Աշխատավորները հավատում են իրենց պարտիային, ընթանում են նրա նշած ուղիով, նրա մեջ տեսնելով մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը: Մեր պարտիայի նկատմամբ աշխատավորության անսահման վստահության փայլուն արտահայտությունը նրա շարքերի մշտական աճն է։ Այդ կարելի է ցույց տալ ՍՄԿՊ-ի մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմունիստական պարտիայի շարքերի քանակական աճով։ ՍՄԿՊ XXII համագումարից հետո անցած ժամանակամիջոցում Հայաստանի կոմունիստական պարտիան աճել է ավելի քան 11 հազար մարդով և մոտավոր հաշվարկումներով այժմ մեր ռեսպուբլիկայի բնակչության 20 մարդուց մեկը կոմունիստ է։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում նաև պարտիայի շարքերի որակական կազմի բարելավմանը։ Որպես կանոն պարտիայի շարքերում ընդունելություն կատարելիս, խստորեն պահպանվում է անհատական ընտրության լենինյան սկզբունքը։ ՍՄԿՊ շարքերն են ընդունվում արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, կուլտուրայի, գիտության, տեխնիկայի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառների առաջավոր մարդիկ։ 1963 թվականի ընթացքում Ապարանի շրջանում ՍՄԿՊ անդամության թեկնածուներ ընդունվածների 83, Իջևանի շրջանում՝ 70,7, Շամշադինի շրջանում՝ 70, Հոկտեմբերյանի շրջանում՝ 69,8, Աշտարակի շրջանում՝ 60 տոկոսն առաջավոր բանվորներ ու կոլտնտեսականներ են։ Պարտիայի շարքերն են ընդունվել կոլտնտեսային դաշտերի այնպիսի առաջավորներ, ինչպես՝ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ, էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Արագած գյուղի առաջավոր բամբակագործ Մայրանուշ Կամավոսյանը, բամբակագործ Քյարամ Ամարյանը, Լենուղի գյուղի կոլտնտեսության կաթնա-ապրանքային ֆերմայի վարիչ Վահան Գրիգորյանը, նույն վարչության Այղրլճի սովխոզի տրակտորիստ Խաժակ Ղահրամանյանը, Աշտարակի արտադրական վարչության Շամիրամ գյուղից առաջավոր կոլտնտեսականներ Ջորբա Դրոբյանը, Համիդ Շավոյանը և ուրիշներ։

Սակայն նույնը չի կարելի ասել Սիսիանի, Սևանի, Ղուկասյանի, Մարտունու պարտիական կազմակերպությունների մասին, որտեղ պատշաճ ուշադրություն չի հատկացվում պարտիայի մեջ ընդունվողների որակական կազմի բարելավմանը։ Սիսիանի պարտկազմակերպությունում, օրինակ, 1963 թվականին



ՍՄԿՊ շարքերն ընդունված թեկնածուների ընդհանուր թվի միայն 20,7 տոկոսն են կազմում կոլտնտեսականներ։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում ավելի ու ավելի է աճում գիտության ու տեխնիկայի դերը, մտավոր աշխատանքի մարդկանց դերը՝ ինչպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, այնպես էլ աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում։ Ուստի պարտիայի շարքերն ընդունելու համար անհրաժեշտ է ինտելիգենցիայի, հատկապես առաջատար պրոֆեսիաների ներկայացուցիչներից ընտրել լավագույններին։ Այս տեսակետից բավական բնորոշ է էջմիածնի արտադրական վարչության պարտիական կազմակերպության աշխատանքը։ Այստեղ 1963 թվականին պարտիայի անդամության թեկնածուներ ընդունված 60 ծառայողներից 41-ը, կամ ընդհանուր թվի 70 տոկոսը գյուղատնտեսության մասնագետներ են։ Ահա թե ինչու մինչև 1964 թվականի հունվարի 1-ը էջմիածնի արտադրական վարչության պարտիական կազմակերպություններում հաշվվում էր 460 կոմունիստ գյուղատնտեսական կրթությամբ, որը կազմում է պարտկոմիտեում հաշվառման մեջ գտնվող բոլոր կոմունիստների 12,3 տոկոսը։

Լենինյան կոմերիտմիությունը մեր պարտիայի հավատարիմ օգնականն է, նրա անսպառ ռեզերվը։ Սովետական միլիոնավոր երիտասարդներ դաստիարակության մեծ դպրոց են անցնում կոմերիտմիության շարքերում։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության ամենամյա համալրման զգալի մասը կատարվում է կոմերիտմիության հաշվին։ Այսպես, օրինակ, Ապարանի պարտկազմակերպության աճի ավելի քան 48 և Աշտարակի պարտկազմակերպության՝ մոտ 40 տոկոսը կոմերիտականներ են։ Ընդ որում, աճը տեղի է ունեցել ի հաշիվ անմիջականորեն արտադրության մեջ աշխատողների։ Սակայն մեր ռեսպուբլիկայում դեռևս ցածր է կոմերիտականներին պարտիայի շարքերը ընդունման տոկոսը։ Եվ այդ այն դեպքում, երբ մեծ թվով լավագույն կոմերիտականներ՝ բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներներ, տեխնիկներ, գյուղատնտեսներ, մեխանիզատորներ՝ տարիքն անցնելու պատճառով դուրս են մնացել կոմերիտմիությունից։ Այսպես, օրինակ, 1963 թվականին էջմիածնի կոմերիտական կազմակերպությունում հաշվառումից դուրս են մնացել 610, Հոկտեմբերյանի կոմերիտական կազմակերպությունում՝ 784 մարդ։ Մինչդեռ էջմիածնի պարտկազմակերպությունում ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվածների 23, իսկ Հոկտեմբերյանում՝ 32 տոկոսն են միայն կոմերիտականներ։ Դրա գլխավոր պատճառն այն է, որ կոմերիտական կազմակերպություններում անբավարար է դաստիարակչական աշխատանքը։ Կոմունիստների պարտիան ապագան կառուցողների պարտիա է, իսկ ապագան պատկանում է մեր երիտասարդությանը։

Մեծ է կանանց դերը կոմունիստական շինարարության գործում։ Կանայք ակտիվ մասնակցում են պետական ապարատի կառավարմանը, երկրի հասարակական-քաղաքական կյանքին, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական պլանների կատարմանը։ Օրինակ, էջմիածնի արտադրական վարչության 22763 աշխատունակ կոլտնտեսականներից և սովխոզների բանվորներից 10965 հոգին կանայք են։ Սակայն ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում դեռևս փոքր է կին կոմունիստների թիվը։ Օրինակ, Իջևանի գյուղական պարտիական կազմակերպությունում 1963 թվականին

պարտիայի անդամության թեկնածու են ընդունել միայն 6, Շամշադինում՝ 7, Ապարանում՝ 8, Հոկտեմբերյանում՝ 12, Էջմիածնում՝ 19 կնոջ և այլն։

Այնտեղ, ուր մարդկանց հետ տարվող աշխատանքը գտնվում է պատշաճ մակարդակի վրա, ակնառու է պարտիական աշխատանքի ներգործությունը։ Եթե որևէ պարտիական կազմակերպությունում երկար ժամանակ ընդունելություն չի կատարվել, այդ ցույց է տալիս, որ այնտեղ անբավարար կազմակերպական աշխատանք է տարվել։ Այդպիսի կազմակերպություններից են՝ Հոկտեմբերյանի արտադրական վարչության Հակկո, Կաքավաձոր, Կարմրաշեն գյուղերի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունները, որոնք վերջին մի քանի տարիներին ոչ ոքի չեն ընդունել պարտիայի մեջ։ Նման թերություններ կան նաև Աշտարակի արտադրական վարչության մի շարք պարտիական կազմակերպություններում։

Հայտնի է, որ պարտիայի մեջ ընդունվողը՝ մյուս փաստաթղթերի հետ միասին, պետք է ներկայացնի նաև ՍՄԿՊ երեք անդամի երաշխավորություն։ Այդ կոմունիստները երաշխավորում են, որ ընտրությունը ճիշտ է կատարված, որ պարտիայի շարքերն են գալիս իրոք արժանավոր ու ստուգված մարդիկ։ Երաշխավորությունն իսկական պարտիական փաստաթուղթ է երաշխավորվող անձնավորության արժանիքների, պարտիայի գործին նվիրված լինելու մասին։ Պարտիայի անդամն իրավունք ունի և պարտավոր է երաշխավորել միայն նրան, ում լավ է ճանաչում արտադրական հասարակական համատեղ աշխատանքից, գիտե նրա լավագույն գործնական հատկությունները և վստահում է նրան։ Նա պարտիական կազմակերպության առաջ պատասխանատու է իր երաշխավորության համար։

Սակայն, ցավոք սրտի, պատահում են այնպիսի կոմունիստներ, որոնք անհոգություն, անպատասխանատվություն են ցուցաբերում և պարտիայի մեջ ընդունվելու համար երաշխավորում են անարժան մարդկանց։ Դիմենք փաստերին։ Կարլեն Լուսինյանն աշխատում էր Երևանի կոշիկի № 7 ֆաբրիկայի կարի արտադրամասում։ 1963 թվականի հունվարին նա ընդունվել է ՍՄԿՊ անդամ։ Բայց միայն մի քանի ամիս հետո, 1963 թվականի հունիսի 4-ին, ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի բյուրոն նրան հեռացրեց պարտիայի շարքերից՝ գողության համար։ Պարտիայի անդամ ընդունվելու համար Լուսինյանին երաշխավորել էին ինժեներ-տնտեսագետ Հովհաննես Նազարյանը, վարպետ Համբարձում Պողոսյանը և հաշվետար Գևորգ Մանուկյանը։

Կարելի է հիշատակել նաև այսպիսի օրինակ։ Բալաև Մամեդ Ալիօղլին Էջմիածնի արտադրական վարչության Դեմուրչի գյուղի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչն է։ Պարտիական սկզբնական կազմակերպությունը՝ կոլտնտեսության նախագահ Աբաս Սաֆարօղլի Հեյդարովի, գյուղսովետի գործկոմի նախագահ Ռզա Սուլեյմանօղլի Բագիրովի և դպրոցի դիրեկտոր Իսլամ Մահարլամօղլի Աբասովի երաշխավորությամբ նրան ընդունեց ՍՄԿՊ անդամության թեկնածու։ Էջմիածնի պարտկոմիտեի բյուրոն 1963 թվականի դեկտեմբերի 17-ին քննարկելով այդ հարցը, չհաստատեց պարտկազմակերպության որոշումը Բալաևին պարտիայի մեջ ընդունելու մասին՝ արտադրական ցածր ցուցանիշների համար։ Իրոք, Մ. Բալաևի ղեկավարած ֆերման, ինչպես 1962, նույնպես և 1963 թ. չէր կատարել կաթի արտադրության պլանը։

Սրանից պետք է լուրջ հետևություն անել։ Երաշխավորությունները դեռևս բավական չեն մարդուն պարտիայի մեջ ընդունելու համար, եթե պարտիական



կազմակերպությունը նրան լավ չի ուսումնասիրել և չի ստուգել գործնական աշխատանքում։ Պարտիայի մեջ ընդունվողին պետք է ճանաչեն ոչ միայն երաշխավորողները, այլև ամբողջ պարտիական կազմակերպությունը։ ՍՄԿՊ կանոնադրության համաձայն պարտիայի մեջ ընդունելությունը կատարվում է բացարձակապես անհատական կարգով, պարտիական կազմակերպության միջոցով, որտեղ պարտիայի մեջ ընդունվողի հարցը քննարկվում ու այդ մասին որոշում է կայացվում պարտիական ընդհանուր ժողովում, որն ուժի մեջ է մտնում պարտիական կոմիտեի հաստատումից հետո միայն։ Այդ վկայում է, որ պարտիայի քաղկոմները, շրջկոմներն ու արտադրական պարտիական կոմիտեները պատասխանատու են այս կամ այն ընկերոջը պարտիայի շարքերն ընդունելու համար։ Նրանք պատասխանատու են ո՛չ միայն իրենց, այլև սկզբնական պարտկազմակերպության ողջ գործունեության համար։

Նման դրությունը պարտիական կոմիտեներին պարտավորեցնում է տեղերում նախապես կազմակերպել բացատրական աշխատանք, մշտապես հոգալ պարտիայի շարքերի աճը ճիշտ ու կազմակերպված անցկացնելու մասին։ Այդ նպատակով հարկ է սիստեմատիկորեն սեմինար պարապմունքներ ու հրահանգչական խորհրդակցություններ անցկացնել սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների հետ, որտեղ նրանց պարզաբանել պարտիայի մեջ ընդունելու վերաբերյալ կանոնադրական պահանջները։ Այդ կօգնի պարտիայի մեջ ընդունելություն կատարելու գործում ավելի բարձրացնելու սկզբնական պարտիական կազմակերպությունների և բոլոր կոմունիստների պատասխանատվությունը։

Մեզ մոտ, ցավոք, դեռևս կան սկզբնական պարտիական կազմակերպություններ, որտեղ այդ կարևոր գործին լուրջ մոտեցում չեն ցուցաբերում և պարտիայի մեջ են ընդունում անարժան, պատահական մարդկանց։ Դիմենք փաստերին։ Լենինականի կոշիկի № 2 ֆաբրիկայի նախկին բանվոր Գուրգեն Վահրամյանը, որը դեռևս 1938 թվականին խուլիգանության համար դատապարտվել էր մեկ տարվա ազատազրկման, 1945 թվականին ընդունվում է ՍՄԿՊ-ի շարքերը։ 1950 թվականին գողության համար նա դատապարտվում է յոթ տարվա ազատազրկման և վտարվում պարտիայի շարքերից։ Պատիժը կրելուց հետո նա կրկին վերադառնում է ֆաբրիկա։ Ֆաբրիկայի պարտկազմակերպությունը 1959 թվականի նոյեմբերին նրան կրկին ընդունում է պարտիայի անդամության թեկնածու, իսկ 1961 թվականին՝ անդամ։ Ներկայումս Գ. Վահրամյանը դարձյալ կանգնած է պարտիական դատի առաջ։ Նա հափշտակել է պետական ունեցվածքը։ Ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունը 1964 թվականի հունվարի 17-ին, իսկ ՀԿՊ Լենինականի քաղկոմը հունվարի 30-ին նրան վտարեցին ՍՄԿՊ շարքերից։

Ինչպես հայտնի է, ՍՄԿՊ կանոնադրության համաձայն պարտիայի մեջ ընդունվողն անցնում է մեկ տարվա թեկնածուական շրջան, որպեսզի կարողանա լրիվ դրսևորել իրեն, իսկ պարտիական կազմակերպությունը՝ բազմակողմանիորեն ստուգի նրա անձնական արժանիքներն ու քաղաքական հատկանիշները։ Թեկնածուական ստաժը լուրջ քննություն է և քաղաքական ու կազմակերպական կոփման դպրոց պարտիայի շարքերն ընդունվողի համար։ Նշանակում է՝ պարտիական կազմակերպությունը պարտավոր է այնպես կազմակերպել թեկնածուների հետ տարվող աշխատանքը, որ պարտիայի անդամության թեկնածուներից յուրաքանչյուրն զգա, թե որքան մեծ պարտականություններ

է ստանձնում և ինչպիսի պատասխանատվություն է կրում ինքը, դառնալով կոմունիստական մեծ պարտիայի անդամ։ Պարտիայի անդամության թեկնածուն պետք է իմանա, որ պարտիայի անդամ ընդունվելու նախապատրաստական շրջանի հաջողությունն, առաջին հերթին, կախված է իրենից։ Նա պարտավոր է միշտ և ամենուրեք ակտիվորեն կենսագործել պարտիական որոշումները, օրինակելի լինել աշխատանքում, պարտիական ու պետական կարգապահության պահպանման գործում, հանդես բերել սկզբունքային և անհաշտ վերաբերմունք աշխատանքում նկատվող թերությունների նկատմամբ։

Փորձը ցույց է տալիս, որ թեկնածուական ստաժը հմտորեն ու արդյունավետ օգտագործելու, սկզբնական պարտիական կազմակերպությունների և իրենց՝ թեկնածուների կողմից կանոնադրական պահանջները ստույգ ու խստորեն պահպանելու դեպքում, պարտիայի անդամության թեկնածուների մեծ մասը կոփվում և ձեռք է բերում կոմունիստին վայել հատկություններ։

Հայտնի է, որ պարտկազմակերպությունները թեկնածուներին դաստիարակում են աշխատանքում, պարտիական հանձնարարությունների կատարման ու նրանց քաղաքական գիտելիքների բարձրացման միջոցով։ Կոմունիստների քաղաքական դաստիարակությունը և կազմակերպական կոփումն այժմ հրատապ նշանակություն ունեն, քանի որ պարտիայի մեջ ընդունվողների մեծ մասը կազմում է երիտասարդությունը։

Չնայած այս ամենին, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքները ինչպես հարկն է չկազմակերպելու հետևանքով, մի շարք պարտիական կոմիտեներում մեծ է ՍՄԿՊ անդամության ժամկետանց թեկնածուների թիվը։ Հոկտեմբերյանի պարտիական կազմակերպությունում ժամկետանց թեկնածուները, բոլոր թեկնածուների համեմատությամբ, առ 1-ը հունվարի 1964 թվականի, կազմում էին 38,1, Արթիկի պարտկազմակերպությունում՝ 38,9, Աշտարակում՝ 31,9, Կամոյում՝ 39 տոկոս և այլն։

Մեր առաջնահերթ խնդիրն է՝ անաղարտ պահել պարտիայի շարքերը, ավելի բարձր պահել պարտիայի անդամի կոչումը։ Իսկ դրա համար հարկավոր է մշտապես հիշել, որ պարտիան պատասխանատու է իր յուրաքանչյուր անդամի, իսկ պարտիայի յուրաքանչյուր անդամ՝ պարտիայի համար։

Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ
ՀԿՊ Կենտրոնական կոմիտեի
տեսուչ

## ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժամանակակից պայմաններում բարձր բերք ստանալ հնարավոր է միայն ցանքատարածությունների ոռոգման ու պարարտացման միջոցով։ Մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումները երկրագործի ձեռքը տվին առատ բերքի ստացման բանալին։ Հմտորեն օգտագործելով այն, անհրաժեշտ է բացել հողի «գաղտնիքները» և բերքատվության բարձրացմամբ ավելացնել ժողովրդական հարստությունը։

Հանքային պարարտանյութերի արդյունավետ օգտագործման բավակա-



նին հարուստ փորձ է կուտակել Անիի գյուղատնտեսական արտադրական վարչության Լենինականի պետական սելեկցիոն կայանը։ Այսպես, օրինակ, փորձարարական այն տարածություններում, որտեղ բոլորովին հանքային պարարտանյութ չի օգտագործվել, վերջին հինգ տարիներում շաքարի ճակնդեղի միջին բերքը կազմել է 340,9 ցենտներ, իսկ այն տարածություններում, որտեղ ամեն մի հեկտարին տրվել է մեկական ցենտներ ազոտական, կալիական ու ֆոսֆորական պարարտանյութեր, վերջին երեք տարվա (1961—1963 թթ.) միջին բերքը կազմել է 434,2 ցենտներ, կամ յուրաքանչյուր հեկտարից ավելի է ստացվել 93,3 ցենտներ միջին բերք։

Պարարտանյութերը մեծ չափով նպաստում են հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։ Նույն սելեկցիոն կայանում «Նովոուկրաինկա—83» սորտի աշնանացան ցորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարին 40 կիլոգրամ ամոնիակային բորակ՝ (սելիտրա) տալու դեպքում միջին բերքն ավելացել է 7,5 ցենտներով։ Իսկ «Նոր կոնդիկ» գարնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարին 60 կիլոգրամ ազոտական, 60 կիլոգրամ ֆոսֆորական և 30 կիլոգրամ կալիական պարարտանյութ տալու դեպքում՝ մեկ հեկտարի միջին բերքատվությունը ջրովի տարածություններում բարձրացել է 11, իսկ անջրդի տարածություններում՝ 9 ցենտներով։

Ըստ արժանվույն գնահատելով սելեկցիոն կայանի գիտական կոլեկտիվի փորձը, մեր պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունը ձեռնարկել են լուրջ միջոցառումներ՝ այն վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում արմատավորելու համար։ Օրինակ՝ Կամոյի, Կառնուտի, Շիրակի, Ազատանի, Ախուրյանի, Մայիսյանի, Արևիկի և այլ կոլտնտեսություններ պարարտացման շնորհիվ բարձրացրել են շաքարի ճակնդեղի բերքատվությունը՝ 150—160 ցենտներից հասցնելով մինչև 300—350 ցենտների։ Իսկ Ջիթհանքովի, Նոր կյանքի, Վարդաքարի, Արևիկի, Ազատանի, Շիրակի, Մեղրաշենի և այլ կոլտնտեսություններ տարիներ շարունակ պարարտանյութերի ճիշտ օգտագործման շնորհիվ մյուս տնտեսությունների համեմատությամբ հեկտարից 4—5 ցենտներով ավելի հացահատիկի բերք են ստանում։

Վերջերս կոլտնտեսություններն ստանձնեցին ցանքերի պարարտացման, դաշտավարության և անասնաբուծության քիմիացման վերաբերյալ նոր պարտավորություններ։ Պարարտանյութերի արդյունավետությունը որոշելու համար, օրինակ, Ջիթհանքովի կոլտնտեսությունն առանձնացրել է 30 հեկտար հողատարածություն, որի վրա տարբեր տեսակի և քանակի պարարտանյութեր օգտագործելով, եգիպտացորենի, կորնգանի, հացահատիկի և ընդեղենի մշակման փորձեր են կատարվում։ Այդ աշխատանքները գլխավորում են կոլտնտեսության նախագահ Ե. Սարգսյանը և գյուղատնտես Ց. Ստեփանյանը։ Ջիթհանքովցիների նախաձեռնությունը մեծ հետաքրքրություն է առաջ բերել վարչության մասնագետների շրջանում։ Վարչության ագրոքիմիկոսների խումբը մասնագիտական ու մեթոդական օգնություն է ցույց տալիս ջիթհանքովցիներին՝ հաջողությամբ ավարտելու համար սկսած գործը։

Պարարտացման միջոցով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը նկատելիորեն բարձրացել է նաև Մայիսյանի կոլտնտեսությունում։ Հատկանշական է հետևյալ օրինակը։ Մայիսյանի և Քեթիի կոլտնտեսությունները գտնվում են հողակլիմայական գրեթե միևնույն պայմաններում։ Դեռ ավելին. Քեթիի կոլտնտեսության հողերն ավելի արգավանդ են։ Սակայն վեր-

չին երկու-երեք տարում Քեթիի կոլտնտեսությունում պարարտանյութերի օգտագործման չափը պակասել է, իսկ Մայիսյանի կոլտնտեսությունում ավելի լավ են օգտագործվել պարարտանյութերը, որի շնորհիվ այստեղ հեկտարից ստացվել է ավելի շատ շաքարի ճակնդեղ ու հացահատիկ, քան՝ Քեթիի կոլտնտեսությունում։

Քեթիի կոլտնտեսության օրինակը եզակի չէ։ Վարչությունում կան կոլտնտեսություններ, որոնք խուսափում էին հանքային պարարտանյութեր ձեռք բերելուց և օգտագործելուց։ Անցյալ տարի Լանջիկի, Աղինի, Ջորակապի, Քարաբերդի, Հովտաշենի, Շիրակավանի կոլտնտեսությունները շրջանային «Հայգյուղտնտեխնիկայի» բաժանմունքներից չեն ստացել ոչ մի տոննա հանքային պարարտանյութ։ Առանձին տնտեսություններում էլ բավարարվում են միայն ազոտական պարարտանյութ ձեռք բերելով, անհիմն կերպով անտեսելով բազմակողմանի պարարտացման օգտավետությունը։ Գետափի, Գեղանիստի, Հայկասարի, Սպանդարյանի, Լեռնանցքի, Կապսի և այլ կոլտնտեսություններ չեն ստացել ոչ մի տոննա սուպերֆոսֆատ։ Չեն օգտագործվում նաև կալիական պարարտանյութերը, հատկապես շաքարի ճակնդեղի պլանտացիաների մշակման ժամանակ։

ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումը խնդիր դրեց՝ գյուղատնտեսական արտադրության արագ զարգացման համար մեծապես ավելացնել պարարտանյութերի արտադրանքը։ Նախատեսված է վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների համար 1964 թվականին ստանալ 11700 տոննա հանքային պարարտանյութ, որից՝ 4200-ը ամոնիակային բորակ, 6650-ը սուպերֆոսֆատ և 850-ը կալիական աղ։ Վարչության տնտեսություններում անցյալ տարվա համեմատությամբ մոտ հինգ հազար տոննա պարարտանյութ ավելի է օգտագործվելու։ Այդ նշանակում է՝ յուրաքանչյուր հեկտարից ավելի ստանալ 50—60 ցենտներ շաքարի ճակնդեղ, որն ամբողջ արտադրական վարչությունում կկազմի 1500 տոննա։

Աչքաթող չեն արվում նաև տեղական հնարավորությունները։ Նախատեսվում է 1964 թվականին, անցած տարվա 75640 տոննայի փոխարեն, օգտագործել 128 հազար տոննա տեղական պարարտանյութ։ Դրանով արդեն զգալիորեն կավելանան հացահատիկային կուլտուրաների պարարտացվող տարածությունները։ Անցյալ տարվա 9456 հեկտարից այս տարի այն կհասնի 15000-ի։

Պարարտանյութերի արդյունավետ օգտագործման համար պետք է լավ իմանալ տնտեսության բոլոր հողերի բերրիության աստիճանը, ինչպես նաև տարբեր կուլտուրաների պահանջը կամ վերաբերմունքը պարարտանյութերի նկատմամբ։ Այդ նպատակով արտադրական վարչության ագրոքիմիկոսների խումբը մոտ 6000 հեկտարից վերցրել է հողանմուշներ և ուղարկել լաբորատոր ստուգման՝ ագրոքիմիական քարտեզներ կազմելու համար։ Այդ խումբը ձգտում է այնպես անել, որ 1965 թվականին բոլոր տնտեսություններն ունենան իրենց հողատարածության ագրոքիմիական քարտեզները։

Պարարտացման ճիշտ նորմաներ սահմանելու նպատակով տարբեր տնտեսություններում դրվել են շաքարի ճակնդեղի, եգիպտացորենի, աշնանացան ցորենի ցանքատարածությունների պարարտացման փորձեր։ Այս աշխատանքները ղեկավարում է Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության հողագիտության և ագրոքի-



միայի գիտահետազոտական ինստիտուտը։ Ինստիտուտի կոլեկտիվի շնորհակալ աշխատանքի արդյունքն է և այն, որ արդեն բոլոր տնտեսություններում ավարտվել են օգտագործվելիք հողատարածությունների հետազոտության դաշտային աշխատանքները, որը կօգնի բերքատվության բարձրացմանը։

Անհրաժեշտ է իմանալ, թե ինչպես պահպանել և ինչ ձևով հողին հանձնել պարարտանյութը։ Անցած տարիներում, բացի ազոտական պարարտանյութերից, շատ տնտեսություններում չէին պահեստավորվում սուպերֆոսֆատն ու կալիական աղը։ Այդ պարարտանյութերը բեռնաթափման վայրերից սովորաբար փոխադրվում էին դաշտ և թողնվում քամու, անձրևի ու արևի տակ այնքան ժամանակ, մինչև կորցնում էին իրենց օգտակար արժեքավոր հատկությունները և, փաստորեն, իբրև «բալաստ» տրվում հողին։ Ինչ խոսք, որ նման «պարարտացումը» շատ հեռու է պարարտացում հասկացողությունից և ոչ մի օգուտ չի կարող բերել կոլտնտեսությանը։ Այդ հետևանք է այն բանի, որ տարիներ շարունակ անուշադրության են մատնել պահեստային հարմարություններ ստեղծելու հարցը։ Նույնիսկ «Գյուղտնտեխնիկայի» բազաներում ամեն ինչ պահեստավորվում է, բացի պարարտանյութերից։ Հայտնի է, որ հանքային պարարտանյութերի ամեն մի ցենտներ հացահատիկի պոտենցիալ բերք է։ Այս բանը դժվարությամբ են գիտակցում առանձին տնտեսությունների վայ-ղեկավարներ և անհոգություն են հանդես բերում այդ արժեքավոր նյութերի անկորուստ փոխադրման ու պահեստավորման գործում։

Պարարտանյութերի արդյունավետությունը շատ բանով կախված է նաև այն բանից, թե ինչ ձևով են դրանք տրվում հողին։ Պարարտացումը ո՛չ միայն աշխատատար է ձեռքի աշխատանքի դեպքում, այլև ցանկալի արդյունք չի տալիս, երբ անհավասարաչափ է տրվում ցանքատարածություններին, մանավանդ որ հաճախ էլ այն հնարավոր չի լինում հողի մեջ ներդնել պահանջվող խորությամբ։ Այս հարցերին պետք է տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները մեծ ուշադրություն հատկացնեն։ Կարևոր է և այն, որ առաջիկայում մեր արդյունաբերությունը գյուղատնտեսությանը կտա հեղուկ պարարտանյութեր, որոնց կիրառումը հնարավոր է միայն մեքենաների միջոցով։ Այդ գործի հաջող կազմակերպման համար էլ պետք է ունենալ ինչպես պարարտանյութերի պահպանման, այնպես էլ դրանք գործադրելու անհրաժեշտ հարմարանքներ և ունակություն։

Դեռևս վարչության ոչ բոլոր տնտեսություններն ունեն պարարտանյութ ցրող մեքենաներ, եգիպտացորենի ու ճակնդեղի բուսասնիչ կուլտիվատորներ, իսկ առանձին տնտեսություններում էլ եղած մեքենաները շարքից դուրս են եկել անխնամ թողնելու հետևանքով։ Հարկ է, որ համապատասխան կազմակերպությունները մտածեն տնտեսությունները պարարտանյութեր շաղ տվող մեքենաներով ապահովելու, իսկ տնտեսությունների ղեկավարներն էլ՝ դրանց ռացիոնալ օգտագործման մասին։

Քիմիան գյուղատնտեսությանը տալիս է նաև հերբիցիդներ ու թունաքիմիկատներ, որոնք հնարավորություն են ընձեռում անասնաբուծության մեջ սպիտակուցների պակասը լրացնելու, կերի ռացիոնում համապատասխան նյութեր ավելացնելու միջոցով։ Փաստորեն այդ անասնաբուծության մթերատվության բարձրացման լրացուցիչ միջոց է։ Սակայն մինչև օրս մեր վարչության ոչ մի տնտեսություն ոչինչ չի արել այդ ուղղությամբ։ Չնայած որ հերբիցիդների փորձարկումը Լենինականի սելեկցիոն կայանում, հատկապես

եգիպտացորենի դաշտերում, տվել է լավ արդյունք, բայց մինչև այժմ այն դեռևս չի կիրառվում վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Բավարար ուշադրություն չի հատկացվում նաև վնասատուների ու հիվանդությունների դեմ թունաքիմիկատներով պայքարելու գործին։

Արտադրական վարչության մասնագետների, «Հայգյուղտնտեխնիկայի» երեք բաժանմունքների և կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների մեղքով երկար ժամանակ մեզ մոտ անտեսվել է բակտերիալ պարարտանյութերի օգտագործումը։ Վարչության 53 կոլտնտեսություններից և յոթ սովխոզներից միայն երկու տնտեսություն են ստացել կորնդանի նիտրոգեն բակտերիալ պարարտանյութ։ Ելնելով գործերի նման վիճակից, վարչությունը ներկայումս մշակում է միջոցառումներ՝ հանքային ու տեղական պարարտանյութերի, թունաքիմիկատների, հերբիցիդների, բակտերիալ պարարտանյութերի ստացման, պահպանման և արդյունավետ օգտագործման ուղղությամբ։

Ներկա գյուղատնտեսական տարին հաջող անցկացնելու, արտադրական վարչության գյուղատնտեսության աշխատողներին հանքային պարարտանյութերի և քիմիական մյուս միջոցների օգտագործման առաջավոր մեթոդներին և գիտության նվաճումներին ծանոթացնելու նպատակով վերջերս Մարալիկում և Ախուրյանում կազմակերպվեցին հինգօրյա սեմինար պարապմունքներ, որոնց մասնակցում էին 150 մարդ։ Նախատեսված է նմանօրինակ դասընթացները դարձնել սիստեմատիկ։

Ս. ՆԱԶԱՐՅԱՆ
ՀԿՊ Անիի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի քարտուղարի տեղակալ

## ԿՈՆԿՐԵՏ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ ԵՆ ՊԵՏՔ

Սպիտակի արտադրական վարչությունն սպասարկում է Սպիտակի և Կիրովականի նախկին շրջանների քառասուն կոլտնտեսությունների և սովխոզների։ Այդ տնտեսությունները տնօրինում են ավելի քան 76 հազար հեկտար օգտագործելի հող, որից մոտ 23 հազարը վարելահող է։

Շատ կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունները, որոնք կարողացել են մոբիլիզացնել մասսաներին՝ հայտաբերելու և օգտագործելու ներքին ռեզերվները, արտադրության մեջ ներդնելու գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, շոշափելի արդյունքի են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրանքն ու անասունների գլխաքանակն ավելացնելու գործում։ Վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում վերջին տարիներս միայն կովերի գլխաքանակն ավելացել է 3600-ով, մանր եղջերավորներինը՝ 24100-ով։ Անցյալ տարի արտադրվել է 363 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ, կամ 146 հազար ցենտներով ավելի, քան 1953 թվականին. յոթնամյակի առաջին տարվա համեմատությամբ 1963 թվականին կաթի արտադրանքն ավելացել է 3000 տոննայով, միսինը՝ 2380 ցենտներով, ձվինը՝ մոտ 700 հազար հատով։

Արտադրական վարչությունում կան շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ, ուր մարդիկ հողը մշակում են ագրոկանոնների համաձայն, խնամքով



ու լրիվ կարողությամբ շահագործում են մեքենաները, ինչպես հարկն է օգտագործում պարարտանյութերը, արտադրության մեջ ներդնում գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը։ Այդ ամենի շնորհիվ հանրային դաշտերից նրանք ստանում են բարձր բերք, իսկ հոտից՝ լավագույն արդյունք։ Անցյալ տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմաններում էլ բազմաթիվ գյուղերի կոլտնտեսություններ ու սովխոզներ (Սարահարթ, Կաթնաղբյուր, Հարթագյուղ, Մեծ Պարնի, Նալբանդ) շաքարի ճակնդեղի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքեցին 280—350 ցենտներ բերք։

Ազնիվ ու բարեխիղճ աշխատանքի շնորհիվ Սարահարթ գյուղի կոլտնտեսության՝ Երանուհի Համբարյանի ղեկավարած օղակը անցյալ տարի իր մշակած շաքարի ճակնդեղի ցանքատարածության ամեն մի հեկտարից ստացավ 420 ցենտներ բերք։ Հարթագյուղի կոլտնտեսության անվանի կթվորուհիներից Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Սեդա Փահլևանյանը յուրաքանչյուր կովից ստացել է 2300 կիլոգրամ կաթ, որը 150 կիլոգրամով ավելի է նախորդ տարվա ստացվածից։ Կաթնաղբյուրի կոլտնտեսության հովիվ Շավարշ Վարդերեսյանը յուրաքանչյուր 100 մաքիից ստացել և աճեցրել է 100 գառ, ամեն մի ոչխարի բրդատվության առաջադրանքը գերակատարել է մեկ կիլոգրամով։ Անձնվեր աշխատանքով լավագույն արդյունքների են հասել նաև Սպիտակ ավանի սովխոզի ճակնդեղագործ Ազնիվ Պողոսյանը, Մեծ Պարնի գյուղի կոլտնտեսության հովիվ Գրիգոր Ոսկանյանը և շատ ուրիշներ։

Սպիտակի արտադրական վարչությունում միատեսակ պայմաններ ունեցող կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն տնտեսական տարբեր արդյունքներ։ Այստեղ կան զգալի թվով տնտեսություններ (Ղուրսալի, Գոգարան, Դեբեդ, Լեռնապատ և այլ գյուղերի կոլտնտեսությունները), որոնք իրենց էկոնոմիկայով շատ ետ են մնում առաջավորներից. որոշ ետ մնացող կոլտնտեսություններ, կրճատելով հասկավոր կուլտուրաների ցանքատարածությունները, հոգ չեն տարել եղած ցանքերը լավ մշակելու և պլանային առաջադրանքով սահմանված բերքատվությունն ապահովելու մասին։ Մարդկանց անպատասխանատվության, աշխատանքային անբավարար կարգապահության, հողը պատշաճ ձևով չմշակելու հետևանքով այս տնտեսություններում վերջին տարիներս հասկավոր կուլտուրաների ցանքատարածությունների մեկ հեկտարից միջին հաշվով ստացվել է 1,7—5 ցենտներ բերք։

Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների կրճատման և ցածր բերքատվության պատճառով արտադրական վարչության տնտեսություններում, 1963 թվականին 38,5 հազար ցենտներով պակաս ապրանքային հաց է արտադրվել, քան 1953 թվականին։

Ետ մնացող տնտեսություններում էական տեղաշարժեր չեն նկատվում անասնապահության զարգացման բնագավառում։ 1953 թվականի համեմատությամբ, Շենավանի, Ղուրսալիի, Ջիգդամալի, Ֆիոլետովոյի, Լեռնապատի, Հայդարլիի, Հալավարի կոլտնտեսություններում պակասել է խոշոր, իսկ Բզովդալի, Դեբեդի կոլտնտեսություններում՝ մանր եղջերավոր անասունների գլխաքանակը։ Օրինակ, եթե 1953 թվականին Լեռնապատի կոլտնտեսությունն ուներ 689 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, ապա 1963 թվականին այն իջավ 592 գլխի, Ղուրսալիի կոլտնտեսությունում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կրճատվել է 160-ով։

Ետ մնացող կոլտնտեսություններում անասունները վատ խնամելու ու անկանոն կերակրելու հետևանքով ցածր է նրանց մթերատվությունը: Անցյալ տարի մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը Եղեգնուտի, Դեբեդի, Հայդարլիի, Գյոզալդարայի և մյուս կոլտնտեսություններում կազմել է 590—650 կգ, իսկ ոչխարի բրդատվությունը՝ 0,8—1,8 կգ:

Մշակվող կուլտուրաների ցածր բերքատվության և անասնաբուծության ցածր մթերատվության հետևանքով բարձր է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը: Եթե մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը արտադրական վարչության առաջավոր կոլտնտեսություններում կազմում է 11—13 ռուբլի, ապա Ղուրսալիի կոլտնտեսությունում այն հասնում է 27 ռ. 46 կոպեկի, Գոգարանում՝ 34, ռ. 66 կոպեկի, իսկ Հայդարլիում՝ 40 ռուբլու: Բարձր է նաև մսի ինքնարժեքը:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ցածր մակարդակի և այդ կոլտնտեսությունների տնականորեն ետ մնալու հիմնական պատճառներից են՝ հողագործության ցածր կուլտուրան, ագրոկոմպլեքս միջոցառումների և զոոանասնաբուժական կանոնների կիրառման ժամկետների խախտումները, գյուղատնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակը, հանքային ու օրգանական պարարտանյութերի, մեքենաների անբավարար օգտագործումը, որակյալ մասնագետների պակասը:

Ցանքատարածությունների բերքատվությունը բարձրացնելու գործում վճռական դեր ունի ոռոգելի հողերում ջրի ռացիոնալ օգտագործումը: Մինչդեռ շատ կոլտնտեսություններ շռայլում են այդ հարստությունը: Անցյալ տարի ոռոգման ցանցը վատ օգտագործելու հետևանքով Գոգարանի, Շենավանի, Քարաձորի կոլտնտեսությունները յուրաքանչյուր հեկտարից ստացան 120—150 ցենտներ շաքարի ճակնդեղ, մինչդեռ նրանց հարևան Սարահարթի, Կաթնաջրի, Հարթագյուղի, Մեծ Պարնիի կոլտնտեսություններն ստացան 250—350 ցենտներ, իսկ առանձին բրիգադներ ու օղակներ՝ ավելի շատ:

Արտադրության ցածր մակարդակը հետևանք է այն բանի, որ վարչության պարտիական կազմակերպությունները, գյուղատնտեսության մասնագետները, արտադրական վարչությունը ինչպես հարկն է չեն ղեկավարում այդ բազմաճյուղ տնտեսությունները, չեն կարողանում հայտնաբերել ու գործի դնել նրանց ռեզերվներն ու հնարավորությունները: Պարտկոմի ու վարչության աշխատողները անբավարար են զբաղվում արտադրության առաջավորների փորձի ու գյուղատնտեսական գիտության նվաճումների արմատավորմամբ: Վարչության շատ տնտեսություններում բազմաթիվ բիգադներ, կոլտնտեսականներ, սովխոզի բանվորներ անձնվեր աշխատանքի հիանալի օրինակներ են ցույց տալիս. նրանք հասել են արտադրական բարձր ցուցանիշների: Սակայն նրանց փորձը լավ չի ուսումնասիրվում ու ներդրվում մյուս տնտեսություններում:

Այդ կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսապես ետ մնալու գլխավոր պատճառն այն է, որ արտադրական վարչությունը, պարտիական կոմիտեն ու սկզբնական պարտկազմակերպություններն անբավարար են զբաղվել կոլտնտեսային ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերով: Ետ մնացող 16 կոլտնտեսությունների նախագահներից միայն երկուսն ունեն գյուղատնտեսական մասնագիտական կրթություն, իսկ չորս կոլտնտեսությունների նախագահներ նույնիսկ թերի միջնակարգ կրթություն չունեն: Այդ տնտեսություններում տեղի է ունենում ղեկավար կադ-



րերի հոսունություն: Այսպես, վերջին վեց տարում Դեբեդ գյուղի կոլտնտեսությունում փոխվել են 8 նախագահ, ըստ որում դրանցից երեքը նախագահել են 1—6 ամիս, իսկ Հալավարի կոլտնտեսությունում այդ նույն ժամանակամիջոցում փոխվել են 5 նախագահ:

Ավելի վատ վիճակում է կոլտնտեսային ֆերմաների վարիչների ընտրության ու տեղաբաշխման գործը:

Պրակտիկան ցույց է տվել, որ եթե տնտեսությունը գլխավորում է կայուն գիտելիքներով ու փորձված կազմակերպիչ, գործերը հաջող են ընթանում: Օրինակ՝ Վահագնի և Եղեգնուտի կոլտնտեսությունները գտնվում են միատեսակ հողակլիմայական պայմաններում. մեկը Դեբեդ գետի ձախ ափին է, մյուսը՝ աջ: Բայց այդ երկու տնտեսությունների էկոնոմիկան խիստ տարբերվում է: Վահագնի կոլտնտեսությունը ղեկավարում է երիտասարդ, եռանդուն կազմակերպիչ Արժանիկ Մայիլյանը, որն ունի բարձրագույն կրթություն, մասնագիտությամբ գյուղատնտես է, կոլտնտեսության նախագահ է ընտրվել 1960 թվականին: Իսկ Եղեգնուտի կոլտնտեսությունում վերջին չորս տարում փոխվել են 5 նախագահ, մեկը մյուսից անհաջող: Մինչև վերջերս տնտեսությունը ղեկավարում էր. նախկին տրակտորային բրիգադայի բրիգադավար Գուրգեն Ավետիքյանը. չնայած նա ունի միջնակարգ կրթություն, բայց նրան պակասում է անհրաժեշտ կազմակերպչական ջիղը և մասնագիտական գիտելիքները: Այդ երկու կոլտնտեսությունների արտադրական ցուցանիշները ցույց են տալիս, թե տնտեսության էկոնոմիկան ճիշտ կազմակերպելու, լավ արդյունքների հասնելու գործում որքան վճռական դեր ունի տնտեսության ղեկավարը:

Հնարավո՞ր է արդյոք վերացնել որոշ տնտեսությունների էկոնոմիկայի ետ մնալը: Անշուշտ հնարավոր է: Արտադրության վարչության ետ մնացող գրեթե բոլոր տնտեսություններն ունեն ռեզերվներ ու հնարավորություններ՝ առաջիկա 1—2 տարում առաջավոր տնտեսությունների մակարդակին հասնելու: Ամենից առաջ անհրաժեշտ է ուժեղացնել այդ տնտեսությունների ղեկավարությունը, դրանց գլուխ դնել շնորհալի կազմակերպիչների, առաջին հերթին՝ գյուղատնտեսության մասնագետների, որոնք կկարողանան մոբիլիզացնել ակտիվի ու ողջ աշխատավորության ուժերը և կարճ ժամանակամիջոցում հաղթահարել տնտեսությունների տևական ետ մնալը:

Տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկայի բարձրացմանը մեծ չափով կարող են խթանել աշխատանքային կարգապահության ամրապնդումը, կոլտնտեսային արտելի կանոնադրության անշեղ կենսագործումը, մասնավոր սեփականատիրական ձգտումների դեմ մղվող պայքարը, պարտիական ու տնտեսական ղեկավարման մակարդակի բարձրացումը և տնտեսությունների նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումը

Քիչ չեն փաստերը, երբ այդ տնտեսություններում աշխատունակ կոլտնտեսականների 25 տոկոսից ավելին չի կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը, իսկ զգալի թվով աշխատունակ մարդիկ օգտվում են կոլտնտեսականների բոլոր արտոնություններից ու իրավունքներից, չմասնակցելով հանրային աշխատանքներին:

Աշխատանքային կարգապահության ամրապնդման, կոլտնտեսությունների էկոնոմիկայի բարձրացման գործում մեծ դեր ու անելիքներ ունեն կոմունիստները, կոմերիտականները, գյուղի ակտիվը: Մինչդեռ գրեթե ետ մնացող բոլոր կոլտնտեսություններում կոմունիստների մեծ մասը չի ապահովում իր

ավանգարդային դերը։ Ավելին, առանձին կոմունիստներ խույս են տալիս անմիջականորեն արտադրության մեջ աշխատելուց։ Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ Արջուտի, Բզովդալի, Գյոզալդարայի, Դեբեդի և մյուս գյուղերի կոլտնտեսություններում անմիջականորեն արտադրության մեջ աշխատում են կոմունիստների միայն 25—35 տոկոսը։

Սպիտակի արտադրական վարչության հետ մնացող տնտեսությունների էկոնոմիկայի բարձրացման կարևոր պայմաններից մեկը ոռոգման ցանցի ընդլայնումն է։ Վերջին երեք տարում Հայկական ՍՍՌ ջրային տնտեսության մինիստրությունը ջրահետախուզական աշխատանքներ է կատարել Սպիտակի շրջանում։ Պարզվել է, որ սակավաջուր տնտեսությունների հողերը ջրովի կարելի է դարձնել միայն Խնկոյանի ջրամբարի կառուցման միջոցով։ Ճիշտ է, այստեղ ոռոգման աշխատանքների ինքնարժեքն ավելի բարձր կլինի, քան ռեսպուբլիկայի մյուս շրջաններում կառուցվող ոռոգման սիստեմներինը, բայց Փամբակի սարահարթի կոլտնտեսություններում ու սովխոզներում կայուն ու երաշխավորված բերք ապահովելու միակ ելքը Խնկոյանի ջրամբարի կառուցումն է։ Ջրամբարի կառուցումը կբավարարի Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական ջրի աճող պահանջները և ոռոգելի կդարձնի հազարավոր հեկտար արգավանդ հողեր։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումների և դրանց իրագործման վերաբերյալ պարտիական, սովետական և գյուղատնտեսական ղեկավար աշխատողների 1964 թվականի փետրվարի 28-ի խորհրդակցությունում ընկեր Ն. Ս. Խրուշչովի տված ծրագրային զեկուցման մեջ պարզ ու որոշակի նշված են այն բոլոր միջոցառումները, որոնց հետևողական կենսագործումը կապահովի կոլտնտեսային ու սովխոզային արտադրության հետագա վերելքը։ Սպիտակի արտադրական վարչության, պարտիական կոմիտեի ու սկզբնական պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ գյուղի աշխատավորներին մոբիլիզացնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները և ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ առաջ քաշված խնդիրները լիովին կենսագործելու և դրանով իսկ ապահովելու բոլոր տնտեսությունների, այդ թվում նաև հետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի զարգացումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության արագ ավելացումը։

Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական օրգանների բաժնի տեսուչ





## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԲԱՂԿԱՑՈՒՑԻՉ ՄԱՍՆ Է

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Միության բոլոր բուհերում սկսվում է գիտական կոմունիզմի հիմունքների դասընթացը, որի ուսումնասիրության անհրաժեշտությունը հիմա ամենքն են գիտակցում։ Սոցիալիզմի լագերի ձևավորումը, սոցիալիզմի վերածվելը արդիականության վճռական ուժի, համաշխարհային կոմունիստական շարժման վերելքը, ազգային ազատագրական պայքարի մեծ հաջողությունները, գաղութակալության կրախը, մեր երկրում կոմունիզմի ծավալուն շինարարությունը, համաշխարհային-պատմական մյուս տեղաշարժերը հրամայաբար պահանջում են իրենց հատուկ ուսումնասիրումը՝ որպիսին և գիտական կոմունիզմի հիմունքների դասընթացն է։

Սակայն ներկայումս նոր հասարակարգի վիթխարի փորձը, նրա տեսական ամփոփումը ՍՄԿԿ ծրագրում, կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունների փաստաթղթերում, այնքան հարստացրել ու ընդարձակել են գիտական կոմունիզմի ուսմունքի բովանդակությունը, որ նրա յուրացումը երբեմնի շրջանակներում դարձել է անհնար։ Գիտական կոմունիզմի հիմունքների առանձնացումը որպես ինքնուրույն առարկայի՝ թույլ կտա բազմակողմանիորեն և խոր ուսումնասիրելու կոմունիզմի տեսությունը, առավել բարելավելու ուսանողների և բոլոր աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործը։

### ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԵՐԵՔ ԲԱՂԿԱՑՈՒՑԻՉ ՄԱՍԵՐԸ

Մարքսիզմ-լենինիզմը ներդաշնակ և ամբողջական ուսմունք է պրոլետարիատի կողմից հասարակական հարաբերությունների ռևոլյուցիոն վերափոխման և անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման անխուսափելիության մասին։ Այն ընդգրկում է, և չի կարող չընդգրկել, աշխարհը վերափոխելու պրոցեսի փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական կողմերը, ուստի և բաղկացած է փիլիսոփայությունից, քաղաքատնտեսությունից և գիտական սոցիալիզմից։

Սակայն մարքսիզմը վերոհիշյալ երեք բաղկացուցիչների պարզ գումարը չէ, այլ դրանց անբաժանելի և օրգանական միասնությունը։ Մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերը գտնվում են դիալեկտիկական փոխադդեցության մեջ։ Միևնույն ժամանակ, սակայն, դրանցից յուրաքանչյուրը գրավում է իր հատուկ տեղը, կատարում իր ուրույն դերը ամբողջական ուսմունքում։ Դրանց

փոխադարձ կապը, միասնությունը, կրում են ոչ միայն դիալեկտիկական կոոր-
դինացիայի, այլև դիալեկտիկական սուբորդինացիայի բնույթ։

Մարքսիստական փիլիսոփայությունը՝ դիալեկտիկական և պատմական
մատերիալիզմը, գիտություն է բնության, հասարակության և մարդկային գի-
տակցության զարգացման համընդհանուր օրենքների մասին։ Եվ, որպես այդ-
պիսին, այն կազմում է մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն ուսմունքի հիմքն
ու էությունը։ Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը մարքսիզմ-լե-
նինիզմի, այդ ռևոլյուցիոն ուսմունքի «հանրահաշիվն է»։

Քաղաքատնտեսությունը բացահայտում է կապիտալիստական հասարա-
կության արտադրության, փոխանակման, բաշխման օրենքները՝ նրանց ծագ-
ման, զարգացման և անխուսափելի անկման ընթացքում, օրենքներ, որոնց
ճիշտ ըմբռնումով պրոլետարիատը կապիտալիստական հասարակարգը ռևո-
լյուցիոն ճանապարհով վերափոխում է սոցիալիստականի։ Քաղաքատնտե-
սությունը բացահայտում է նաև սոցիալիզմի և կոմունիզմի տնտեսական
զարգացման օրենքները։

Մատերիալիստական դիալեկտիկան և պատմության մատերիալիստական
ըմբռնումը՝ մարքսիստական աշխարհայացքի այդ հերկուլեսյան սյուները,
կազմում են մարքս-լենինյան տնտեսական ուսմունքի կենդանի ոգին, մեթո-
դոլոգիան և հիմքը։

Վերջապես, մարքսիզմ-լենինիզմի երրորդ բաղկացուցիչ մասը՝ գիտա-
կան կոմունիզմը, չէր կարող աշխարհ գալ, եթե չլինեին երկու այնպիսի բեղմ-
նավոր սկզբունքների փոխազդեցությունը, ինչպիսիք են՝ պատմական մատե-
րիալիզմը և հավելյալ արժեքի մարքսյան ըմբռնումը՝ մարքսիզմ-լենինիզմի
քաղաքատնտեսության այդ անկյունաքարը [1]։

Գիտական կոմունիզմը պրոլետարական շարժման տեսական արտահայ-
տությունն է, ասել է Ֆ. Էնգելսը։

Եվ այդ պատճառով գիտական կոմունիզմը, որպես պրոլետարիատի
ընդհանուր աշխարհայացքի արտահայտություն ոչ միայն ելնում է պատմա-
կան մատերիալիզմից և հավելյալ արժեքի օրենքից, այլև իր մեջ մարմնավո-
րում է, որպես հիմնական մոմենտներ՝ պատմության մատերիալիստական
ըմբռնումը և Մարքսի տնտեսական ուսմունքը։

Նկատի ունենալով հավելյալ արժեքի օրենքի հայտնագործումը, Էնգելսը
«Անտի-Դյուրինգում» նշում էր հենց այդ առանձնահատկությունը, երբ գրում
էր. «դրանից է սկիզբն առնում գիտական սոցիալիզմը։ Այդ հարցի լուծումը
գիտական սոցիալիզմի կենտրոնակետն է» [2]։

Հետևաբար, գիտական կոմունիզմը մարքսիզմ-լենինիզմի այնպիսի
բաղկացուցիչ մասն է, որը և միևնույն ժամանակ ընդգրկում է մյուս մասե-
րը և պսակավորում է մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն ողջ ուսմունքը։ Գի-
տական կոմունիզմի էության սինթետիկ այդ հասկացությունը բացահայտել
է և Վ. Ի. Լենինը։ «Կարլ Մարքս» աշխատությունում նա գրում էր, որ Մարքսը
և Էնգելսը «Մանրբուրժուական սոցիալիզմի զանազան ուսմունքների դեմ

1 «Այս երկու կարևոր հիմքերի վրա է խարսխվում ժամանակակից գիտական սոցիա-
լիզմը»,— ասում էր Էնգելսը։ Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 205։

2 Ֆ. Էնգելս, «Անտի-Դյուրինգ», 1952 թ., էջ 26։



սուր պայքար մղելով, մշակեցին ռևոլյուցիոն պրոլետարական սոցիալիզմի
կամ կոմունիզմի (մարքսիզմի) թեորիան ու տակտիկան» [1]։

Այստեղ, ինչպես տեսնում ենք, Վ. Ի. Լենինը «կոմունիզմ» և «մարքսիզմ»
հասկացողությունները նույնացնում է։

Այսպիսով, գիտական կոմունիզմը մարքսիստական փիլիսոփայության և
քաղաքատնտեսության արդյունքն է, սակայն միևնույն ժամանակ մարք-
սիզմ-լենինիզմի զարգացման բարձրագույն արդյունքն է, այն ընդհանուրը,
որը բոլոր բաղկացուցիչ մասերը միավորում է որպես ամբողջական ուսմունք,
որը ձևավորում է մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն էությունը՝ որպես պրո-
լետարիատի գործունեության տեսություն և տակտիկա։

Գիտական կոմունիզմը փիլիսոփայության համեմատ ավելի քիչ ընդհա-
նուր գիտություն է, բայց դիալեկտիկան հենց նրանում է, որ նա միաժամա-
նակ մարքսիզմ-լենինիզմի՝ որպես պրոլետարիատի աշխարհայացքի, ամփո-
փիչ գիտությունն է։

Այն մարքսիստական փիլիսոփայության և քաղաքատնտեսության
արգասիքն է, բայց այնպիսի արգասիք, որն այդ ուսմունքի բոլոր բաղկացու-
ցիչ մասերը միավորում է մեկ միասնական ամբողջության մեջ, ձևավորում
նրա ռևոլյուցիոն էությունը որպես պրոլետարիատի գործունեության տեսու-
թյուն և ծրագիր։

## ՈՒՏՈՊԻԱԿԱՆ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄ

Բայց ո՞րն է կոմունիզմի մասին ուսմունքի՝ որպես գիտության էությունը։
Դա բնավ սոցիալիզմը, կոմունիզմը գիտություն դարձնելու պայմանների հար-
ցը չէ։ Էնգելսը, նկատի ունենալով Մարքսի հիմնավորած պատմական մատե-
րիալիզմը և հավելյալ արժեքի օրենքը, նշել է, որ «շնորհիվ այդ հայտնագոր-
ծությունների սոցիալիզմը դարձավ գիտություն»։ Սակայն, կրկնում ենք, որ
կարևորը միայն այն չէ, թե ինչպես է առաջ եկել գիտությունը սոցիալիզմի և
կոմունիզմի մասին, այլ այն, թե ինչն է բնորոշում այն որպես գիտություն։

Արդեն շատ տասնամյակներ մարքսիզմի հակառակորդները փորձում են
«ապացուցել», որ գիտական կոմունիզմը գիտություն չէ։ Դեռևս ռևիզիոնիզմի
նահապետ է. Բեռնշտեյնը իր ռեֆերատներից մեկում հարցնում էր. «Հնարա-
վո՞ր է արդյոք գիտական սոցիալիզմը»։ Եվ իր սեփական իմաստության գի-
տակցությամբ լի պատասխանում էր. «Յուրաքանչյուր ճշմարիտ գիտության
հիմքը փորձն է, գիտությունն իր շենքը կառուցում է կուտակված գիտելիքնե-
րի վրա։ Իսկ սոցիալիզմը, դա ուսմունք է ապագա հասարակական կարգի
մասին, ուստի նրա ամենաբնորոշ գիծը չի կարող գիտականորեն սահմանվել»
(Бернштейн, Возможен ли научный социализм? Одесса, 1906 г.)։

Բայց մարքսիզմի անհաշտ օպոնենտը խորապես մոլորվում էր։ Գիտա-
կան կոմունիզմը միշտ հանդիսացել և հանդիսանում է համաշխարհային
պրոլետարական ռևոլյուցիոն շարժման փորձի, իսկ այժմ՝ սոցիալիզմի ու կո-
մունիզմի կառուցման փորձի տեսական ընդհանրացումը։ Ով փոքր-ինչ ծա-
նոթ է գիտական կոմունիզմի զարգացման պատմությանը, կամ Բեռնշտեյնի
նման «չի մոռանում» այն, գիտե, որ գիտական կոմունիզմն իր շենքը կառու-
ցել և կառուցում է փորձի և «կուտակված գիտելիքների» վրա։ Միայն պրոլե-

1 Վ. Ի. Լենին, Երկեր հատոր 21, էջ 45։

տարական ռևոլյուցիայի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման փորձի և գիտելիքների հիման վրա է իր տեսական ընդհանրացումները և եզրակացությունները կատարում գիտական կոմունիզմը։

Սխալ է և այն կարծիքը, իբրև-թե գիտական կոմունիզմը դա «ուսմունք է ապագա հասարակական կարգի մասին»։ Կոմունիզմի ժամանակակից հակառակորդներից շատերը ձգտում են զանազան եղանակներով մարքսիզմ-լենինիզմը պատկերել իբրև «նոր հայտնություն», «մեսիա», «աստվածային հազարամյա թագավորություն երկրի վրա» և այլն։ Սակայն պատմությունը ցույց է տալիս, թե որքան խղճուկ են նրանք իրենց նման փորձերով։ Ոչ թե ապագայի վերաբերյալ ինչ-որ հորինվածքն է կազմում գիտական կոմունիզմի բովանդակությունը, այլ **ներկան**, հասարակարգի ռևոլյուցիոն վերափոխման իրականությունը՝ սկսած կապիտալի երկրներում տեղի ունեցող դասակարգային մարտերից և վերջացրած սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարով, սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակներով։

Ինչպես դիպուկ նկատել է Պլեխանովը,— «Սոցիալիզմը ուսմունք էր **ապագա հասարակական կարգի մասին** այն ժամանակ, երբ այն դեռևս դուրս չէր եկել **ուտոպիստական փուլից**» (Плеханов, Избр. философские произведения, т. III, стр. 32)։ Հենց ուտոպիական սոցիալիզմն էր երազային նախագծեր կառուցում «ապագա հասարակական կարգի» մասին, չկարողանալով հասկանալ իրականի, այլ կերպ ասած՝ կապիտալիստական հասարակության զարգացման տենդենցները, որոնք տանում են դեպի սոցիալիզմ։ Ըմբռնելով, որ XVIII դարի լուսավորիչների «բանականության թագավորությունը» իրականում դուրս եկավ նոր արատների, աղաղակող հակասությունների թագավորություն, բուրժուական շահագործման, ճնշման, անարդարության, լայն մասսաների աղքատության թագավորություն, XIX դարի ուտոպիստները, սակայն, չկարողացան տեսնել իրենց ժամանակաշրջանի արատների ծագման պատճառները, բուրժուական կարգի հակասությունները, նրա զարգացման և անխուսափելի անկման օրենքները։

Բացահայտելով ուտոպիական սոցիալիզմի սահմանափակվածությունը, Վ. Ի. Լենինը նկատում էր, որ «ուտոպիական սոցիալիզմն իսկական ելք ցույց տալ չէր կարող։ Նա ոչ կարողանում էր պարզաբանել կապիտալիզմի օրոք գոյություն ունեցող վարձու ստրկության էությունը, ոչ նրա զարգացման օրենքները երևան հանել, ոչ էլ գտնել այն հասարակական ուժը, որն ընդունակ է նոր հասարակության ստեղծողը դառնալու» (Երկեր, հ. 19, էջ 9)։

Սակայն վերադառնանք գլխավորին։

Գիտական կոմունիզմի անկյունաքարը ոչ թե հանճարեղ մարդու պատահական տնտեսական և պրակտիկ գործունեությունն է, անկախ տեղից և ժամանակից, այլ հասարակական անկասելի զարգացման ռեալ ընթացքը։ Գիտական կոմունիզմը «չի նկարազարդում ապագան, այլ ուսումնասիրում է ներկան», ինչպես գրել է Պլեխանովը։ Բայց հարկավոր է այստեղ նկատել, որ ներկայի ուսումնասիրությունը, իրականի զարգացման տենդենցների և օրենքների ըմբռնումը, անշուշտ, թույլ են տալիս կատարելու շատ համարձակ, ճիշտ, գիտական կանխատեսումներ, որոնք «չնկարազարդելով ապագան» գիտականորեն ցույց են տալիս աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման, հաճախ շատ հեռավոր արդյունքներ։



«Կոմունիստական պարտիայի Մանիֆեստը», «Կապիտալը», «Անտի Դյուրինգը», «Գոթայի ծրագրի քննադատությունը», «Պետություն և ռևոլյուցիան» երևակայություններ չեն ապագայի մասին, և ոչ էլ նկարում են նրա պատկերները։ Նրանք մեզ ցույց են տալիս կապիտալիզմի քայքայման և կոմունիզմի անխուսափելի լինելության ուղիները։ Իրավացի էր Լաբրիոլան, գրելով՝ «Գիտական կոմունիզմի ստեղծողները և համախոհները չեն ապրել ապագա հասարակարգի կառուցման ֆանտաստիկ նախագծերով, նրանց միտքը կլանված էր ներկայի փորձով և պահանջմունքներով» (А. Лабриола, Очерки материалистического понимания истории, Госполитиздат, 1960, стр. 35)։

Ահա Վ. Ի. Լենինի հիանալի խոսքերը Կ. Մարքսի «Կապիտալի» մասին. «Ամեն ոք գիտե, օրինակ, որ «Կապիտալը»—գիտական կոմունիզմը շարադրող այս գլխավոր ու հիմնական երկը—ամենաընդհանուր ակնարկներով է սահմանափակվում ապագայի վերաբերմամբ, հետաքննելով այժմ առկա այն տարրերը միայն, որոնցից աճում է ապագա հասարակարգը» (Երկեր, հ. I, էջ 219)։

ՍՄԿՊ ծրագիրը, մեր դարաշրջանի այդ Կոմունիստական մանիֆեստը, արտացոլում է կոմունիզմի շինարարության օրինաչափությունները։ Եվ այն բոլորը, ինչ այնտեղ ասված է կոմունիզմի բարձր փուլի վերաբերյալ, այդ բոլորն արդեն գոյություն ունեն ծիլերի ձևով, նկարագծվում են կյանքում և հենց դրա շնորհիվ էլ արտացոլվում են տեսության մեջ։

Կոմունիզմը գիտության է վերածվում այն ժամանակ և այնքանով, որ ժամանակ և որքանով կապիտալիստական հարաբերությունների վերացման միջոցները և ուղիներն արդեն առկա են հասարակության մեջ։

«Պետք չէ,— ասում է Էնգելսը,— **փնտրել** այդ միջոցները բանականության մեջ, այլ բանականության օգնությամբ **հայտնագործել** այն արտադրության տվյալ նյութական փաստերի մեջ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. II էջ 167)։

Սակայն, որպեսզի մի որևէ բան հայտնագործվի իրականության մեջ, անհրաժեշտ է հայտնագործվողի առկայությունը։ Եվ երբ այն չկար, կամ կար միայն սաղմնային վիճակում, ի հայտ եկավ ուտոպիական սոցիալիզմը։ Միներվայի բուն դուրս է թռչում միայն գիշերը, բազմիցս նկատել է Հեգելը։ Եվ իրոք, պրոլետարիատն իմաստնացավ այն ժամանակ, երբ սկսվեց կապիտալիզմի մայրամուտը, այլ կերպ ասած, երբ սկսվեցին կապիտալիզմի քայքայման պրոցեսները, երբ կապիտալիստական հասարակարգի հակասությունները թևակոխեցին իրենց բավականին հասուն շրջանը։

Եվ միայն այդ ժամանակ պատմական ասպարեզ իջան մարդկության ռևոլյուցիոն մտքի գիգանտները՝ Մարքսը, Էնգելսը, Լենինը, որոնք աշխարհին ազդարարեցին, որ հասել է ամբողջական և ներդաշնակ կոմունիստական գիտության առաջացման էպոխան։

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԱՌԱՐԿԱՆ

Ինչպիսի՞ պրոբլեմներ է ուսումնասիրում գիտական կոմունիզմը։

Իր ժամանակին Ֆ. Էնգելսը հետևյալ կերպ է սահմանել գիտական կոմունիզմի առարկան։ «Հետազոտել այդ հեղաշրջման պատմական պայմանները, իսկ դրա հետ միասին նաև բուն էությունը և, այդպիսով, պարզել այժմ ճնշ-

ված, այդ հեղաշրջումը կատարելու կոչված դասակարգի համար նրա սեփական գործի պայմաններն ու բնույթը,— ահա պրոլետարական շարժման թեորիական արտահայտությունը հանդիսացող գիտական սոցիալիզմի խնդիրը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. II, էջ 191)։

Պարզաբանենք այդ սահմանումը։

Այստեղ ըստ մեզ, կա երկու ուշագրավ մոմենտ։ Առաջինն այն է, որ Էնգելսը գիտական կոմունիզմը (կամ սոցիալիզմը) դիտում է որպես ռևոլյուցիոն պրոլետարիատի և՛ թեորիա, և՛ քաղաքական գիծ, տակտիկա և ստրատեգիա։

Իրոք, ըստ Էնգելսի գիտական կոմունիզմի խնդիրն է՝ 1. «Հետազոտել այդ հեղաշրջման պատմական պայմանները, իսկ դրա հետ միասին նաև բուն էությունը»[1]։ Սա տեսություն է։ 2. «...Պարզել այժմ ճնշված, այդ հեղաշրջումը կատարելու կոչված դասակարգի համար նրա սեփական գործի պայմաններն ու բնույթը...»— սա արդեն տակտիկայի և ստրատեգիայի հարց է։

Հետևաբար, Էնգելսի սահմանման մեջ ընդգծվում է թեորիայի՝ գործողության ուղեցույցի կապը, թեորիայի և պրակտիկայի միասնությունը գիտական կոմունիզմում։ Առանց այդ միասնության կոմունիզմը չէր կարող դառնալ ռևոլյուցիոն ուսմունք։

Մյուս մոմենտը հանդիսանում է գիտական կոմունիզմի բովանդակության սահմանափակումը հիմնականում իր ժամանակի խնդիրներով։

Էնգելսն առաջադրում է այնպիսի խնդիրներ, որոնցով գիտական կոմունիզմը կարող էր զբաղվել այն ժամանակ։ Չնայած, որ գիտական կոմունիզմի նրա սահմանման մեջ հեղաշրջումը նշանակում է կապիտալիստական հասարակարգի ռևոլյուցիոն վերափոխում՝ կոմունիստականի, սակայն շեշտը դնում է այդ հեղաշրջման առաջին շղթաների՝ դասակարգային պայքարի, սոցիալիստական ռևոլյուցիայի, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման վրա։ Գործն այստեղ միայն նրանում չէ, որ այն ժամանակ այդ խնդիրներն ակտուալ էին պրոլետարիատի համար, այլ նրանում, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման բոլոր օրինաչափություններն ու բարդություններն այն ժամանակ պատկերացնել հնարավոր չէր։ Հիշենք, օրինակ, Էնգելսի կարծիքը։

Վերցնելով պետական իշխանությունը, պրոլետարիատը հանրայնացնում է արտադրամիջոցները և այդպիսով հիմքեր ստեղծում պետության մահացման համար, որը սակայն կարող է իրականանալ, երբ պետությունը զարգացման իր բարձրագույն աստիճանի վրա դառնում է ողջ հասարակության ներկայացուցիչը և այդպիսով ավելորդ է լինում գործադրել ճնշման պետական ֆունկցիան։ Ահա այս դեպքում անէանում է պետությունը (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ II, էջ 184—185)։

Հիրավի, ինչպես փորձը ցույց տվեց, բոլոր երկրներում մինչև դասակարգային տարբերությունների ոչնչացումը հասարակությունն անցնում է ատորին փուլի կառուցման և ավարտման, իսկ ապա՝ կոմունիզմի բարձրագույն փուլին անցնելու տասնամյակներ։ Կոմունիզմի մասին գիտությունը, բնականորեն,

[1] Գիտական կոմունիզմի տեսական էության մասին առանձնապես պարզ է ասվում մեկ ուրիշ սահմանման մեջ. «Արդի սոցիալիզմը ոչ այլ ինչ է, եթե ոչ այդ փաստական կոնֆլիկտի (խոսքը վերաբերում է բուրժուական արտադրության ներքին կոնֆլիկտին Ռ. Վ.) արտացոլումը մտածողության մեջ, նրա իդեալական արտացոլումը... բանվոր դասակարգի գլխում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. II, էջ 167—168)։



պետք է զարգանար և իրոք զարգացավ ու հարստացավ պրակտիկայի զարգացման, հասարակության կոմունիստական վերափոխման փորձի համապատասխան։ Եվ ճիշտ չէր լինի գիտական կոմունիզմի բովանդակությունը սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության էպոխայում սահմանափակել հիմնականում դասակարգային պայքարի և ռևոլյուցիայի խնդիրներով։ Այս տեսակետից փիլիսոփայական գրականության մեջ ճիշտ էր քննադատվում գիտական կոմունիզմի առարկայի սահմանումը, որն աղքատացնում էր այդ գիտության հարցերի շրջանակը, նրա խնդիրները[1]։

Այդ «աղքատացումը» կատարվում էր երկու ուղղությամբ։ Ընկերների մի մասը գիտական կոմունիզմի առարկայի սահմանման ժամանակ շեշտը դնում էր դասակարգային պայքարի, միջազգային կոմունիստական շարժման պատմության վրա, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման օրինաչափություններին հատկացնելով երկրորդական տեղ։ Այսպիսով, այս կամ այն չափով թերագնահատվում էր գիտական կոմունիզմի բովանդակության հարստացման անհրաժեշտությունը։ Ոչ ոք չի ժխտում դեպի պրոլետարիատի դիկտատուրա տանող դասակարգային պայքարի «պայմանների և բնության» գիտական կոմունիզմի կատարած ուսումնասիրման նշանակությունը, բայց գլխավորն այժմ, շատ երկրների համար սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման «պայմանների և բնության» բացահայտումն է։

Եթե գիտական կոմունիզմի առարկայի այդ բնույթի սահմանափակումը ցույց է տալիս, որ անկարող են հարցը ստեղծագործաբար լուծել, ապա առարկայի սահմանափակման մյուս ձևը վկայում է գիտական կոմունիզմի մեջ թեորիայի և «գործունեության ուղեցույցի» միասնության վերաբերյալ անբավարար պատկերացման մասին։ Այսպես, օրինակ, ոմանք գտնում էին, որ գիտական կոմունիզմը՝ դա գիտություն է բանվոր դասակարգի, որպես անդասակարգ կոմունիստական հասարակության ստեղծողի համաշխարհային-պատմական դերի մասին, գիտություն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների ու մեթոդների մասին։ Այստեղ գիտական կոմունիզմի բովանդակությունը հանգում է լոկ բանվոր դասակարգի գործունեության մեթոդներին, պրակտիկային, ստրատեգիային և քաղաքական գծին։ Նրա կարևորագույն կողմը՝ հասարակության վերափոխման օրենքների մասին ուսմունքը, դուրս է մնում տեսադաշտից։ Դա, նախ՝ գիտական կոմունիզմին որպես գիտության զրկում է հիմնական էությունից (արտացոլել օրենքները և այլն) և երկրորդ՝ խզում է տեսության ու պրակտիկայի փոխադարձ կապը, գիտական կոմունիզմի այդ բարձրագույն սկզբունքը։

Գիտական կոմունիզմի դասընթացի ծրագրում այդ առարկան սահմանվում է այսպես. «Գիտական կոմունիզմը–գիտություն է կոմունիստական ֆորմացիայի ծագման, լինելության և զարգացման ընդհանուր օրենքների մասին, պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների ու մեթոդների մասին»:

Այս սահմանման մեջ, ինչպես տեսնում ենք, նշվում է գիտական կոմունիզմի տեսական բովանդակությունը («գիտություն... ընդհանուր օրենքների մասին») և տակտիկայի ու ստրատեգիայի ուսմունքի միասնությունը («ուղիների և մեթոդների մասին»)։

[1] Այդ առթիվ տե՛ս «Вопросы философии», 1962, № 6, էջ 28։

Տեսությունը և պրակտիկան այստեղ հանդես են գալիս դիալեկտիկական
անխզելի միասնության մեջ։ Այնուհետև այս սահմանման մեջ ընդգծվում է գի-
տական կոմունիզմի կողմից ուսումնասիրվող օրինաչափությունների ամբող-
ջականությունը՝ դասակարգային պայքարից և սոցիալիստական ռևոլյուցիայից
մինչև կոմունիզմի լիակատար ավարտը։
Բերված սահմանման մեջ խոսվում է կոմունիստական ֆորմացիայի ծագ-
ման, լինելության ու զարգացման ընդհանուր օրենքների մասին։ Եվ դա
ճիշտ է, քանի որ աշխարհի կոմունիստական վերափոխման պրոցեսում գոր-
ծում են նաև հասարակական կյանքի տարբեր կողմերի զարգացման մասնակի
օրենքներ։ Այսպես, օրինակ, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծ-
ման մասնակի օրինաչափությունները բոլորովին էլ չեն ուսումնասիրվում գի-
տական կոմունիզմի կողմից, այլ մի խումբ մասնակի գիտությունների կող-
մից, ինչպիսիք են, օրինակ՝ տնտեսական, տեխնիկական, բնական, գյուղա-
տնտեսական և այլ գիտություններ։ Իսկ գիտական կոմունիզմը արտացոլում
է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի մակարդակը և բնույթը որոշող
ընդհանուր օրենքները, նրա դերը կոմունիզմի կառուցման գործում։
Այսպիսով, գիտական կոմունիզմն ուսումնասիրում է ընդհանուր փիլի-
սոփայական, սոցիալ-տնտեսական, քաղաքական և գաղափարական օրինա-
չափությունները, որոնք արդեն իրենց բնույթով հանդիսանում են կոմունիս-
տական ֆորմացիայի զարգացման ընդհանուր օրինաչափություններ։
Անհրաժեշտ է նշել, որ գիտական կոմունիզմի տեսությունը կարող էր
հանդես գալ և հանդես է եկել, զարգացել և զարգանում է միայն պրոլետարիա-
տի ռևոլյուցիոն շարժման և ամբողջ ազատագրական շարժման, սոցիալիզմի
և կոմունիզմի կառուցման պրակտիկայի ընդհանրացման հիման վրա։
Գիտական կոմունիզմի կողմից ուսումնասիրվող պրոբլեմները կարելի է
դասակարգել հետևյալ կերպ։ Առաջին խումբ. օրենքներ, որոնք որոշում են
անխուսափելիությունը, սոցիալիզմի կառուցման և կոմունիզմի ստեղծման,
ինչպես նաև համաշխարհային ասպարեզում սոցիալիզմը վճռական ուժի փո-
խարկվելու էպոխայում միջազգային հարաբերությունների զարգացման ըն-
թացքը, գիտական կոմունիզմի՝ որպես գիտության ծագման և զարգացման
ընթացքը։ Սա միայն կոմունիստական ֆորմացիայի ծագման, լինելության և
զարգացման ընդհանուր օրենքների խումբն է։ Այստեղից էլ, հասկանալի է,
որ գիտական կոմունիզմը (ի տարբերություն պատմական մատերիալիզմի կամ
քաղաքատնտեսության) չի զբաղվում այլ ֆորմացիաների զարգացման օրի-
նաչափություններով։
Գիտական կոմունիզմն ամենևին էլ գիտություն չէ ընդհանուր սոցիոլո-
գիական օրենքների սպեցիֆիկ դրսևորման մասին, ինչպես գրում են հաճախ։
Բոլոր ընդհանուր սոցիոլոգիական օրենքների գործունեության դրսևորման
սպեցիֆիկան ուսումնասիրում է ընդհանուր սոցիոլոգիական գիտությունը՝
պատմական մատերիալիզմը։ Իսկ գիտական կոմունիզմն ունի ուսումնասիր-
ման իր պրոբլեմները, օրենքները, որոնք երբեմն և հատուկ իմաստով հանդի-
սանում են ընդհանուր սոցիոլոգիական օրենքների դրսևորման ձև։ Գիտական
կոմունիզմի շատ պրոբլեմներ պատմական մատերիալիզմն ուսումնասիրել է
մինչև նրա առանձնացումը որպես ինքնուրույն առարկա, դրանով սակայն այդ
պրոբլեմները չեն դարձել ընդհանուր սոցիոլոգիական օրենքների դրսևորման
սպեցիֆիկ ձև։



ՍՄԿԿ Ծրագրում նշված է, որ ընդհանուր օրենքներ են հանդիսանում կո-
մունիզմի երկու փուլերի օբյեկտիվ անխուսափելիությունը, ստորին փուլի աս-
տիճանական և անընդհատ վերաճումը բարձրագույնի, հասարակական կյանքի
բոլոր կողմերի արագացված զարգացումը, սոցիալիստական երկրների քիչ թե
շատ միաժամանակյա անցումը կոմունիզմի, տարբեր սոցիալական սիստեմ-
ների խաղաղ գոյակցության և այլ օրենքներ։
Գիտական կոմունիզմի պրոբլեմների մյուս խումբը—դա կոմունիստական
ֆորմացիայի ծագման, լինելության ու զարգացման վերը նշված ընդհանուր
օրենքների դրսևորման սպեցիֆիկան է։ Իրոք որ յուրաքանչյուր շրջան, յու-
րաքանչյուր երկիր, միջազգային և ներքին կոնկրետ պայմաններ առաջ են բե-
րում ընդհանուր օրինաչափությունների դրսևորման իրենց յուրահատուկ սպե-
ցիֆիկան։
Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, թե խնդիրն այն է, «որ կարողանանք կո-
մունիզմի ընդհանուր և հիմնական սկզբունքները կիրառել դասակարգերի ու
պարտիաների հարաբերությունների այն յուրօրինակության նկատմամբ, դեպի
կոմունիզմն ընթացող օբյեկտիվ զարգացման այն յուրօրինակության նկատ-
մամբ, որը հատուկ է յուրաքանչյուր առանձին երկրի, և որը պետք է կարողա-
նալ ուսումնասիրել, գտնել, գուշակել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 94)։
Այս պրոբլեմներից են՝ տարբեր երկրներում սոցիալիստական ռևոլյուցիա-
յի զարգացման այս կամ այն ճանապարհները, սոցիալիզմից կոմունիզմին
անցնելու այս կամ այն միջոցները, պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիա-
լիստական պետության կազմակերպման զանազան ձևերը և այլն։
Սակայն դրսևորման սպեցիֆիկան չի վերացնում կոմունիստական ֆոր-
մացիայի ծագման, լինելության և զարգացման ընդհանուր օրենքների գոր-
ծունեությունը և օբյեկտիվ անխուսափելիությունը։ Ընդհանուր օրենքների ար-
տահայտման սպեցիֆիկայի նշանակության ամեն մի չափազանցում կարող է
հանգեցնել և անպայման հանգեցնում է մարքսիզմ-լենինիզմից հրաժարվե-
լուն։ Այսպես, օրինակ, ռևիզիոնիստներից շատերն իրենց երկրի «սպեցիֆի-
կայի» ծածկի տակ ժխտում էին սոցիալիստական ռևոլյուցիան, պրոլետարիա-
տի դիկտատուրան, պարտիայի ղեկավար դերը, հռչակում «ազգային կոմու-
նիզմը» և այլն։ Չափազանցնելով սպեցիֆիկ պայմանները և արհամարհելով
ընդհանուր օրենքները՝ դոգմատիկները մասնակիորեն ժխտում են կոմունիզ-
մի զարգացման երկու փուլերի անխուսափելիությունը։
Հետևաբար, տարբեր երկրների, շրջանների, պայմանների և այլնի համար
գոյություն ունեն կոմունիստական ֆորմացիայի ծագման, լինելության և զար-
գացման ոչ թե սպեցիֆիկ, այլ միայն ընդհանուր օրենքներ, որոնք կարող են
ունենալ իրենց գործունեության և արտահայտման սպեցիֆիկան՝ կախված
տեղից, պայմաններից և ժամանակից։
Գիտական կոմունիզմի պրոբլեմների երրորդ խմբի մեջ են
Վերջապես, գիտական կոմունիզմի պրոբլեմների երրորդ խմբի մեջ են
մտնում կոմունիզմի գաղափարների կենսագործման մեթոդները, ուղիները,
ձևերը։ Այս պրոբլեմները վերաբերում են մարքս-լենինյան պարտիաների քա-
ղաքականությանը, ստրատեգիային, տակտիկային։
Գիտական կոմունիզմի հիմունքների դասընթացում մեր նշած պրոբլեմ-
ները խմբավորվում են ոչ այն ձևով, ինչպես մենք շարադրեցինք։ Նրանք միա-
ձուլվում են, ներթափանցվում միմյանց մեջ, համախ համընկնում են և այլն։
Գիտական կոմունիզմի բովանդակությունն ունի կառուցվածք, որն անհրաժեշ-

տորեն բխում է նրա կողմից արտացոլվող օբյեկտի զարգացման տրամաբանությունից և պատմությունից։ Դա ստեղծում է գիտական կոմունիզմի՝ որպես դասավանդման առարկայի հատուկ ստրուկտուրա։ Այն բաղկացած է երեք բաժնից։

Առաջին բաժինը ներածականն է։ Այստեղ արտացոլվում են պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման ծագման և դրա հետ կապված գիտական կոմունիզմի երևան գալու և զարգացման օրինաչափությունները։ Այստեղ նույնպես տրվում է գիտական կոմունիզմի սահմանումը, բացահայտվում նրա բովանդակությունը։

Երկրորդ բաժինն արտացոլում է պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի, կոմունիստական շարժման զարգացման, ազգային-ազատագրական շարժման օրինաչափությունները։ Այստեղ բացահայտվում են այն օրինաչափությունները, որոնք որոշում են ժամանակակից էպոխան որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու էպոխա, որոշում են մարքս-լենինյան պարտիաների ստրատեգիան և տակտիկան արդի դարաշրջանում։

Երրորդ բաժինը բացահայտում է կոմունիստական ֆորմացիայի լինելության, զարգացման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիներն ու օրինաչափությունները։

Այդպիսի կառուցվածքով էլ ձևավորվում է գիտական կոմունիզմի բովանդակությունն իր ծրագրի դասավանդման համապատասխան։ Դա հնարավորություն է տալիս ամբողջական և լրիվ պատկերացում կազմելու գիտական կոմունիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների ու մեթոդների մասին։



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՆՈՐ ՈՒՂԻՈՎ

Մալիի ռեսպուբլիկան՝ աֆրիկյան այդ երիտասարդ անկախ պետությունը, դրական չեզոքության դիրքերի վրա կանգնած երկրների այն խմբի տիպիկ ներկայացուցիչն է, որոնք կազմում են այսպես կոչված՝ «երրորդ աշխարհը», և որոնց մասին ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Երիտասարդ սուվերեն պետությունները չեն մտնում ոչ իմպերիալիստական պետությունների սիստեմի մեջ, ոչ էլ սոցիալիստական պետությունների սիստեմի մեջ։ Բայց նրանց ճնշող մեծամասնությունը դեռևս չի անջատվել համաշխարհային կապիտալիստական տնտեսությունից, թեպետև առանձնահատուկ տեղ է գրավում այնտեղ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 465—466)։ Մալիի ժողովրդի առջև խնդիր է դրված ընտրություն կատարել կապիտալիստական և ոչ կապիտալիստական ուղիների միջև։ Դեպի ո՞ւր է տանում Մալիի զարգացման այսօրվա ընթացքը։



1960 թվականը պատմության մեջ մտավ Աֆրիկայի տարի անունով։ Այդ նշանավորվեց նրանով, որ միայն 1960 թվականին աֆրիկյան մայր ցամաքի վրա առաջացան 17 նոր անկախ պետություններ։ Այդ նոր պետություններից մեկն էլ Մալիի ռեսպուբլիկան էր։

Մալիի ռեսպուբլիկան ստեղծվեց Ֆրանսիական Արևմտյան Սուդան գաղութի տերիտորիայի վրա։ Մալին իր 1204 քառ. կիլոմետր տարածությամբ երկու անգամ գերազանցում է Ֆրանսիայի տերիտորիան, Արևադարձային Աֆրիկայի ֆրանսիական նախկին գաղութների մեջ ամենախոշոր պետությունն է՝ ավելի քան 4 միլիոն բնակչությամբ։ Հյուսիսում նրան սահմանակից են Մավրիտանիան ու Ալժիրը, Արևմուտքում՝ Սենեգալը, Արևելքում՝ Վերին Վոլտան ու Նիգերիան, Հարավում՝ Փղոսկրե ափն ու Գվինեան։ Ռեսպուբլիկայի անվանումն ընտրվել է ի հիշատակ աֆրիկական Մալի անունով հզոր կայսրության, որը ֆրանսիական Սուդանի տերիտորիայում գոյություն է ունեցել XII—XV դարերում։ Մալիի մայրաքաղաքն է Բամակոն, ավելի քան հարյուր հազար բնակչությամբ։

Մալիում միակ քաղաքական պարտիան Սուդանի Միության պարտիան է։ Նրա գլխավոր քարտուղար Մոդիբո Կեյտան միաժամանակ Մալիի կառավարության ղեկավարն է։

1960 թվականի սեպտեմբերի 22-ին Բամակոյում տեղի ունեցավ Սուդանի Միության պարտիայի արտակարգ համագումարը, որը և որոշեց Սուդանը հռչակել անկախ պետություն՝ Մալիի ռեսպուբլիկա անունով։

Նույն օրը Սուդանի օրենսդրական Ասամբլեան ընդունեց Մալիի ռեսպուբլիկայի սահմանադրությունը, որի նշանաբանն է՝ «Միասնական ժողովուրդ, միասնական նպատակ, միասնական հավատ»։ Երկրի կառավարման գլխավոր սկզբունքն է. «ժողովրդի իշխանություն՝ ժողովրդի միջոցով և ժողովրդի համար»։

1960 թվականի սեպտեմբերի 28-ին Մալիի ռեսպուբլիկան ընդունվեց Միավորված ազգերի կազմակերպության մեջ, իսկ հոկտեմբերի 8-ին Մալիի ռեսպուբլիկայի կառավարության ղեկավար Մոդիբո Կեյտային հղած հեռագրում ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ Սովետական Միությունը ճանաչել է Մալիի ռեսպուբլիկան և պատրաստ է դիվանագիտական ներկայացուցիչներ փոխանակել նրա հետ։

Այսպիսով Մալին ոտք դրեց անկախ զարգացման ուղու վրա։ Բայց այդ մեծ գործի սկիզբն էր միայն։ Ինչպես ասված է ՍՄԿՊ Ծրագրում, «Ազգային-ազատագրական ռևոլյուցիան չի ավարտվում քաղաքական անկախության նվաճմամբ։ Այդ անկախությունը խախուտ կլինի և ֆիկցիայի կվերածվի, եթե ռևոլյուցիան խոր փոփոխությունների չհանգեցնի սոցիալական ու տնտեսական կյանքում, չլուծի ազգային վերածննդի կենսական խնդիրները» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 467)։ Երիտասարդ անկախ պետության առջև ծառացան բարդ ու դժվարին պրոբլեմներ՝ վերացնել տնտեսական հետամնացությունը, անգրագիտությունը, բարելավել բժշկական սպասարկումը, բարձրացնել



# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՊՐՈՊԱԳԱՆԴԵԼ ԿՈՆԿՐԵՏ ԵՎ ՀԱՄՈԶԻՉ

Մեր պարտիան գյուղատնտեսությունը համարում է կոմունիստական շինարարության հարվածային ճակատը և անում է ամեն ինչ, որպեսզի վճռական բեկում ստեղծվի կոլտնտեսային ու սովխոզային արտադրության բնագավառում, մեծ չափերով ավելանա բուսաբուծական և անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Համաժողովրդական խոշոր նշանակություն ունեցող այդ խնդրի լուծմանն են ուղղված ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի 1963 թվականի դեկտեմբերյան և ընթացիկ տարվա փետրվարյան պլենումների պատմական որոշումները, որոնցում սահմանված են գյուղատնտեսության քիմիացման, ոռոգելի տարածությունների ընդարձակման և արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման կոնկրետ միջոցառումները. դրանց կենսագործումը կապահովի սոցիալիստական գյուղատնտեսության ինտենսիվացումը, որը նրա զարգացման գլխավոր ուղին է։

Գյուղատնտեսության ինտենսիվացման գործում վճռական դեր են խաղում գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն պրոպագանդումն ու արմատավորումը։ Այդ ուղղությամբ իրենց խոշոր անելիքն ունեն ռեսպուբլիկայի միջշրջանային թերթերը։ Նրանցից Գորիսի ու Սիսիանի արտադրական վարչություններում լույս տեսնող «Զանգեզուր» թերթը վերջին ժամանակներս ավելի հանգամանորեն է անդրադառնում այդ խնդրին։

1963 թվականի նոյեմբերի մեկից մինչև 1964 թվականի փետրվարի 15-ը «Զանգեզուրն» իր տարբեր համարներում բազմաթիվ հոդվածներ, թղթակցություններ ու ինֆորմացիաներ է զետեղել գիտության նվաճումների, առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների և առավել բարձր ցուցանիշների հասած բրիգադների, ֆերմաների և առանձին աշխատողների փորձի մասին։ Գովելի է այն, որ տվյալ հարցի շուրջ թերթում հանդես են եկել գիտնականներ, գյուղատնտեսության մասնագետներ, տնտեսությունների ղեկավարներ և արտադրության առաջավորներ, որոնք գիտության նորագույն տվյալների ու տեղական ուսանելի փորձի հիման վրա ցույց են տվել, թե ինչպիսի միջոցառումներով բարձրացնել գյուղատնտեսական արտադրությունը։

«Զանգեզուրի» 1964 թվականի հունվարի 31-ի համարում զետեղված իր հոդվածում Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրի տեղակալ ընկ Ս. Կարադյոզյանը հանգամանորեն խոսում է դաշտավարության և անասնապահության քիմիացման, այդ ուղղությամբ վերջին տարիներս կատարված ու հետագայում կատարվող խոշոր մասշտաբների աշխատանքի մասին։ Իսկ որպեսզի հանքային պարարտանյութերը ճիշտ օգտագործվեն և տան լավագույն արդյունք, ասում է նա, անհրաժեշտ է կազմակերպել մասնագիտական կադրերի և արտադրության մեջ աշխատողների ագրոքիմիական ուսուցումը։

Այդ գործում լավ օրինակ է տալիս թերթը։ «Մեր գյուղատնտեսական համալսարանը» ընդհանուր խորագրի տակ այն հրապարակում է գիտական աշխատողների ու գյուղատնտեսության մասնագետների դասախոսություններ, որոնցով պրոպագանդում է քիմիական գիտության նվաճումները և դրանց գործադրման եղանակները։ Այսպես. թերթի № 15-ում (1964 թ.) կարդում ենք. «Այսօր մեր համալսարանի հերթական պարապմունքում դասախոսություն է կարդում Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի ընդհանուր քիմիայի ամբիոնի վարիչ, քիմիական գիտությունների թեկնածու Վ. Դովլաթյանը»։ Նրա դասախոսության թեման է՝ «Նոր հերբիցիդ կրոտիլինը և նրա կիրառումը գյուղատնտեսության մեջ»։ Ընկ. Դովլաթյանը մատչելի ձևով պատմում է մոլախոտերի դեմ տարվող պայքարում նոր հերբիցիդի առավելությունների և գործադրման եղանակների մասին։ «Կրոտիլինի շնորհիվ,—ասում է նա,—բերքի հավելումը մեկ հեկտարից կազմում է միջին հաշվով 3—4 ցենտներ և երբեմն ավելի։ Բասարգեչարի շրջանում կրոտիլինով սրսկած աշնանացան ցորենի ցանքատարածություններում մոլախոտերը ոչնչացվեցին 96—98 տոկոսով, իսկ բերքի հավելումը կազմեց 2,5—6,5 ցենտներ։ Ենգավիթի կոլտնտեսությունում եգիպտացորենի սիլոսային զանգվածի բերքի հավելումը կրոտիլինի օգտագործումով կազմել է մոտ 78 ցենտներ»։

Թերթի գյուղատնտեսական համալսարանի հաջորդ պարապմունքում ագրոքիմիական քարտեզների օգտագործման մասին դասախոսություն է կարդացել Գորիսի արտադրական վարչության ագրոքիմիայի լաբորատորիայի վարիչ Շ. Միրաքյանը։ Նշելով, որ արտադրական վարչության բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն արդեն ապահովված են ագրոքիմիական քարտեզներով, ընկ. Միրաքյանը գլխավորապես պատմում է դրանց օգտագործման ձևերի ու մեթոդների մասին, որոնց պետք է քաջատեղյակ լինի արտադրության յուրաքանչյուր աշխատող։

«Զանգեզուրի» մեկ այլ համարում ընկ. Միրաքյանը անդրադարձել է նաև հողի բերրիության բարձրացմանը, որի անհրաժեշտ պայմանը պարարտացումն է։ Այդ առանձնապես անհրաժեշտ է էռոզիայի ենթարկվող հողերի համար, որոնք արտադրական վարչության տնտեսություններում հասնում են 6000 հեկտարի (ընդհանուր վարելահողերի 21 տոկոսը)։

Սիստեմատիկաբար պրոպագանդելով հանքային պարարտանյութի օգտագործման խիստ անհրաժեշտությունը, թերթն իր տեսադաշտից դուրս չի թողնում նաև տեղական պարարտանյութերի օգտագործման հարցը և քննադատության է ենթարկում այն տնտեսությունների ղեկավարներին, որոնց անուշադրության հետևանքով գոմաղբը բաց վիճակում, անձրևի և ձյան տակ երկար մնալով կորցնում է բույսերի համար սննդատու նյութերը։ Գոմաղբի պահպանման ու օգտագործման հարցերը պատշաճ ձևով լուսաբանվել են թերթի հունվարի 15-ի համարում զետեղված Գորիսի արտադրական վարչության գլխավոր գյուղատնտես Բ. Ստեփանյանի ընդարձակ հոդվածում, ուր ամեն մի դաշտավար կգտնի արժեքավոր խորհուրդներ։

Վերջին շրջանում «Զանգեզուրն» ավելի լայն տեղ է հատկացնում առաջավոր փորձին։ Նրա համարների ուսումնասիրությունից պարզվում է, թե ինչպես համանման բնակլիմայական պայմաններում առանձին տնտեսություններ և զգալի թվով առաջավոր աշխատողներ մյուսների համեմատությամբ նշանակալից հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում։ Թերթի տարբեր համարներում կան մի շարք հաջողված հոդվածներ ու ակնարկներ, որոնցում նկարագրվում են առաջավորների արգասաբեր աշխատանքի ձևերն ու մեթոդները, պետական ու հանրային գործի նկատմամբ սրտացավ, ազնիվ վերաբերմունքը և ցույց է տրվում այն հաստատ վճռականությունը, որ նրանք ցուցաբերում են պարտիայի առաջադրած խնդիրները կենսագործելու ուղղությամբ։ Թերթը առաջավորների օրինակով ցույց է տալիս, թե ինչպիսի հնարավորություններ ու ռեզերվներ կան հացահատիկի, բանջարեղենի, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ։

ՀԿՊ Գորիսի գյուղական արտադրական կոմիտեի բյուրոն անցած տարվա նոյեմբերին քննարկել ու հավանություն է տվել Խնածախ գյուղի Դիմիտրովի անվան կոլտնտեսության հովիվներ Սենիկ և Արշավիր Սիմոնյանների աշխատանքի առաջավոր փորձին և որոշել՝ այն տարածել արտադրական վարչության բոլոր տնտեսություններում։ Արտադրական պարտիական կոմիտեի որոշման կատարմանն առաջին հերթին ձեռնամուխ է եղել «Զանգեզուրը», որը նոյեմբերի 24-ի իր համարի մի ամբողջ էջը նվիրել է Սիմոնյանների փորձին։

«Առաջավոր ոչխարաբույծների փորձը բոլորին» ռուբրիկայի տակ, էջում զետեղված նյութը աչքի զարնող խոշոր տառերով վերնագրված է՝ «3000 ռուբլու ծախսումով՝ 43.172 ռուբլու եկամուտ»։

Այնուհետև հոդվածում բերվում են մի քանի թվեր, որոնք ցույց են տալիս առաջավոր հովիվների աշխատանքի կոնկրետ արդյունքը։ Այսպես. նրանց խնամած ոչխարներից յուրաքանչյուրը 1963 թվականի աշնանը միջին հաշվով ունեցել է 62 կիլոգրամ կենդանի քաշ և տվել 4,1 կիլոգրամ բուրդ։ Այդ հոտի պահպանման վրա մեկ տարվա ընթացքում ծախսվել է 3000 ռուբլի, որի դիմաց ստացվել է 2.250 կիլոգրամ բուրդ և 347,2 ցենտներ միջակից բարձր որակի միս։ Բրդի յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը կազմել է 190, իսկ մսինը՝ 30 ռուբլի։ Կոլտնտեսությունն այդ հոտից ստացած ամբողջ միսն ու բուրդը վաճառել է պետությանը և ստացել 43.172 ռուբլի եկամուտ։

Ըստ արժանվույն գնահատելով առաջավոր հովիվների աշխատանքը, հոդվածի վերջում ասվում է. Սիմոնյանները «...մաքուր խիղճ ունեն և արժանի է, որ նրանց հայրենանվեր գործի մասին իմանան նաև Զանգեզուրի լեռնաշխարհի բոլոր անասնապահները»։

Թերթը Զանգեզուրի անասնապահներին լայնորեն ծանոթացրել է նաև Գորիսի արտադրական վարչության Խնձորեսկ գյուղի կոլտնտեսության անվանի կթվոր-անասնապահ Պավել Բոզունցի աշխատանքի ուսանելի փորձին։ Փետրվարի 5-ի համարում թերթը մի ամբողջ էջ է նվիրել նրա ելույթին։

«Զանգեզուր» թերթում մի շարք նյութեր են տպագրված նաև հացահատիկի ու կերի արտադրության առաջավորների աշխատանքի մասին։ Սիսիանի արտադրական վարչության Նորավանի

սովխոզի դիրեկտոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Հ. Մինասյանը, Անգեղակոթի կոլտնտեսության նախագահ Ա. Մկրտչյանը, Գորիսի արտադրական վարչության Վերիշենի կաթնաանասնապահական սովխոզի գյուղատնտես Ա. Շահրազյանը թերթի էջերում պատմում են, թե ինչպես հանքային ու տեղական պարարտանյութերի ճիշտ օգտագործման և ագրոկոմպլեքսի կիրառման շնորհիվ առանձին տարածություններից ստացել են հացահատիկի և կերային կուլտուրաների բարձր բերք։ Ընկ. Մինասյանը նշում է, որ դաշտերի պարարտացման ու այլ միջոցառումների կիրառման ճանապարհով ընթացիկ տարում, նախորդ տարվա համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կբարձրանա 6—7 ցենտներով։

Սիսիանի արտադրական վարչության Անգեղակոթի կոլտնտեսության օրինակով «Զանգեզուրը» պրոպագանդել է նաև աշխատանքի կազմակերպման ու տնտեսության ղեկավարման նոր մեթոդները, որոնք նպաստում են արտադրության զարգացմանն ու գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։ Թերթի դեկտեմբերի 8-ի համարում այդ կոլտնտեսության նախագահ Ա. Մկրտչյանը պատմում է, որ իրենց տնտեսությունը կաթի ու բրդի արտադրության և վաճառքի տարվա բնագծերը նվաճել է 9 ամսում, մսինը՝ $1\frac{1}{2}$ ամիս շուտ, կուտակվել է $1\frac{1}{2}$ տարվա կեր, անկորուստ հավաքվել է հացահատիկի բերքը, ագրոտեխնիկական լավագույն ժամկետում ավարտել է աշնանացանը։ Գերազանցելով անցած տարվա ցուցանիշները, տնտեսությունը հաստատուն կերպով բռնել է վերելքի ուղին։

Ի՞նչ միջոցառումների գործադրմամբ է կոլտնտեսությունը հասել նման հաջողությունների։ Պատասխանելով այդ հարցին, ընկ. Մկրտչյանը նշում է, որ «...ամեն ինչ նույնն է եղել, ինչ անցյալ տարի, տարբերությունը միայն կազմակերպչական աշխատանքի ու տնտեսության ղեկավարման նոր մեթոդների մեջ պետք է փնտրել»։ Նա մասնավորապես խոսում է նյութական շահագրգռվածության բարձրացման մասին և նշում, որ տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական պլանները գերակատարած կոլտնտեսականներին եռամսյակը մեկ անգամ տրվում է լրացուցիչ վարձատրություն։ Երբ առանձին եռամսյակում 5 կթվոր գերակատարեցին կաթի արտադրության պլանը և ստացան լրացուցիչ վարձատրություն, մյուս կթվորները հետևեցին նրանց օրինակին։ Արդյունքը եղավ այն, որ երկրորդ եռամսյակում կաթի արտադրության պլանը գերակատարեցին 40 կթվոր։ Նրանցից Մարիամ Մարգարյանը մինչև հուլիսի մեկը պլանով նախատեսված 87-ի փոխարեն կթեց 136 ցենտներ կաթ և որպես լրացուցիչ վարձատրություն ստացավ 110 ռ. 63 կոպ.։

Գովելի է, երբ թերթը կարողանում է ժամանակին տեսնել առանձին տնտեսություններում ծնունդ առած նորը, առաջավորը, որը տվյալ պայմաններում զարգացման լայն հեռանկարներ ունի։ Այդ տեսակետից հետաքրքրական է թերթի նոյեմբերի 10-ի (1963 թ.) համարում տպագրված «Հաջող քննություն» վերնագրով հոդվածում բերված հետևյալ օրինակը։ Գորիսի արտադրական վարչության Նորաշենիկի սովխոզի դիրեկտոր, գյուղատնտես Դ. Ավետիսյանը փորձել է միևնույն հողամասից մեկ տարում երկու բերք ստանալ։ Դա ոմանց տարօրինակ ու անհավանական է թվացել։ Բայց իր որոշման մեջ հաստատ դիրեկտորը խախտել է լեռնաշխարհում հողամշակության դարավոր տրադիցիան. նա վաղահաս կարտոֆիլի բերքահավաքից հետո, օգոստոս ամսին, 18 հեկտարի վրա մեխանիզատորների միջոցով ցանել է եգիպտացորեն, որը հետագայում լավ մշակվել է։ Արդյունքը եղել է այն, որ միևնույն հողամասի յուրաքանչյուր հեկտարից մեկ տարում ստացվել է 126 ցենտներ կարտոֆիլի բարձրորակ բերք և 250 ցենտներ եգիպտացորենի սիլոսանյութ։

Ինչպես տեսնում ենք, առաջին համարձակ փորձը հաջողությամբ է պսակվել և լավ է, որ թերթն այդ մասին գրել է։ Սակայն թերթը չի հետևում, թե իր պրոպագանդած առաջավոր փորձը ինչպես է կիրառվում։ Նրան պակասում է գործնականությունը։ Թերթն ինչպես հարկն է ընթերցողներին տեղյակ չի պահում, թե պարտիական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները, արտադրական վարչություններն ու նրանց տեսուչ-կազմակերպիչները կազմակերպական ինչպիսի աշխատանք են ծավալում գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը արմատավորելու համար։ Այլ կերպ ասած, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի պրոպագանդան թերթի էջերում հաճախ տարվում է պասսիվ ձևով, այն չունի հարձակողական բնույթ, մարդկանց չի մոբիլիզացնում գործը մինչև վերջ հասցնելու՝ արտադրության մեջ նորը հետևողականորեն արմատավորելու։

Գիտության նվաճումների ու առաջավոր փորձի նկատմամբ պասսիվ վերաբերմունք է նաև այն, որ թերթի էջերում հանդես եկած մի շարք տնտեսությունների ղեկավարներ ու արտադրության նորարարներ իրենց կոլտնտեսության ու սովխոզի շրջանակներից այն կողմ չեն անցնում, ցույց չեն տալիս, թե իրենց մոտ ինչպես է արմատավորվում ռեսպուբլիկայի, երկրի առաջավոր տնտեսությունների ու առավել խոշոր



հաջողությունների հասած բրիգադների, ֆերմաների, օղակավարների և մեխանիզատորների արժեքավոր փորձը։ Այս գործում խիստ թերացել է նաև «Զանգեզուրի» խմբագրությունը, որն անցած երեք ու կես ամսում ոչ մի անգամ չի փորձել թերթի էջերում լուսաբանել երկրի առաջավոր որևէ կոլտնտեսության ու սովխոզի աշխատանքի փորձը։

«Զանգեզուրի» էջերում գյուղատնտեսության առաջավորների մասին զետեղված շատ նյութեր իրենց վրա կրում են շաբլոնի կնիքը, լի են չոր թվերով, բազմաթիվ անուն ազգանուններով, գրված են ընդհանուր, մեկը մյուսին կրկնող խոսքերով, հաճախ բուն հարցի հետ չառնչվող անհարկի նկարագրություններով։ Այդպիսի նյութերը չեն բացահայտում առաջավոր փորձի հիմնական էությունը և նոր բան չեն սովորեցնում ընթերցողին։ Առաջավոր փորձի մասին տպագրված շատ նյութերում պակասում է նաև տնտեսական վերլուծությունը։

Տարօրինակ է, երբ թերթը խոսելով անասնաբուծության բնագավառում առաջավորների և առանձին տնտեսությունների ձեռք բերած հաջողությունների մասին, փորձ անգամ չի անում հաշիվներ կատարելու և ցույց տալու, թե նրանք 100 հեկտար հողատարածության դիմաց քանի գլուխ անասուն են պահում, որքան կաթ, միս ու բուրդ արտադրում, ինչքանով են դրանց ինքնարժեքն իջեցնում։ Չէ՛ որ այդ հիմնական ցուցանիշներով է նրանց աշխատանքը գնահատվում և անասնաբուծության ինտենսիվությունը որոշվում։

Առաջավոր փորձի մասին հոդված գրելիս, թղթակիցը կամ խմբագրության աշխատողը պետք է անպայման լինի դաշտում կամ անասնապահական ֆերմաներում, մոտիկից ծանոթանա մարդկանց գործերին, խոր կերպով թափանցի արտադրության մեջ, իր համար պարզի նորը, առաջավորը, ուսանելին և ապա գրիչ վերցնի։ Ցավոք, այդպես չի վարվել «Հովիվը շտապում է» հոդվածի հեղինակ ընկ. Ջոհրաբյանը։ Թերթի № 144-ում (1963 թ.) նա գրում է. «...Խնձորեսկի կոլտնտեսության առաջավոր հովիվ Էդիկ Փադունցին գտնելու համար, ամբողջ օրը հարց ու փորձ անելով, ոտնատակ տվինք ամեն տեղ։ Չկար ու չկար...

Արդեն կեսօր էր, երբ «բռնեցինք» Էդիկին։ Գյուղկոոպի խանութի մոտ, ճամպրուկի մեջ մթերքներ լցրած, շտապում էր «Գյումուշլաձոր», որտեղ այս տարի ձմեռում են կոլտնտեսության ոչխարները։

— Սպասիր, ախպերս, քեզ հազիվ գտանք... պատմիր աշխատանքիդ, հովվական կյանքիդ մասին։ Հոդված պիտի գրենք։

— Չէ, էդ մեկը չի լինի, շտապում եմ, ոչխարս անտեր կմնա։

Բայց համոզեցինք»։

Եվ ահա փողոցում հովիվը պատմում է իր կյանքից, խոսում ընկերների գործերի, անցած տարվա ձեռք բերած ցուցանիշների, ոչխարների ծնի կամպանիայի մասին, վերջում նկարագրում իր փորձը և մոտենում հեռագրասյունից կապված ձիուն։

«Ուզում էինք երկար խոսել նրա հետ,—ասում է հոդվածագիրը,— բայց նա շտապում է, նստում ձին, բռնում ձորն իջնող կածանը...»։

Որ հովիվը գործի համար շտապել է, դա տեղին է ու հասկանալի։ Բայց որ խմբագրությունն է շտապել և առաջավոր հովվի փորձի մասին այդ ձևով գրված մակերեսային հոդված տպագրել, դա լավ չէ։

Թերթը վատ է պրոպագանդում առաջավոր մեխանիզատորների փորձը։ Օրինակ, 10 տարվա տրակտորիստ Պավլուշա Պետրոսյանին նվիրված հոդվածում չի ասվում այն մասին, թե նա ինչպես է կատարում վարն ու ցանքը, ինչ մեթոդներով է մշակում ցանքատարածությունները, հեկտարից ինչքան բերք է ստանում և որքան է արտադրանքի մեկ ցենտների ինքնարժեքը։ Փոխանակ հիմնականում այդ հարցերը լուսաբանելու և առաջավոր տրակտորիստի փորձն արժեքավորելու, հոդվածում սոսկ թվարկվում են տարվա ընթացքում Պետրոսյանի կատարած աշխատանքի տեսակները, որոնք սովորական բան են ամեն մի մեխանիզատորի համար։

Թերթի նոյեմբերի 3-ի համարում զետեղված «Կթվորները համոզվել են» հոդվածից տեղեկանում ենք, որ Սիսիանի արտադրական վարչության Որոտանի սովխոզի № 1 ֆերմայում տեղադրված կթի 2 ագրեգատի նկատմամբ թերահավատություն է եղել և դրանք երկար ժամանակ գործի չեն դրվել։ Ֆերմայի նոր կառավարիչ Մուշեղ Հակոբյանը անցած տարվա հուլիսի 20-ից այդ ագրեգատները գործի է դնում, և կարճ ժամանակում կթվորները համոզվում են դրանց առավելության մեջ։ Այժմ ֆերմայում կթի պրոցեսը լրիվին մեքենայացված է, որն զգալիորեն թեթևացրել է կթվորների գործը, բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը։

Լավ է, որ թերթն անդրադարձել է անասնաբուծության աշխատատար պրոցեսներից մեկի՝ կթի մեքենայացմանը։ Բայց այստեղ ևս ամեն ինչ ասված է ընդհանուր խոսքերով։ Թերթի խմբագրությունը հոդվածի հեղինակ, անասնաբույժ-տեխնիկ Յուրիկ Ստեփանյանին չի օգնել համապատասխան համեմատությունների և հաշվումների միջոցով ցույց տալու, թե կթի մեքենայացման շնորհիվ քանի՞ տոկոսով է բարձ-

բացել աշխատանքի արտադրողականությունը, ինչքա՞ն են կրճատվել ծախսերը, որքա՞ն է իջել կաթի ինքնարժեքը և այդ բոլորից տընտեսությունն ինչպիսի՞ օգուտ է ստացել։ Այդ ամենի հիման վրա թերթը պետք է մյուս տընտեսությունների ղեկավարներից պահանջեր՝ մեքենայական կիթն արմատավորել նաև իրենց կոլտնտեսային ֆերմաներում։ Այս դեպքում հոդվածը կշահեր, կթի առաջավոր ձևի պրոպագանդան ավելի արդյունավետ կլիներ։

Այժմ, երբ պարտիան խնդիր է դրել անցնելու գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման և այդ ճանապարհով գյուղատնտեսական մթերքների արտադրության արագ ավելացման, ավելի կարևոր նշանակություն է ստանում գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդման ակտիվ, հարձակողական ձևը։

Ուղեցույց ունենալով ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը, «Զանգեզուր» թերթը պետք է ավելի խոր և սիստեմատիկ կերպով պրոպագանդի գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, վերացնի այդ ուղղությամբ իր աշխատանքում եղած թերությունները։ Թերթի էջերում գիտության նվաճումների ու առաջավոր փորձի պրոպագանդան պետք է լինի կոնկրետ, համոզիչ, ապացույցներով հագեցած։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---

## ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի երրորդ համարի 22-րդ էջի ներքևից երրորդ տողից կարդալ. «Հետազոտության բնագավառը և կարողացել է վերջինիս փոփոխման օրենքներն արտահայտել ճշգրիտ մաթեմատիկական ֆորմուլաների ու հավասարումների օգնությամբ», այնուհետև ինչպես տեքստում։

---





**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.։

Թողարկիչ՝ Ս. ՑԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05218 Պատվեր 794 Տիրաժ 9200 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 28/III 1964 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### Լույս են տեսել և վաճառվում են.

ԳԵՐՄԱՆ ԴՈՒՆԿԵՐ—Մարքսիզմի ներածություն: *Թարգմ. գերմաներենից: Մ., Արտասահմանյան գրակ., հրատ. 1963։*

*Հեղինակը (1874—1960), գերմանական ականավոր մարքսիստներից և «Սպարտակ միության» հիմնադիրներից մեկն է, Կ. Լիբկնեխտի, Ռ. Լյուքսեմբուրգի ու Վ. Պիկի մերձավոր զինակիցը։ Իր կյանքի մոտ 70 տարին նվիրել է ռևոլյուցիոն շարժմանը և մարքսիզմ-լենինիզմի տարածմանը։*

*Աշխատության մեջ զետեղված են հեղինակի հիմնական հոդվածները մարքսիստական-լենինյան փիլիսոփայության, սոցիալիզմի, բանվորական շարժման պատմության, կուլտուրայի, կրթության և այլ հարցերի մասին, ինչպես նաև մարքսիզմ-լենինիզմի կլասիկների առանձին աշխատություններին նվիրված ուսումնասիրություններ։ Աշխատության մեջ ամփոփված են գերմանական բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման վերջին 40 տարվա և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի նվաճումները։*

Ի. Մ. ՄԱՅՍԿԻ—Սովետական դեսպանի հուշերը: *Հատ. 1, 2, Մ. «Գիտություն», հրատ. 1964 թ.։*

*Գրքում հետաքրքրական տեղեկություններ կան կոմունիստական պարտիայի և սովետական պետության ականավոր գործիչներ Լիտվինովի, Կոլոնտայի, Չիչերինի և ուրիշների մասին։ Ներկայացված է նաև իմպերիալիստական կառավարությունների ղեկավար գործիչներ Մակդոնալդի, Չեմբեռլենի, Լլոյդ Ջորջի, Չերչիլի և այլոց քաղաքական գործունեությունը։*

Լ. Մ. ՆԻԿՈՒԼԻՆ—Տուխաչևսկի: *Կենսագրական ակնարկ։ Մ., Զինհրատ, 1963։*

*Արխիվային նյութերի, հարազատների և ընկերների հուշերի հիման վրա հեղինակը վերականգնում է Սովետական Միության մարշալ, ականավոր ռազմագետ Մ. Ն. Տուխաչևսկու կյանքն ու զինվորական գործունեության ուշագրավ դրվագները։ Տուխաչևսկուն նա պատկերում է ո՛չ միայն որպես ռազմագետ, այլև լենինյան գվարդիայի պետական գործիչ, որը մինչև իր ողբերգական մահը անդավաճան ծառայել է սովետական հայրենիքին։*

Ի. Ս. ՍՈՒԴԵՐԵՎՍԿԻ—Աշխատանքի բաժանման պրոբլեմներ *(Կոմունիստական արտադրության մեջ)* : *Մ. Սոցտնտհրատ., 1963։*

*Հեղինակն ուսումնասիրել է սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանի աշխատանքի հասարակական բաժանման բովանդակության ու փոխադարձ ներգործության, աշխատանքի հասարակական բաժանման ձևերի զարգացման հարցերը և ցույց է տվել սոցիալիստական աշխատանքը կոմունիստականի վերաճելու ուղիները։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԶԳԱՅԱՐԱՆԸ

*Մարդու հինգ հայտնի զգայարաններին վերջերս ավելացել է նաև մեկը։ Դա այսպես կոչված մաշկա-օպտիկական տեսողությունն է։*

*Պարզվում է, որ որոշ կույրեր զարմանալի ընդունակություն ունեն ճշգրիտ որոշելու մինչև խոչընդոտները և շրջապատի առարկաները եղած հեռավորությունները։ Կույրերից մեկը իսկապես ֆանտաստիկ զգայունակությամբ է եղել օժտված։ 60 սմ հեռավորությունից նա կարողանում էր որսալ 30 սմ տրամագիծ ունեցող սկավառակի տեղափոխումը 10 միլիմետրի վրա։ Փորձերին մասնակցած կույրերի մեծ մասը տարածության վրա հաջողությամբ տարբերում էին մետաղյա, փայտյա և ապակյա առարկաները։*

*Պրոֆեսոր Կելլոգի մշակած մարզաձևը հնարավորություն է տալիս այդ զգայարանը զարգացնել նաև նորմալ տեսողություն ունեցող մարդկանց մոտ (ԱՄՆ)։*

## ՏՈՐՖԸ ՃԱՌԱԳԱՅԹԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ ԴԵՄ

*Հետազոտությունները ցույց են տվել, որ տորֆի մեջ գտնվող որոշ օրգանական միացություններ պաշտպանում են ռենտգենյան ճառագայթներից։ Տորֆի քայքայման հետևանքով ստացված նյութերը ճառագայթահարվելուց կես ժամ առաջ տրվել են մկներին և ճագարներին։ Դրանից հետո այդ կենդանիները առանց հետևանքների դիմացել են ռադիոակտիվ ճառագայթահարման մահացու դոզային։ Դեռևս վաղ է խոսել այդ հետազոտությունների վերջնական արդյունքների մասին, բայց դրանք կարող են ապագայում հանգեցնել ճառագայթային հիվանդության դեմ նոր դեղանյութի հայտնագործման (Լեհաստան)։*

## ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱ ԱԼԻՔՆԵՐԻՑ

*Լա-Մանշ նեղուցը թափվող Ռանս գետի գետաբերանում կառուցվում է հզոր ֆրանսիական մակընթացային էլեկտրակայան։ Այդ տեղում նկատվում են աշխարհում ամենամեծ տեղատվությունները ու մակընթացությունները. ջրի վերին և ստորին մակարդակների միջև եղած տարբերությունները հասնում են 13,5 մետրի։ Ջրապատնեշի առաջացրած ջրավազանը մակընթացության ժամանակ պետք է տարածվի 20 կմ-ի վրա, իր մեջ առնելով 180 միլիոն խորանարդ մետր ջուր։ Ջրի հոսքը մեկ վայրկյանում կազմելու է 18000 խորանարդ մետր։*

*Մակընթացային էլեկտրակայանի նախագծային հզորությունը 240 000 կիլովատ է։ Տուրբինները պետք է էլեկտրաէներգիա արտադրեն ինչպես մակընթացության, այնպես էլ տեղատվության ժամանակ։ Նախատեսված է առաջին տուրբոգեներատորները շահագործման հանձնել 1965—1966 թվականներին։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՋԵՐՄԱՉԱՓ

*Լյուբլյան քաղաքի «էլեկտրոմեդիցինա» գործարանը յուրացրել է էլեկտրոնային ջերմաչափերի արտադրությունը։ Ի տարբերություն սովորական սնդիկային ջերմաչափերի, որոնք դանդաղ են արտացոլում ջերմաստիճանի փոփոխությունները, նոր ջերմաչափերը մարմնի ջերմաստիճանը որոշում են երեք վայրկյանի ընթացքում։*

*Այդ նույն ձեռնարկությունն սկսել է թողարկել «Հերիկոնտ» էլեկտրոնային սարքը, որը նախատեսված է արյան լաբորատոր անալիզի համար։ Սարքը հնարավորություն է տալիս ճշգրիտ որոշել արյան կարմիր գնդիկների քանակը և դրանց մեծությունը (Հարավսլավիա)։*